# ՏՕՆԱԿԱՐԳ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ Ս. ԵԿԵՂԵՑՒՈՅ

ՀՐԱՏԱՐԱԿԵՑ
ՍԱՀԱԿ Ա. ԽԱՆՃԵԱՆ

ԱՐՏՕՆՈՒԹԵԱՄԲ
ԱԶԳ. ԿՐՕՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

ԵՐԿՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Սրբագրեալ եւ ճոխացեալ
Յաւելմամբ կարեւորագոյն Երգոց եւ Շարականաց

معارف نظارت جلیله‌سنك فی ١٨ كانون اول سنه ٣١١
تاریخلی و ٦٢٥ نومرولی رخصتنامه‌سیله طبع اولنمشدر.

Կ. ՊՈԼԻՍ
Տպագր. ՆՇԱՆ Կ. ՊԷՐՊԷՐԵԱՆ

1898

# ՏՕՆԱԿԱՐԳ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ Ս. ԵԿԵՂԵՑՒՈՅ

ՀՐԱՏԱՐԱԿԵՑ

ՍԱՀԱԿ Ա. [illegible]



ԱՐՏՕՆՈՒԹԵԱՄԲ

ԱԶԳ. ԿՐՕՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

ԵՐԿՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Սրբագրեալ եւ ճոխացեալ
Յաւելմամբ կարեւորագոյն Երգոց եւ Շարականաց

معارف نظارت جليله‌سنك فى ۱۸ كانون اول سنه ۳۱۱
تاريخلى و ٦۲٥ نومرولى رخصتنامه‌سيله طبع اولنمشدر.

Կ. ՊՈԼԻՍ
Տպագր. ՆՇԱՆ Կ. ՊԷՐՊԷՐԵԱՆ

1898

Ի Հայրապետութեան

Տ. Տ. ՄԿՐՏՉԻ Ա. ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

---

Ի Պատրիարքութեան Ս. Երուսաղիմայ

Տ. ՅԱՐՈՒԹԻՒՆ Ս. ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

---

ՀՐԱՄԱՆԱՒ

*Պատրիարքին Կոստանդնուպոլսոյ*

Տ. ՄԱՂԱՔԻԱՅ Ս. ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

## ԱՐՏՕՆԱԳԻՐ ԿՐՕՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

*Համաձայն որոշման Կրօնական Ժողովոյ Ազգային Կեդրոնական Վարչութեան արտօնեմք զերկրորդ տպագրութիւն* « Տօնակարգ » *անուն գրոցս:*

Պատրիարք Կ. Պոլսոյ
*ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ*

25 Յուլիս 1898
Ի Պատրիարքարանի Հայոց
Կ. Պոլիս

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

ՏՕՆԱԿԱՐԳ անուն սոյն եկեղեցական մատենիկն՝ որ հինգ Տաղաւարաց եւ այլ գլխաւոր տօնից երգերն ու շարականներ, տաղերն ու նուագներ ըստ արարողական կարգաց եւ կանոնաց Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ կը պարունակէ իր մէջ ամբողջապէս, այս երկրորդ անգամ կ'ընծայեմ ի լոյս առաւել ճոխ եւ առաւել կատարելագործեալ եղանակաւ, յօգուտ բարեկարգ ժամասացութեան եւ ի պէտս հոգենուագ երգեցողաց Հայ. Եկեղեցւոյ:

Այս առթիւ մեր մասնաւոր շնորհակալիքն հարկ կը համարիմ յայտնել այն Արժ. Եկեղեցական Հարց եւ Պատ. երաժիշտ Դասատուաց եւ Դպրաց, որ մեր առաջին տպագրութեան առթիւ առաջարկած հրաւէրը գործնականապէս կատարելու չը զլացան հաղորդելով մեզ իրենց խորհուրդներն ու դիտողութիւններ սոյն գործոյն բարեզարդութեան նկատմամբ, որով այժմ կը պարծիմ ըսել թէ սոյն մատենիկն՝ ամեն Հայ. երաժիշտ՝ իբր առաջնորդ ունելով ի ձեռին, պիտի կրնայ անշփոթ եւ անխոտոր երգել եւ պաշտօնավարել յԵկեղեցւոջ տօնական մեծահանդէս աւուրց մէջ առաւելապէս, առանց բնաւ գրեթէ կարօտելու Տօնացոյցի եւ Տաղարանի, Ճառականի եւ Ժամագրքի. որոց հետզհետէ պատրաստութեան եւ գործածութեան համար էր զի բազմիցս կը պատա-

նէին ժամասացութեան մէջ ընդհատմունքն երգոց եւ ա-
կամայ անպատեհութիւնք ի մեծ դժգոհութիւն ունկնդիր
ժողովրդեան :

Ամեն տօնական աւուրց ժամերգութեան կարգն՝
սկսեալ « Տէր զի բազում » էն մինչեւ Ս. Պատարագի
սկիզբն՝ ընթեռնըլի Երգերն ու Սաղմոսներ, քարոզ-
ներն ու Մաղթանք եւ Աղօթքներ գրեթէ միօրինակ լի-
նելով, ատոնց դասաւորութիւնը կարգ ըստ կարգէ նը-
շանակեցինք սոյն գրքի առաջին տօնին՝ այն է Ս. Ծնըն-
դեան ճրագալուցի առաւօտեան ժամերգութեան կանո-
նին մէջ. ուստի եւ ա՛լ հարկ չդատեցինք ամեն տօներու
կարգին մէջ կրկնել զանոնք, վստահ ըլլալով որ ժա-
մասացներու համար բաւական է նոյն օրինակն իբրեւ
նմոյշ կամ ուղեցոյց համարուելու :

Ինչպէս որ մեր առաջին տպագրութեան առթիւ
ալ ըսած էինք, Շարականներն՝ ուրիշ երգերէ եւ
տաղերէ տարբեր տառերով եւ մանաւանդ խազերով հրա-
տարակելնիս աննպատակ չէ, վասն զի թէեւ այս կեր-
պիւ գրքին դիրքն ստուարացնելու ակամայ հարկին տակ
գտնուեցանք, բայց փորձառութեամբ դիտած ըլլալով որ
ձայնագրութեան անտեղեակ դպիրք անգամ այդ հայկա-
կան *անծանօթ* նշաններէ պիտի կրնան օգտուիլ օրուան
շարականներն՝ եթէ ոչ անսխալ՝ գոնէ ըստ պատշաճի
երկարելու, սղելու կամ միակերպ անցնելու տեղերն ո-
րոշելով երգելու մասին, այդ աշխատութիւնն ալ յանձն

առինք կատարել յօժարակամ՝ հետեւելով Ձայնքաղ կամ Առձեռն Շարականաց վաղեմի դրութեան :

Չեմք մոռանար զայս եւս յայտ առնել՝ որ թէեւ մեր միակ բաղձանքն էր սոյն կարեւոր գործ առնել դիւրա-տար միանգամայն եւ ըստ կարի դիւրագին, բայց ի՞նչ-պէս կրնայինք համառօտել զայն, եւ զո՞րն իր բովան-դակութենէն հնար էր մեզ զեղչել, ի նկատի առնլով հանդերձ որ զայն երկու մասերու բաժնելն ալ ունէր իւր գործածութեան դժուարութիւնն. ուստի յուսով եմք որ այս մասին դժգոհութեան պատճառ եւ տեղի տուած չպիտի ըլլանք բնաւ :

Իսկ եթէ սոյն բազմաշխատ գործին պատրաստութեան մէջ գտնուին որ եւ է թերութիւնք՝ որ մեր ուշադրութե-նէն ակամայ վրիպած լինին հակառակ մեր հոգածու-թեան, անշուշտ Պատ. Պաշտօնակիցք մեր ներողամիտ պիտի լինին մեզ, որ բարոյական վարձուց ակնկալու-թեամբ առաւելապէս՝ փափաքած եմք ընդհանուր զո-հունակութեան արժանանալ եւ դուզնաքեայ ծառայու-թիւն մի մատուցած լինել ի փառս Կաթողիկէ եւ Առա-քելական Ս. Եկեղեցւոյ մերոյ,

Որոյ եմ տրուպ պաշտօնեայն

**ՍԱՀԱԿ Ա. ԽԱՆՃԵԱՆ**

# ԿԱՆՈՆՔ

*Դասակարգութեան եւ սկսուածոց Եկեղեցական Երգոց եւ Շարականաց ըստ օրէնսդրութեան Սրբոց Վարդապետաց Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ ։*

*Երբ Թուական տարւոյն լինի զար՝ այսինքն զոյգ, որպէս է ներկայ Թուականն* 1898, *բուն ձայներն* աձ, բձ, գձ, դձ, *աջակողմեան դասուն կը վերաբերին Բուն Բարեկենդանէն սկսելով ։*

*Իսկ եթէ Թուականը կոճատ՝ այսինքն, անզոյգ լինի, բուն ձայները ձախակողմեան դասուն կը վերաբերին ։*

*Բուն ձայներն ո՛ր դասուն որ վերաբերին, պէտք է նոյն դասէն սկսուին Տէր զի բազում, Յիշեսցուք, Առաւօտ լուսոյ, Կանոնաղլուխք, Աստուած անեղի երգերն, Ալէլուք, Մեծացուսցէ, Ողորմեա, Աւետարանի սաղմոսք, Սուրբ Աստուած, Մանկունք, Արեւագալի կարգէն Յարեւելից, Ճգնաւորք եւ Ճանապարհ երգերն ։*

*Իսկ Օրհնութիւն, Հարց, Իւղաբերից Աւետարանի առաջին «Արի՛ն», Տէր յերկնից, Փառք 'ի բարձունս, Արեւագալի կարգէն «Լոյս արարիչ լուսոյ» երգն կ'սկսուին կողման դասէն ։*

---

# ԿԱՆՈՆ

## ՍՈՒՐԲ ԾՆՆԴԵԱՆ ՃՐԱԳԱԼՈՒՑԻ ԱՌԱՒՕՏԵԱՆ

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն:

Տէր եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո։

Տէր եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո։

Օրհնեալ համագոյ և միասնական անբաժանելի սուրբ երրորդութիւնն՝ Հայր եւ Որդի եւ Հոգի սուրբ. այժմ և միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Տէր զի բազումեղեն նեղիչք իմ, եւ բազումք յարեան 'ի վերայ իմ։

Բազումք ասէին զանձնէ իմմէ, թէ չի՛ք փրրկութիւն սորա առ Աստուած իւր։

Այլ դու Տէր՝ օգնական իմ ես, փառք իմ և բարձրացուցիչ գլխոյ իմոյ։

Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի, և լուաւ ինձ 'ի լեռնէ սրբոյ իւրմէ։

Ես ննջեցի եւ 'ի քուն եղէ, զարթեայ եւ Տէր ընդունելի իմ է։

Ո՛չ երկեայց ես 'ի բիւրաւոր զօրաց նոցա· ոյք շուրջանակի պատեալ պաշարեալ պահէին զիս։

Արի՛ Տէր՝ եւ փրկեա՛ զիս Աստուած իմ· զի դու հարեր զամենեսեան, ոյք էին ընդ իս թըշնամութեամբ 'ի տարապարտուց. եւ զատամունս մեղաւորաց փշրեցես։

Տեառնդ է փրկութիւն· 'ի վերայ ժողովրդեան քոյ օրհնութիւն քոյ։

Տէր Աստուած փրկութեան իմոյ, 'ի տուէ կարդացի եւ գիշերի առաջի քոյ։

Մտցեն աղօթք իմ առաջի քոյ Տէր, խոնարհեցի ունկն քո 'ի խնդրուածս իմ։

Զի լցաւ չարչարանօք անձն իմ, եւ կեանք իմ 'ի դժոխս մերձեցան, եւ համարեցայ ես ընդ այնոսիկ որք իջանեն 'ի գուբ։

Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի, եւ 'ի մեռեալս ազատ։

Որպէս զվիրաւորս, որք ննջեն 'ի գերեզմանս։

Զորս դու ո՛չ յիշեցեր, նոքա 'ի ձեռանէ քումմէ մերժեցան։

Եդին զիս 'ի գբի ներքնումն, 'ի խաւարի եւ 'ի ստուերս մահու։

Ցիս հաստատեցաւ սրտմտութիւն քո, զամենայն զբօսանս քո ածեր 'ի վերայ իմ։

Հեռի արարեր յինէն զծանօթս իմ, եւ եդին զիս նշաւակ իւրեանց.

Մատնեցայ եւ ո՛չ ելանէի, աչք իմ տկարացան յաղքատութենէ։

Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ, եւ համբարձի առ քեզ զձեռս իմ։

Միթէ մեռելոց առնիցե՞ս զսքանչելիս քո, կամ բժիշկք յարուցեալ խոստովան առնիցին առ քեզ։

Միթէ պատմեսցէ՞ ոք երբէք 'ի գերեզմանի զողորմութիւնս քո, կամ զճշմարտութիւնս քո 'ի կորստեան։

Միթէ ճանաչիցի՞ն 'ի խաւարի սքանչելիք քո, կամ արդարութիւն քո յերկիր մոռացեալ։

Ես առ քեզ Տէր աղաղակեցի, առաւօտու աղօթք իմ ժամանեսցեն առ քեզ։

Ընդէ՞ր Տէր մերժես զանձն իմ, կամ դարձուցանես զերեսս քո յինէն։

Տնանկ եւ վաստակաւոր եմ ես 'ի մանկութենէ իմմէ. 'ի բարձրութենէ խոնարհեցայ եւ ափշեցայ։

Ցիս հաստատեցաւ բարկութիւն քո, արհաւիրք քո խռովեցուցին զիս։

Շրջեցան զինեւ որպէս ջուր, զօր ամենայն պաշարեցին զիս իմիասին։

Հեռի արարեր յինէն զբարեկամս իմ եւ զծանօթս իմ, վասն թշուառութեան իմոյ։

Օրհնեա՛ անձն իմ զՏէր, եւ ամենայն ոսկերք իմ զանուն սուրբ նորա։

Օրհնեա՛ անձն իմ զՏէր, եւ մի՛ մոռանար զամենայն տուրս նորա։

Ո քաւէ զմեղս քո, բժշկէ զամենայն հիւանդութիւնս քո։

Որ փրկէ յապականութենէ զկեանս քո, պսակէ զքեզ ողորմութեամբ եւ գթութեամբ։

Որ լնու 'ի բարութենէ զցանկութիւն քո, նորոգեսցի որպէս արծուոյ մանկութիւն քո։

Առնէ ողորմութիւնս Տէր, եւ իրաւունս ամենայն զրկելոց։

Եցոյց Տէր զճանապարհս իւր Մովսէսի, եւ որդւոցն Իսրայէլի զկամս իւր։

Գթած ողորմած է Տէր, երկայնամիտ եւ բազումողորմ։

Ո՛չ իսպառ բարկանայ մեզ Տէր, եւ ո՛չ յաւիտեան պահէ ոխս։

Ո՛չ ըստ մեղաց մերոց արար մեզ տէր, եւ ո՛չ ըստ անօրէնութեան մերում հատոյց մեզ։

Այլ որպէս բարձր են երկինք յերկրէ, այնպէս զօրացոյց Տէր զողորմութիւն իւր 'ի վերայ երկիւղածաց իւրոց։

Որչափ հեռի են արեւելք յարեւմտից, այնչափ հեռի արար 'ի մէնջ զանօրէնութիւնս մեր։

Որպէս գթայ հայր 'ի վերայ որդւոց իւրոց, այնպէս գթացի Տէր յերկիւղածս իւր։

Զի նա գիտաց զստեղծուածս մեր, եւ յիշեաց թէ հող եմք։

Մարդոյ որպէս խոտոյ են աւուրք իւր. որպէս ծաղիկ վայրի՝ այնպէս ծաղկի։

Շնչէ 'ի նմա հողմ, եւ ո՛չ է, եւ ո՛չ եւս երեւի տեղի նորա։

Բայց ողորմութիւն Տեառն մնայ յաւիտեանս

յաւիտենից 'ի վերայ երկիւղածաց իւրոց . եւ արդարութիւն նորա յորդւոց մինչեւ յորդիս ։

Որք պահեն զուխտս նորա, յիշեն զպատուիրանս նորա՝ եւ առնեն զնա ։

Տէր յերկինս պատրաստեաց զաթոռ իւր . արքայութիւն նորա ամենեցուն տիրէ ։

Օրհնեցէ՛ք զՏէր ամենայն հրեշտակք նորա՝ հզօրք զօրութեամբ . որք առնէք զբան նորա 'ի լսել ձայնի պատգամաց նորա ։

Օրհնեցէ՛ք զՏէր ամենայն զօրութիւնք նորա, պաշտօնեայք եւ արարողք կամաց նորա ։

Օրհնեցէ՛ք զտէր ամենայն գործք նորա . զի ընդ ամենայն տեղիս է տէրութիւն նորա . օրհնեա՛ անձն իմ զՏէր ։

Տէր լո՛ւր աղօթից իմոց . ո՛ւնկն դիր խընդրուածոց իմոց ճշմարտութեամբ քով ։

Լո՛ւր ինձ արդարութեամբ քով, եւ մի՛ մըտաներ 'ի դատաստան ընդ ծառայի քում . զի ո՛չ արդարանայ առաջի քո ամենայն կենդանի ։

Հալածեաց թշնամին զանձն իմ . խոնարհ արար յերկիր զկեանս իմ . եւ նստոյց զիս 'ի խաւարի որպէս մեռեալ յաւիտենից ։

Ձանձրացաւ յիս հոգի իմ . եւ սիրտ իմ խռովեցաւ յիս ։

Յիշեցի զաւուրսն զառաջինս . խորհեցայ յամենայն գործս քո . յարարածս ձեռաց քոց խորհեցայ եւ համբարձի առ քեզ զձեռս իմ ։

Անձն իմ որպէս երկիր ծարաւի է առ քեզ .

վաղվաղակի լո՛ւր ինձ Տէր, զի նուաղեցաւ յինէն հոգի իմ։

Մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն, նմանիցիմ այնոցիկ, որք իջանեն 'ի գուբ։

Լսելի՛ արա ինձ առաւօտու զողորմութիւնս քո. զի ես 'ի քեզ Տէր յուսացայ։

Ցո՛յց ինձ ճանապարհ՝ յոր եւ գնացից. զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ։

Փրկեա՛ զիս 'ի թշնամեաց իմոց Տէր. զի զքեզ ապաւէն ինձ արարի։

Ուսո՛ ինձ առնել զկամս քո. զի դու ես Աստուած իմ։

Հոգի քո բարի՝ առաջնորդեսցէ ինձ 'ի յերկիր ուղիղ։

Վասն անուան քո Տէր՝ կեցուսցես զիս, արդարութեամբ քով հանցես 'ի նեղութենէ զանձն իմ։

Ողորմութեամբ քով սատակեա՛ զթշնամիս իմ. եւ կորո՛ զամենայն նեղիչս անձին իմոյ, զի ես ծառայ քո եմ։

Փառք Հօր և Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Երգ տեառն Ներսիսի Հայոց կաթուղիկոսի ասացեալ
'ի պաշտաման գիշերոյ։

Յիշեցուք 'ի գիշերի զանուն քո Տէր։

Բղխեսցեն սիրտք մեր զբան բարի. և լեզուք մեր պատմեսցեն զգործս երկնաւոր թագաւորին։

Ի մէջ գիշերի յարուցեալ խոստովանեսցուք զքեզ Տէր։

Զաղօթս մեր տացուք քեզ Տէր. 'ի գաւիթըս քո 'ի մէջ նոր Երուսաղեմի։

Ի գիշերի համբարձցուք ըզձեռս մեր սըրբութեամբ առ քեզ Տէր։

Ի ձայն գոհութեան ամենայն հոգիք օրհնեսցեն ըզՏէր։

Է. Զարթիք փառք իմ, զարթիք. և ես զարթեայց առաւօտուց. ալէլուիա։

Զարթիք ընդ զըւարթունս, մանկունք վերինըն Սիոնի. ալէ։

Զարթիք որդիք լուսոյ, 'ի յօրհնութիւն հօրըն լուսոյ. ալէ։

Զարթիք փըրկեալք արեամբ. եւ տուք ըզփառըս փըրկողին. ալէ։

Զարթիք նոր ժողովուրդք, նոր երգս առեալ նորոգողին. ալէ։

Զարթիք հարսունք հոգւով սպասեալք գալոյ սուրբ փեսային. ալէ։

Զարթիք վառեալք լուսով ըստ իմաստուն սուրբ կուսանացն. այլ:

Զարթիք պատրաստեցէք իւղ լապտերաց ըղ-ջերմ արտասուս· այլ:

Զարթիք եւ մի ննջէք, նըման յիմար կուսից նիրհէք. այլ:

Զարթիք երկիրպագցուք եւ արտասուօք զայս ասասցուք. այլ:

Է. Զարթիր ընդէ՞ր ննջես. Տէր, մի մերժեր ըզմեզ իսպառ:

Արի Տէր օգնեա մեզ. տացուք անուանըդ-քում ըզփառս:

Այժմ եւ յաւէտ. Հօր եւ Որդւոյ, եւ սուրբ Հոգւոյն. ամէն.

Է. Զարթուցեալքս 'ի զբաղըմանէ գիշերային հանգըստենէ.

Շնորհեսցէ մեզ մարդասէր Տէր մըխիթարու-թիւն եւ 'ի սփոփանս եկեղեցւոյ:

Ահիւ եւ դողութեամբ կացցուք 'ի յաղօթս:

Եկեալ խոստովանեսցուք ըզյանցանս:

Եւ գըտցուք 'ի Քրիստոսէ զքաւութիւն եւ ըզ-մեծ զողորմութիւն.

կշ. Անբաժանելի եւ ըհամագոյ երրորդու-թեանդ. համաձայնեալք ընդ ըզօրս երկընից. փառս մատուցանեմք.

Փառըք քեզ: Որ յանարուեստ յաթոռ բարձ-րացեալ հանգչիս. սուրբ Աստըւած հըզօր եւ սքանչելագործ.

Փառք քեզ։ Որ յանէից գոյացուցեր զամե-նայն արարածս. սուրբ Աստուած անճառ Հօր անեղ Որդի։

Փառք քեզ։ Որ տեսչութեամբ խնամես զա-մենայն արարածս. սուրբ Աստուած բղխումն անըսպառ աղբեր։

Տէր՝ ժողովրդապետք եկեղեցւոյ 'ի քէն հայցեն ասելով. հովիւ բարի. ողորմեա բանաւոր հօտի։ Ամէն. ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։ Ամէն. ալէլուիա. ալէլուիա. ալէ։

## ՔԱՐՈԶ

Զարթուցեալքս ամենեքեան 'ի հանգստենէ քընոյ, զոր շնորհեաց մեզ մարդասէրն Աստուած 'ի մխիթարութիւն և 'ի սփոփանս տկարութեան մե-րում։ Եւ եկեալքս միաբան հոգևոր երգով 'ի փառա-բանութիւն եւ 'ի պատիւ ամենասուրբ անուան տեառն մերոյ և Փրկչին Յիսուսի Քրիստոսի։ Ահիւ եւ դողութեամբ կացցուք յաղօթս առաջի նորա։ Եւ գոհացարո՛ւք զնմանէ 'ի գիշերային ժամուս յայսմիկ, վասն իրաւանց եւ 'արդարութեան նո-րա։ Որ ընտրեաց զմեզ ողորմութեամբն իւրով. և շնորհեաց մեզ բերել ըզնմանութիւն երկնային հրեշտակացն 'ի փառաբանիչս Տեառն Աստուծոյ ամենեցուն և մեզ լինել։ Եւ մեք այսուհետեւ

սրբելով զանձինս մեր 'ի խղճէ և 'ի չար գործոց, համբարձցուք զձեռս մեր 'ի սրբութիւն առանց բարկութեան եւ երկմտութեան։ Հաւատով խնդրեսցուք 'ի Նմանէ զքաւութիւն եւ զթողութիւն յանցանաց մերոց. խոստովան լինելով զգաղտնիս սրտից մերոց ծածկագիտին Աստուծոյ։ Որպէս զի ընդունելով զպաղատանս մեր աղօթիւք եւ բարեխօսութեամբ ամենայն սրբոց, շնորհեսցէ մեզ մարդասէրն Աստուած կեալ առաքինութեամբ՝ եւ անարատ վարուք ըստ կամաց նորա յայսմ աշխարհիս, եւ արժանաւոր լինելով յաւիտենական եւ երկնային խորանացն։ Զոր խոստացաւ սիրելեաց իւրոց՝ Ճշմարիտն Աստուած՝ Յիսուս Քրիստոս. Տէր մեր կեցո եւ ողորմեա։ Կեցո տէր.

Զմնացուած գիշերիս խաղաղութեամբ անցուցանել՝ հաւատով 'ի Տեառնէ խնդրեսցուք։ Շնորհեա տէր։

Զհրեշտակ խաղաղութեան պահապան անձանց մերոց. 'ի Տեառնէ խնդրեսցուք։

Զքաւութիւն և զթողութիւն յանցանաց մերոց. ի Տեառնէ խնդրեսցուք։

Զսրբոյ խաչին մեծ եւ կարող զօրութիւնն յօգնութիւն անձանց մերոց. 'ի Տեառնէ խընդ։

Եւ ևս միաբան վասն ճշմարիտ եւ սուրբ հաւատոյս մերոյ՝ զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք։ Քեզ Տեառնդ յանձն եղիցուք։

Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր՝ ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա։

---

Նորին Տեառն Ներսիսի Հայոց կաթուղիկոսի՝ երգ աղօթական ՚ի դէմս որդւոյ երրորդութեան, նաեւ իւրաքանչիւրոյ դիմի երրորդութեանն առանձնակի։

Առաւօտ լուսոյ. արեգակն արդար. առ իս լոյս ծագեա՛։ Բղխումն ՚ի Հօրէ. բղխեա՛ ՚ի հոգւոյս. բան քեզ ՚ի հաճոյս։

Գանձդ ողորմութեան. գանձիդ ծածկելոյ. դըստող զիս արա՛։ Դուռն ողորմութեան. դաւանողիս բա՛ց. դասեցո՛ վերնոցն։

Երրեակ միութիւն. եղելոց խնամող. եւ ինձ ողորմեա՛։ Զարթի՛ր տէր յօգնել. զարթո՛ ըզթըմբրեալս. զուարթնոց նմանիլ։

Էդ հայր անըսկիզբն. էակից որդի. է միշտ սուրբ հոգի։ Ընկա՛լ զիս գթած. ընկա՛լ ողորմած. ընկա՛լ մարդասէր։

Թագաւոր փառաց. թողութեանց տըւող. թո՛ղ ինձ ըզյանցանս։ Ժողովող բարեաց. ժողովեա՛ եւ զիս. ժողովս անդրանկաց։

Ի քէն տէր հայցեմ. ՚ի մարդասիրէդ. ինձ բըժըշկութիւն։ Լե՛ր կեանք մեռելոյս. լոյս խաւարելոյս. լուծանող ցաւոյս։

Խորհրդոց գիտող․ խաւարիս շնորհեա՛․ խոր-
հուրդ լուսաւոր։ Ծընունդ Հօր ծոցոյ․ ծածկե-
լոյս ստուերաւ․ ծագեա՛ լոյս փառաց։

Կենարար փրկիչ․ կեցո՛ ըզմեռեալս․ կանգ-
նեա՛ զգըլորեալս։ Հաստեա՛ հաւատով․ հաս-
տատեա՛ յուսով․ հիմնեցո՛ սիրով։

Ձայնիւս աղաչեմ․ ձեռօքս պաղատիմ․ ձիր
բարեաց շնորհեա՛։ Ղամբարամբ լուսոյ․ ղեկա-
վար ճարտար․ ղօղեալս ամրացո՛։

Ճառագայթ փառաց․ ճանապարհ ինձ ցո՛յց,
ճեպել ՚ի յերկինս։ Միածինդ Հօր․ մո՛յծ զիս
յառագաստ․ մաքուր հարսանեացդ։

Յորժամ գաս փառօք․ յահագին աւուրն․ յիշ-
եա՛ զիս Քրիստոս։ Նորոգող հնութեանց․ նորոգ-
եա՛ եւ զիս․ նորոգ զարդարեա՛։

Շնորհատու բարեաց․ շնորհեա՛ զքաւութիւն․
շնորհեա՛ զթողութիւն։ Ուրախացո՛ Տէր․ ող-
ւոյս փըրկութեամբ․ որ վասն եմ ՚ի սուգ։

Չար մըշակողին․ չար սերմանց նորին․ չորա-
ցո՛ զպտուղն։ Պարգեւիչ բարեաց․ պարգեւեա՛ ի-
մոց․ պարտեացս թողութիւն։

Ջուր շնորհեա՛ աչացս․ ջերմ հեղուլ զարտօ-
սըր․ ջընջել ըզյանցանս։ Ռետինըդ քաղցու․
ռամ հոգւոյս արբո՛․ ռա՛հ ցոյց ինձ լուսոյ։

Սէր անուն Յիսուս․ սիրով քով ճըմլեա՛․ սիրտ
իմ քարեղէն։ Վասըն գըթութեան․ վասն ողոր-
մութեան․ վերըստին կեցո՛։

Տենչալւոյդ տեսլեամբ․ տո՛ւր ինձ յագենալ․

Տէր Յիսուս Քրիստոս։ Բաքունդ երկնաւոր · ըստա-եա՛ զաշակերտս · րամից երկնայնոց։

Ցօղ արեան քոյ Տէր · ցօղեա՛ 'ի հոգիս · ցըն-ծացէ անձն իմ։ Իիւծեալըս մեղօք · ուիւծեալ աղաչեմ · ուսել ինձ բարիս։

Փըրկիչ բոլորից · փութա՛ զիս փըրկել · փոր-ձութեանց մեղաց։ Քաւիչ յանցանաց · քաւեա՛ զօրհնաբանս · քեզ երգել ըզփառս։

Աստուածածնին բարեխօսութեամբն, յիշեա՛ Տէր եւ ողորմեա՛։

## ԵՐԳ 'Ի ՏՕՆԻ ՍՐԲՈՑ

Նորին տեառն Ներսիսի Հայոց կաթուղիկոսի՝ ողբերգու-թիւն անձին զղջացելոյ, եւ բողոք իւրաքանչիւրոյ դիմի խոստովանաբար։

Աշխարհ ամենայն · առ իս նայեցեալ · ախտա-կից լե՛րո՛ւք։ Բանամ զշրթունս · բարբառիմ լեզ-ուաւս, բողոքեմ զանձնէս · տէր ողորմեա · տէր ողորմեա · տէր ողորմեա՛։

Գող եղէ մեղաց · գըտող կորըստեան · գուբ ինձ փորեցի։ Դաւեցի զանձն իմ · դաւաճանեցի · դարան գործեցի · տէր ողորմեա՛։

Երբեմն էի լոյս · եւ այժմ եմ խաւար · եւ ըստուեր մահու։ Ձիա՛րդ պատմեցից · զթիւ մե-ղաց իմոց · զի բազում են յոյժ · տէր ողորմեա՛։

Երկինք եւ երկիր. եկա՛յք ողբացէք. եղկելի
զանձն իմ։ Ընտրեցի զչարն. ընկալայ կամաւ. ըզ
հոյլըս մեղաց. տէր ողորմեա՛։

Թաթաւիմ տըղմով. թաւալիմ 'ի մեղս. թօ-
թափիլ չկարեմ։ ժանտ ախտիւ լըցեալ· ժահա-
հոտ եղէ· ժամանակս բազումս. տէր ողորմեա՛։

Ի բաց մեկնեցայ. ի սուրբ խորհրդոց· 'ի բար-
եաց գործոց։ Լաւ վարկաւ անձն իմ· լուսոյն
հեռանալ· լինիլ ընդ խաւար. տէր ողորմեա՛։

Խորհուրդըք չարին· խաբեն ըզ հոգիս. խո-
րասոյզ առնեն։ Ծածկեն անդընդօք. ծիծաղին
գլորմամբս· ծանակ զիս առնեն. տէր ողորմեա՛։

Կամաւ կորացայ։ կարկամեալս անձամբս.
կանգնիլ ո՛չ կարեմ։ Հուր մեղաց կիզող· հըր-
դեհեաց որ յիս. հոգեւոր բարիս. տեր ողորմեա՛։

Զաղկեցայ մեղօք. ձաղեցին տեսողք. ձանձ-
րացաւ հոգիս։ Ղեղի դառնութեան. ղօղեալ 'ի
սիրտ իմ· ղամպար իմ չիջաւ. տէր. ողորմեա՛։

Ճաշակմամբ մեղաց. ճաշեցի զմահ, ճոխս աղ-
քատացայ։ Մեռեալ եմ հոգւովս. մոլորեալ մը-
տօքս· միայն կամ մարմնովս. տէր ողորմեա՛։

Յորոգայթ մահու. յորսողին անկայ. յաղթե-
ցա՛յ յախտից։ Նետից թըշնամւոյն. նըշաւակ եղէ.
Նոր միշտ խոցոտիմ· տէր ողորմեա՛։

Շուրջ պատեալ զինեւ. շունք բազումք եղեն.
շաղախին արեամբս։ Որս եղէ չարին. ուռկա-
նաւ մեղաց· որսացաւ զա՛նձն իմ։ տէր ողորմեա՛։

Զարաչար վշտօք· չարչարի անձն իմ· չունիմ

*դադարումն ։ Պարտապան գտայ · պարտուց յան-ցանաց · պարտեալս 'ի մեղաց · տէր ողորմեա՛ ։*

*Ջանամ զղջանալ · չեռանիմ՛ դարձեալ · չեռ-նում հրով մեղաց ։ Ռաբբի կոչեցայ · ռակայ ան-ուանիմ · ռամկական վարուքս · տէր ողորմեա՛ ։*

*Սիրով ցանկութեան · սաստիկ բարկութեան · սիրտ իմ խոցեալ է ։ Վիրօք յանցանաց · վըշտա-նայ հոգիս · վարանեալ շրջիմ · տէր ողորմեա՛ ։*

*Տիրեցին ինձ չարք · տարագիր հանին · տի-րական գրկացն ։ Րաբունւոյն բարւոյ · րախճական ձայնին · րոտինս ո՛չ լուայ · տէր ողորմեա՛ ։*

*Ցանկութիւն չարեաց · ցանկալի դիմօք · ցա-ւեցոյց զաչս իմ ։ Իիւրաքանչիւրոց · ւիւսմամբ խուռն ախտից · ւիւծեալ է հոգիս · տէր ողոր-մեա՛ ։*

*Փութացի՛ր անձն իմ · փախչիլ 'ի չարեաց · փափաքիլ բարեաց ։ Քեզ միշտ մերձ ծանի՛ր · քուն մահու եկեալ · քըննող դատաւոր · տէր ո-ղորմեա՛ ։*

*Աստուածածնին բարեխօսութեամբ , յիշեա՛ տէր եւ ողորմեա՛ ։*

Զկնի աղօթք ։ Զքեն գոհանամք ։

---

Կանոնագլուխք կարգաւ ըստ ութ ձայնիցն ։

Այ. Դատեա՛ Տէր զայնոսիկ. ոյք դատեն զիս. ալէլուիա ։ Մարտի՛ր ընդ այնոսիկ՝ որք մարտըն-չին ընդ ի՛ս. ալէլուիա ։

Ա՛ռ զզէն եւ զասպար քո. եւ արի՛ յօգնել ինձ. հա՛ն զսուր քո ընդդէմ հալածչաց իմոց, արգե՛լ զնոսա. եւ ասա՛ դու զանձն իմ, թէ փրկութիւն քո ես եմ ։

Ամաչեսցեն եւ յամօթ լիցին՝ ոյք խնդրէին զանձն իմ. դարձցին յետս եւ ամաչեսցեն, ոյք խորհէին ինձ չար ։

Եղիցին նոքա որպէս փոշի առաջի հողմոյ. եւ հրեշտակ Տեառն նեղեսցէ զնոսա ։

Եղիցին ճանապարհք նոցա 'ի խաւարի եւ ի դայթակղութիւն, եւ հրեշտակ Աստուծոյ հալածեսցէ զնոսա ։

Ի նանիր թագուցին ինձ որոգայթ յապականութեան իւրեանց, եւ 'ի նանիր նախատեցին զանձն իմ ։

Բ. Տէր՝ յերկինս է ողորմութիւն քո. ճշմարտութիւն քո մինչեւ յամպս. ալէլուիա. ալէլուիա ։

Արդարութիւն քո որպէս լերինք Աստուծոյ. իրաւունք քո որպէս խորք բազումք. զմարդիկ եւ զանասուն կեցուցանես դու Տէր ։

Որպէս զի բազում արարեր զողորմութիւն քո Աստուած. այլ որդիք մարդկան 'ի հովանի թեւոց քոց յուսասցին։

Արբեսցին նոքա ի պարարտութենէ տան քո, և զուղխս փափկութեան քո տացես ըմպել նոցա։

Ի քէն է Տէր աղբիւր կենաց, և լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս։

Ծագեա՛ զողորմութիւնս քո՝ ոյք ճանաչեն զքեզ; զարդարութիւնս քո՝ ոյք ուղիղ են սրտիւք։

Մի՛ եկեսցեն 'ի վերայ մեր ոտք ամբարտաւանից, և ձեռք մեղաւորաց մի՛ դողացուսցեն զմեզ։

Անդ անկցին ամենեքեան՝ ոյք գործեն զանօրէնութիւն, մերժեսցին եւ այլ մի՛ կարասցեն հաստատիլ։

Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Ալէլուիա. ալէլուիա։

---

Ակ. Ասաց անըզգամն 'ի սըրտի իւրում թէ ոչ գոյ Աստըւած. ալէլուիա։ Ապականեցան եւ պղծեցան՚ յանօրէնութեան իւրեանց, և ո՛չ ոք է որ առնէ զքաղցրութիւն։ ալէլուիա։

Աստուած յերկնից նայեցաւ յամենայն որդիս մարդկան, տեսանել թէ իցէ ոք իմաստուն՝ որ խնդրիցէ զԱստուած։

Ամենեքեան խոտորեցան 'ի միասին, եւ անպիտանացան։

Ոչ ո՛ք է որ առնէ զբարի, և չէ՛ ոք մինչև ի մի։

Որպէս ո՛չ ծանիցեն ամենեքեան, ոյք գործեն զանօրէնութիւն։

Ոյք ուտէին զժողովուրդ իմ որպէս կերակուր հացի. և առ Աստուած ո՛չ կարդացին։

Ք. Ջի ոչ գոյր նոցա փոխանակ. եւ ո՛չ երկեան յԱստուծոյ. ալէլուիա. ալէլուիա։

Ջգեաց զձեռն իւր 'ի հատուցանել նոցա, եւ նոքա պղծեցին զօրէնս նորա։

Բաժանեցան 'ի սրտմտութենէ երեսաց նորա. և եհաս 'ի սիրտս նոցա։

Կակուղ էին բանք նոցա քան զձէթ, եւ ինքեանք որպէս սլաք։

Ընկեա՛ 'ի Տէր զհոգս քո՝ և նա կերակրէ զքեզ. և ո՛չ տայ յաւիտեան սասանութիւն արդարոյ։

Դու Աստուած իջուսցես զնոսա 'ի գուբ ապականութեան. արք արիւնահեղք եւ նենգաւորք մի՛ հասարակեսցեն զաւուրս իւրեանց. այլ ես 'ի քեզ Տէր յուսացայ։

Փառք Հօր և Որդ։ Այժմ եւ միշտ եւ յա։

Ալէլուիա. ալէլուիա։

---

Բյ. Ի քեզ Տէր յուսացայ, մի՛ ամաչեցից յաւիտեան. ալէլուիա։ Յարդարութեան քում փրկեա՛ եւ ապրեցո՛ զիս. ալէլուիա։

Խոնարհեցո՛ առ իս զունկն քո, և կեցո՛ զիս։

Լե՛ր իմ Աստուած ապաւէն, եւ տեղի ամուր կեցուցանել զիս. զի հաստատութիւն իմ եւ ապաւէն իմ դու ես։

Աստուած իմ, փրկեա՛ զիս 'ի ձեռաց մեղաւորի, 'ի ձեռաց անօրինի և անիրաւի։

Դու ես համբերութիւն իմ՝ Տէր, Տէր յոյս իմ 'ի մանկութենէ իմմէ։

Ի քեզ հաստատեցայ ես յարգանդէ, յորովայնէ մօր իմոյ դու ես ապաւէն իմ. եւ առ 'ի քէն է օգնութիւն իմ յամենայն ժամ։

Ժ. Երկիրպագցեն նմա ամենայն թագաւորք երկրի. և ամենայն ազգք ծառայեսցեն նմա. ալէլուիա. ալէլուիա։

Զի փրկեաց զաղքատ 'ի ձեռաց հզօրի. զաղքատ եւ զտնանկն, որոյ ոչ է իւր օգնական։

Անխայեսցէ նա յաղքատն եւ 'ի տնանկն, եւ զանձինս տնանկաց կեցուսցէ. 'ի վաշխից չարաց փրկեսցէ զանձինս նոցա։

Պատուական է անուն նորա առաջի նոցա, կեցցէ և տացի նմա յոսկւոյն արաբացւոց։

Յաղօթս կացցեն առ նա յամենայն ժամ. եւ զօրհանապազ օրհնեսցեն զնա։

Եղիցի հաստատութիւն ընդ ամենայն երկիր. եւ 'ի վերայ գլխոց լերանց։

Բարձրասցի քան զԼիբանան պտուղ նորա. եւ ծաղկեսցի 'ի քաղաքի Տեառն որպէս խոտ երկրի։

Եղիցի անուն Տեառն օրհնեալ յաւիտեան. զի յառաջ քան զարեւ է անուն նորա։

Ի նա օրհնեսցին ամենայն ազգք երկրի, եւ ամենայն ազինք երանիցեն նմա։

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի, որ առնէ սքանչելիս միայն. եւ օրհնեալ է անուն սուրբ փառաց նորա յաւիտեան. լցցի փառօք նորա ամենայն երկիր. եղիցի եղիցի։

Փառք Հօր եւ Որդւոյ։ Ալէլուիա. ալէլուիա։

---

Բկ. Զողորմութիւնս քո Տէր յաւիտեան օրհնեցից. ալէլուիա։ Ազգէ յազգ պատմեցից ըզճշմարտութիւնս քո բերանով իմով. ալէլուիա։

Ասացեր՝ թէ աշխարհս ողորմութեամբ շինեսցի. յերկինս պատրաստ եղիցի ճշմարտութիւն քո։

Եդի ուխտ ընտրելոց իմոց. երդուայ Դաւթի ծառայի իմոյ։

Յաւիտեան հաստատեցից զզաւակ քո. և շինեցից ազգէ յազգ զաթոռ քո։

Խոստովան եղիցին երկինք սքանչելեաց քոց Տէր, եւ ճշմարտութիւն քո յեկեղեցիս սրբոց։

Ո՞վ է յամպս որ հաւասարի քեզ, կամ ո՞վ նմանիցի Տեառն յորդիս Աստուծոյ։

Ժ· Դարձուցեր զօգնութիւն ՚ի սրոյ նորա· եւ ո՛չ ընկալար զնա ՚ի պատերազմի· ալէլուիա· ալէլուիա։

Անարգեցեր զսրբութիւն նորա, եւ զաթոռ նորա յերկիր կործանեցեր։

Նուազ արարեր զաւուրս ժամանակաց նորա· եւ հեղեր զնովաւ զամօթ։

Մինչեւ յե՞րբ դարձուցանես զերեսս քո իսպառ· բորբոքեսցի որպէս հուր բարկութիւն քո։

Իսկ արդ յիշեա՛ եւ տես՝ թէ ով է իմ հանգիստ· միթէ ՚ի զո՞ւր ինչ ստեղծեր զամենայն որդիս մարդկան։

Ո՞վ է մարդ որ կեցցէ՝ եւ ո՛չ տեսցէ զմահ, կամ փրկեսցէ զանձն իւր ՚ի ձեռաց դժոխոց։

Ո՞ւր են ողորմութիւնք քո Տէր առաջինք, զոր երդուար Դաւթի ճշմարտութեամբ քով։

Յիշեա՛ զնախատինս ծառայի քո, զոր ընկալայ ՚ի ծոց իմ յազգաց բազմաց։

Զոր նախատեցին թշնամիք քո Տէր· նախատեցին փոխանակ օծելոյ քոյ։

Օրհնեալ տէր Աստուած յաւիտեանս յաւիտենից· եղիցի եղիցի։

Փառք Հօր եւ· ալէլուիա· ալէլուիա։

---

Գ՚յ· Խոստովան եղերուք Տեառն զի քաղցր է· ալէլուիա· զի յաւիտեան է ողորմութիւն նորա· ալէլուիա։

Ո՞ խօսեսցի զզօրութիւնս Տեառն· լսելի արասցէ զամենայն օրհնութիւնս նորա։

Երանի՛ որք պահեն զիրաւունս, և առնեն զար-
դարութիւն յամենայն ժամ։

Յիշեա՛ զմեզ Տէր ընդ հաճոյս ժողովրդեան
քոյ. եւ ա՛յց արա մեզ 'ի փրկութեան քում.

Տեսցո՛ւք մեք զքաղցրութիւն ընտրելոց քոց.
ուրա՛խ եղիցուք մեք յուրախութիւն ազգի քոյ.
եւ գովիցուք մեք 'ի ժառանգութեան քում։

Մեղաք մեք ընդ հարսն մեր, անօրինեցաք եւ
յանցեաք.

Է. Մատնեաց զնոսա 'ի ձեռս հեթանոսաց. ատի-
րեցին նոցա ատելիք իւրեանց, եւ թշնամիք իւր-
եանց նեղեցին զնոսա. և խոնարհ եղեն 'ի ներ-
քոյ ձեռաց նոցա. ալէլուիա. ալէլուիա։

Բազում անգամ փրկեաց զնոսա, և նոքա դառ-
նացուցին զնա 'ի խորհուրդս իւրեանց. եւ կո-
րացան յանօրէնութեան իւրեանց։

Հայեցաւ Տէր 'ի նեղութիւնս նոցա, 'ի լսել
ձայնի աղօթից նոցա։

Յիշեաց զուխտ իւր, եւ զղջացաւ ըստ բա-
զում ողորմութեան իւրում. և ետ զնոսա 'ի գը-
թութիւնս առաջի ամենայն գերչաց նոցա։

Փրկեա՛ զմեզ Տէր Աստուած մեր. եւ ժողով-
եա՛ զմեզ 'ի հեթանոսաց։

Խոստովան եղիցուք անուան քում սրբոյ. եւ
պարծեսցուք յօրհնութիւնս քո։

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի. յաւիտ-
եանս յաւիտենից։

Եւ տեսացէ ամենայն ժողովուրդն . եղիցի ե-
ղիցի ։

Փառք Հօր եւ . ալէլուիա . ալէլուիա

---

Գլ . Արարի իրաւունս եւ արդարութիւն . ա-
լէլուիա ։ Մի՛ մատներ զիս ՚ի ձեռս նեղչաց ի-
մոց . ալէլուիա ։

Ընկա՛լ զծառայս քո ՚ի բարի . զի մի՛ ամբար-
տաւանք զզուեսցեն զիս ։

Սպասեցին աչք իմ փրկութեան քում Տէր , և
բանից արդարութեան քո ։

Արա՛ ընդ ծառայի քում , Տէր , ըստ ողորմու-
թեան քում . զարդարութիւնս քո ուսո՛ ինձ ։

Ծառայ քո եմ ես , իմաստո՛ւն արա զիս , եւ
ծանեայց զվկայութիւնս քո ։

Ժամ է պաշտել զՏէր . խափանեցին զօրէնս քո ։

✝ . Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո Տէր .
ըստ բանի քում իմաստուն արա զիս . ալէլուիա .
ալէլուիա ։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր . եւ բա-
նիւ քո փրկեա՛ զիս ։

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո ,
յորժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո ։

Խօսեսցի լեզու իմ զբանս քո . զի ամենայն
պատուիրանք քո արդարութեամբ են ։

Եղիցի ձեռն քո ՚ի կեցուցանել զիս . զի ըզ-
պատուիրանս քո ընտրեցի ։

Յանկացայ փրկութեան քում Տէր, եւ օրէնք քո խօսք իմ էին։

Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ. եւ իրաւունք քո օգնեսցեն ինձ։

Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ. խնդրեա՛ զծառայս քո, զի զպատուիրանս քո ես ո՛չ մոռացայ։

Փառք Հօր եւ. ալէլուիա. ալէլուիա։

---

Դչ. Օրհնեա անձն իմ զՏէր. օրհնեցից ըզՏէր 'ի կեանս իմ. ալէլուիա։ Սաղմոս սասացից Աստուծոյ իմոյ՝ մինչեւ եմ ես. ալէլուիա։

Մի յուսայք յիշխանս՝ յորդիս մարդկան. զի ո՛չ գոյ փրկութիւն 'ի նոսա։

Ելցէ հոգի 'ի նոցանէ՝ եւ դարձցին անդրէն 'ի հող. եւ յայնմ աւուր կորիցեն ամենայն խորհուրդք նոցա։

Երանի՛ ազգի՝ որոյ Տէր Աստուած Յակոբայ օգնական է նմա. եւ յոյս նորա 'ի Տէր Աստուած է։

Արար զերկինս եւ զերկիր, ըզծով՝ եւ զամենայն որ 'ի նոսա։

Ո՛ պահէ զճշմարտութիւն յաւիտեան. և առնէ իրաւունս զրկելոց։

Է. Գովեա Երուսաղէմ ըզՏէր. ալէլուիա.

Եւ օրհնեա՛ զԱստուած քո Սի՛ոն։

Զի զօրացոյց զնիգս դրանց քոց, և օրհնեաց զորդիս քո 'ի քեզ.

Ո՛ եդ զսահմանս քո 'ի խաղաղութիւն. պարարտութեամբ ցորենոյ լցոյց զքեզ։

Առաքէ զբան իւր յերկիր. վաղվաղ ընթանան պատգամք նորա։

Դնէ զձիւն որպէս զասր, եւ զմէգ որպէս փոշի ցանեաց։

Արկանէ զսառն որպէս պատառս. առաջի ցրտոյ նորա ո՞ կարէ կեալ։

Առաքէ զբան իւր՝ եւ հալէ զնոսա. շնչեսցեն հողմք՝ եւ գնասցեն ջուրք։

Պատմէ զբան իւր Յակոբայ, զարդարութիւն եւ զիրաւունս Իսրայէլի։

Ո՛չ այսպէս արար ամենայն ազգաց Տէր. եւ զդատաստանս իւր ո՛չ յայտնեաց նոցա։

Փառք Հօր և. ալէլուիա։

---

Դկ. Սիրեցից ըզքեզ Տէր զօրութիւն իմ. ալէլուիա։ Տէր հաստատիչ իմ, ապաւէն իմ եւ փրկիչ իմ. ալէլուիա.

Աստուած օգնական իմ, եւ ես յուսամ 'ի նա. ապաւէն իմ, եղջիւր փրկութեան իմոյ՝ ընդունելի իմ է։

Օրհնելով կարդացից առ Տէր, եւ 'ի թշնամեաց իմոց ապրեցայց։

Շուրջ եղեն զինև երկունք մահու. եւ ուղխք անօրէնութեան խռովեցուցին զիս։

Վիշտք դժոխոց պաշարեցին զիս. եւ ժամանեցին ինձ որոգայթք մահու։

Ի նեղութեան իմում ես առ Տէր կարդացի, եւ առ Աստուած իմ աղաղակեցի։

Է. Զգեցուցեր ինձ զօրութիւն 'ի պատերազմի. եւ զյարուցեալսն 'ի վերայ իմ ներքոյ իմ արարեր. ալէլուիա. ալէլուիա։

Զթշնամիս իմ հալածականս արարեր. եւ զատեալս իմ սատակեցեր։

Աղաղակեցին, եւ ոչ ո՛ք էր որ փրկէր զնոսա. կարդացին առ Տէր, եւ ո՛չ լուաւ նոցա։

Մանրեցից զնոսա որպէս փոշի առաջի հողմոյ. եւ որպէս կաւ զառեհաց կոխեցից զնոսա։

Փրկեսցէ զիս Տէր 'ի հակառակութենէ ժողովրդոց. եւ կացուսցէ զիս գլուխ հեթանոսաց։

Ժողովուրդ՝ զոր ո՛չ գիտէի, ծառայեաց ինձ. եւ 'ի լուր ականջաց լուաւ ինձ։

Որդիք օտարաց ստեցին ինձ. որդիք օտարաց մաշեցան, եւ կաղացան 'ի շաւղաց իւրեանց։

Կենդանի է Տէր՝ եւ օրհնեալ է Աստուած. եւ բարձր եղիցի Աստուած փրկութեան իմոյ։

Աստուած է որ խնդրէ զվրէժ իմ. եւ հնազանդ առնէ զժողովուրդս ընդ ինեւ։

Փրկիչ իմ 'ի թշնամեաց իմոց բարկացողաց. յայնցանէ որք յարուցեալ են 'ի վերայ իմ՝ բարձր արարեր զիս. եւ յառնէ անիրաւէ փրկեցեր զիս։

Վասն այսորիկ՝ խոստովան եղէց քեզ 'ի հեթանոսս. եւ անուան քում սաղմոս ասացից։

Մեծ արարեր զփրկութիւն թագաւորի նորա.

առնել ողորմութիւն ընդ օծելոյ նորա Դաւթի, եւ ընդ զաւակի նորա ազգէ մինչեւ յազգ։

Փառք Հօր եւ. ալէլուիա. ալէլուիա։

Հանգս. շարական ըստ ձայնի աւուրն։

*Սաղմոսք ըստ ութ ձայնիցն նախ քան զաւետարանն։*
*Ի տէրունի աւուրս եթէ ոչ է, ասա զայս սաղմոս։*

Տէր ո՞վ կացցէ 'ի խորանի քում, կամ ո՞վ բնակեսցէ 'ի լեառն սուրբ քո։

Որ գնայ անբիծ, գործէ զարդարութիւն, խօսի ըզ ճշմարտութիւն 'ի սրտի իւրում։

Որ ո՛չ նենգաւորեաց լեզուաւ իւրով, եւ չար ընկերի իւրում ո՛չ արար։

Նախատինս 'ի մերձաւորաց նա ո՛չ առնու. արհամարհեալ է առաջի նորա չարագործն։

Զերկիւղածս Տեառն փառաւոր առնէ. որ երդնու ընդ ընկերի իւրում եւ ո՛չ ստէ։

Զարծաթ իւր 'ի վարձու ո՛չ տայ, եւ կաշառս 'ի վերայ իրաւանց ո՛չ առնու. որ զայս արասցէ՝ նա մի՛ սասանեսցի յաւիտեան։

---

Ոչ. Տէր՝ մի սրտմտութեամբ քով յանդիմաներ զիս, և մի՛ բարկութեամբ քով խրատեր զիս։

Ողորմեա՛ ինձ, Տէր, զի հիւանդ եմ ես. բժշկեա՛ զանձն իմ, զի խռովեցան ոսկերք իմ։

Անձն իմ յոյժ խռովեցաւ, եւ դու Տէր մինչեւ յե՞րբ։

Դա՛րձ Տէր եւ փրկեա՛ զանձն իմ. կեցո՛ զիս, Տէր ըստ ողորմութեան քում։

Զի ոչ ո՛ք է որ ՚ի մահու յիշէ զքեզ, կամ ՚ի դը-ժոխս խոստովան առնիցի առ քեզ։

Վաստակեցայ ես ՚ի հեծութեան իմում, լուացի զամենայն գիշեր զմահիճս իմ. եւ արտասուօք իմովք զանկողինս իմ թացի։

Խռովեցաւ ՚ի սրտմտութենէ ակն իմ. եւ մաշե-ցայ ես ՚ի վերայ ամենայն թշնամեաց իմոց։

Ի բա՛ց կացէք յինէն ամենեքեան, որք գործէք զանօրէնութիւն։

Լուաւ Տէր ձայնի լալոյ իմոյ, լուաւ Տէր աղօթից իմոց. եւ Տէր զխնդրուածս իմ ընկալաւ։

Ամաչեսցեն եւ խռովեսցին յոյժ ամենայն թշնամիք իմ. դարձցին յետս և ամաչեսցեն յոյժ վաղվաղակի և խռովեսցին։

---

Ակ. Բարձր առնեմ զքեզ Տէր՝ զի ընկալար զիս. եւ ո՛չ ուրախ արարեր զթշնամին իմ յին։

Տէր Աստուած իմ՝ կարդացի առ քեզ եւ բժշկեցեր զիս. Տէ՛ր հաներ ՚ի դժոխոց զանձն իմ, եւ փրկեցեր զիս յայնցանէ՝ որք իջանեն ՚ի գուբ։

Սաղմո՛ս ասացէք Տեառն սուրբք Նորա. եւ խոս-տովան եղերուք յիշատակի սրբութեան Նորա։

Սրտմտութիւն է ի բարկութեան Նորա, եւ կեանք են ՚ի կամաց Նորա։

Ընդ երեկոյս հանգիցեն լալիք, առաւօտու եղիցի ուրախութիւն։

Ես ասացի 'ի բարեկենդանութեան իմում, թէ ո՛չ սասանեցայց յաւիտեան ։

Տէր 'ի կամս քո ետուր գեղոյ իմոյ զօրութիւն, դարձուցեր զերեսս քո յինէն՝ եւ ես եղէ խռովեալ ։

Առ քեզ Տէր կարդացի եւ առ Աստուած իմ աղաղակեցի ․ զի՞նչ օգուտ է քեզ յարենէ իմմէ, թէ իջանեմ ես յապականութիւն ։

Մի՞թէ հող խոստովան առնիցի առ քեզ, կամ պատմեսցէ զճշմարտութիւնս քո ։

Լուաւ ինձ Տէր եւ ողորմեցաւ, եւ Տէր եղեւ ինձ օգնական ։

Դարձոյց զսուգ իմ յուրախութիւն, եհերձ յինէն զքուրձ, եւ ինձ զգեցոյց զուրախութիւն ։

Որպէս սաղմոս ասասցեն քեզ փառք իմ․ եւ այլ մի՛ եւս զղջացայց, Տէր Աստուած իմ յաւիտեան խոստովան եղէց քեզ ։

— —

ԾԳ․ Աստուած յանուն քում կեցո՛ զիս, եւ 'ի զօրութեան քում իրա՛ւ արա ինձ ։

Աստուած, լո՛ւր աղօթից իմոց, ո՛ւնկնդիր բանից բերանոյ իմոյ ։

Օտարք յարեան 'ի վերայ իմ, եւ հզօրք խնդրեցին զանձն իմ, եւ ո՛չ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց ։

Ահա Աստուած օգնական իմ, եւ Տէր ընդունող հոգւոյ իմոյ ։

Ի դարձուցանել զչարն 'ի թշնամիս իմ, ճշմարտութեամբ քով սատակեա՛ զնոսա ։

Ես կամօք իմովք պատարագս մատուցից քեզ, եւ խոստովան եղէց անուան քում Տէր, զի բարի է ։

Յամենայն նեղութենէ իմմէ փրկեցեր զիս, եւ 'ի թշնամիս իմ ետես ակն իմ։

---

Ըկ. Աստուած ողորմեա՛ մեզ եւ օրհնեա՛ զմեզ, երեւեցո՛ զերեսս քո 'ի մեզ եւ ողորմեա՛ մեզ։

Ծանաչել յերկրի զճանապարհս քո, յազգինս ամենայն զփրկութիւնս քո։

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք Աստուած, խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ամենայն։

Ուրա՛խ եղիցին եւ ցնծասցեն ազինք. զի դու դատես զժողովուրդս ուղղութեամբ, եւ ազգաց երկրի դու առաջնորդես։

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք Աստուած, գոհասցին զքէն ժողովուրդք ամենայն։

Երկիր ետ զպտուղ իւր, եւ օրհնեաց զմեզ, Աստուած Աստուած մեր։

Աստուած մեր օրհնեսցէ զմեզ, եւ 'ի նմանէ երկիցեն ամենայն ծագք երկրի։

---

Գյ. Հաճեցար Տէր ընդ երկիր քո, եւ դարձուցեր զգերութիւն Յակովբայ։

Թողեր զանիրաւութիւն ժողովրդեան քոյ, եւ ծածկեցեր զամենայն մեղս նոցա։

Լռեցուցեր զամենայն սրտմտութիւնս քո, եւ դարձար ի բարկութենէ սրտմտութեան քո։

Դա՛րձ առ մեզ Աստուած Փրկիչ մեր, եւ դարձո՛ զսրտմտութիւնս քո ի մէնջ։

Մի՛ յաւիտեան բարկանար մեզ Տէր, և մի՛ ձգեր զբարկութիւն քո ազգէ մինչեւ յազգ։

Աստուած՝ դու դարձեալ կեցուսցես զմեզ, եւ ժողովուրդ քո ուրախ եղիցի ի քեզ.

*Ցոյց մեզ, Տէր, զողորմութիւնս քո, եւ զփրկութիւնս քո տո՛ւր մեզ։*

*Լուայց զի՞նչ խօսի Տէր Աստուած մեր, խօսեսցի զխաղաղութիւն ժողովրդեան իւրոյ առ սուրբս իւր՝ և առ այնոսիկ, ոյք դարձեալ են առ նա սրտիւք։*

*Սակայն մերձ է առ երկիւղածս իւր փրկութիւն նորա, բնակել փառաց նորա յերկրի մերում։*

*Ողորմութիւն եւ ճշմարտութիւն պատահեսցին. արդարութիւն և խաղաղութիւն համբուրեսցին.*

*Ճշմարտութիւն յերկրէ բուսաւ, արդարութիւն յերկնից երեւեցաւ։*

*Տէր տացէ զքաղցրութիւն և երկիր մեր տացէ զպտուղ իւր. արդարութիւն առաջի նորա գնասցէ, դիցէ ի ճանապարհի զգնացս իւր։*

---

*Գկ. Տէր լո՛ւր աղօթից իմոց՝ աղաղակ իմ առ քեզ եկեսցէ, և մի դարձուցաներ զերեսս քո յինէն։*

*Յաւուր նեղութեան իմոյ խոնարհեցո՛ առ իս զունկն քո. յորում աւուր կարդամ առ քեզ՝ վաղվաղակի լո՛ւր ինձ։*

*Սպառեցան որպէս ծուխ աւուրք իմ, և ոսկերք իմ որպէս խռիւ չորացան։*

*Հարայ ես որպէս խոտ, և ցամաքեցաւ սիրտ իմ, մոռացայ ուտել զհաց իմ ի ձայնէ հեծութեան իմոյ։*

*Կցեցաւ ոսկր իմ ի մարմին իմ, նմանեցայ ես հաւալուսան անապատի։*

*Եղէ ես որպէս բու յաւերակի, տքնեցայ և եղէ ես որպէս ճնճղուկ միայն ի տանիս։*

*Նախատեցին զիս թշնամիք իմ զօրհանապազ, և գովիչք իմ ինեւ երդնուին։*

Զմոխիր որպէս զհաց կերի, և զըմպելին իմ արտասուօք խառնեցի։

Երեսաց բարկութեան սրտմտութեան քո, զի դու բարձրացուցեր և խոնարհեցուցեր զիս։

Աւուրք իմ որպէս հովանի անցին, և ես որպէս խոտ ցամաքեցայ։

Դու Տէր յաւիտեան կաս, և յիշատակ քոյ ազգէ մինչեւ յազգ։

Դու յարուցեալ գթասցիս 'ի վերայ Սիօնի. ժամանակ գթալոյ նորա հասեալ է ժամ։

—

Դչ. Մերձեցին խնդրուածք իմ առաջի քո Տէր. ըստ բանի քում իմաստո՛ւն արա զիս։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր. եւ բանիւ քո փրկեա՛ զիս։

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո. յորժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո։

Խօսեսցի լեզու իմ զբանս քո. զի ամենայն պատուիրանք քո արդարութեամբ են։

Եղիցի ձեռն քո 'ի կեցուցանել զիս. զի զպատուիրանս քո ընտրեցի։

Ցանկացայ փրկութեան քում Տէր, եւ օրէնք քո խօսք իմ էին։

Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ. եւ իրաւունք քո օգնեսցեն ինձ։

Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ. խնդրեա՛ զծառայս քո, զի զպատուիրանս քո ես ո՛չ մոռացայ։

Ի Տէրունի աւուրս եթէ ձայնն դէ իջէ,
ասա՛ զայս Սաղմոս

Դկ. Ի խորոց կարդացի առ քեզ Տէր, Տէր, լո՛ւր ձայնի իմում։

Եղիցին ականջք քո 'ի լսել զձայն աղօթից իմոց։

Թէ զանօրէնութիւնս իմ քննես Տէր, Տէր, իսկ ո՞ կարէ կալ առաջի քո, զի 'ի քէն է քաւութիւն։

Վասն անուան քո համբերի Տէր, համբեր անձն իմ բանի քում, յուսացաւ անձն իմ 'ի Տէր։

'Ի պահէ առաւօտու մինչեւ յերեկոյ, 'ի պահէ առաւօտու յուսացաւ Իսրայէլ 'ի Տէր։

'Ի Տեառնէ է ողորմութիւն բազում, 'ի նմանէ է փրկութիւն, և նա փրկեաց զԻսրայէլ յամենայն նեղութեանց նորա։

---

Դկ. Տէ՛ր, լուր աղօթից իմոց, ունկն դիր խնդրուածաց իմոց ճշմարտութեամբ քով։

Լո՛ւր ինձ արդարութեամբ քով, և մի՛ մտաներ 'ի դատաստան ընդ ծառայի քում, զի ո՛չ արդարանայ առաջի քո ամենայն կենդանի։

Հալածեաց թշնամին զանձն իմ, խոնարհ արար յերկիր զկեանս իմ, և նստոյց զիս 'ի խաւարի որպէս մեռեալ յաւիտենից։

Ձանձրացաւ յիս հոգի իմ, և սիրտ իմ խռովեցաւ յիս։

Յիշեցի զաւուրսն զառաջինս. խորհեցայ յամենայն գործս քո, յարարածս ձեռաց քոց խորհեցայ և համբարձի առ քեզ զձեռս իմ։

*Անձն իմ որպէս երկիր ծարաւի է առ քեզ. վաղվաղակի լուր ինձ Տէ՛ր, զի նուաղեցաւ յինէն հոգի իմ։*

*Մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն. նմանիցիմ այնոցիկ, ոյք իջանեն ՚ի գուբ։*

*Լսելի արա՛ ինձ առաւօտու զողորմութիւնս քո. զի ես ՚ի քեզ Տէր յուսացայ։*

*Ցոյց ինձ ճանապարհ՝ յո՛ր եւ գնացից, զի առ քեզ Տէր, համբարձի զանձն իմ։*

*Փրկեա՛ զիս ՚ի թշնամեաց իմոց, Տէ՛ր, զի զքեզ ապաւէն ինձ արարի։*

*Ուսո՛ ինձ առնել զկամս քո, զի դու ես Աստուած իմ։*

*Հոգի քո բարի՝ առաջնորդեսցէ ինձ ՚ի յերկիր ուղիղ։*

*Վասն անուան քո Տէ՛ր՝ կեցուսցես զիս, արդարութեամբ քով հանցես ՚ի նեղութենէ զանձն իմ։*

*Ողորմութեամբ քով սատակեա՛ զթշնամիս իմ, եւ կորո՛ զամենայն նեղիչս անձին իմոյ, զի ես ծառայ քո եմ։*

Ձկնի Սաղմոսի Աւետարան եւ ապա Երգ բուն ձայնի

---

Տեառն Ներսէսի ասացեալ վասն ննջեցելոց։

Դկ. Բկ ԱՍՏՈՒԱԾ անե՛ղ անժամանակ, Հայր անսկիզբն և անքանակ, որդւոյ պատճառ ծննդեամբ անճառ, հոգւոյն բղխմամբ անքննաբար. ա-

ղաչեմք զքեզ գթած՝ երկայնամիտ
և ողորմած, ողորմեա քո ստեղծուա-
ծոյս՝ 'ի քեզ յուսով ննջեցելոյս:
Բանդ որ 'ի ծոց Հօր միածին, և կեր-
պարան սկզբնատիպին, որով երկի-
նք գոյացան, աշխարհ լրիւ հաս-
տատեցան. Հայցեմք 'ի քէն տէր եւ
փրկիչ, ամենողորմ և կեցուցիչ. ո-
ղոր: Գերագոյն շնորհաց բաշխող
երկնաւորաց և երկրայնոց. կեանք և
կենաց տուող հոգի Հօր և որդւոյ ա-
րարչակից. խնդրեմք 'ի քէն ա-
ղբիւր բարեաց արբուցանողդ ծարաւ-
եաց, ողոր: Դաւանիմք ընդ սրովբէից
զկենդանարարդ համայնից. Երեք-
սրբեան մի տէրութիւն զհայր եւ
զորդի և զսուրբ զհոգիդ. յոր հան-
գուցեալքս մկրտեալ և հաւատով
խոստովանեալ. ո: Երրակի թիւ կա-
տարեալ, յերիս անձինս բաժանեալ,

՚ի յօթ։ Խաւար մեղաց հալածեցաւ լոյս գիտութեան քեւ ծագեցաւ. խայթուած օձին բժշկեցաւ հիւանդութիւն մեր ողջացաւ. կենդանարարըդ մեռելոց և լուսատուդ խաւարելոց. ՚ի յօ։ Ծագումն անուն առ ՚ի հօրէ, որ ընտրեցեր ՚ի յաշխարհէ, լուսաւորիչ տիեզերաց ըզդաս ընտրեալ աշակերտացն. աղաչանօք առաքելոց փոխ յարութեան մեր եղելոց. ՚ի յօթ։ Կեանք ՚ի կենաց լոյս ՚ի լուսոյ որ լուսեղծեր զմեզ ՚ի հողոյ, նորոգեցեր դարձեալ կրկին ծնընդեամբ սրբոյ աւազանին. զոր կեցուցեր շընորհիւ քոյին ՚ի մահուանէն այն առաջին. ՚ի յօ։ Հոգւով լցեր զմարդըն առաջին, զոր կորուսեալ խաբմամբ չարին. ըզնոյն հոգի բանիւ քոյին հեղեր յոգիս մեր վերըստին. նովին հոգւով սուրբ և բարի առաջնոր-

դէմ հոգւոյ սորին. ՚ի յօ: Զայնեցեր առ ղազարոս որով ետուր մեռելոց յոյս, կենդանութեամբ չորեքօրեայն կենդանացան որք յանդամայն. կենաց ձայնիւ վերջին փողոյ կոչեա ըզսա յայսըմ հողոյ. ՚ի յօ: Ղօղեալ սարսեաց պահակ մահու ՚ի կենարար ձայնիդ լըրոյ. որպագապէս զոյգ ընդ բանին ետ ըզմեռեալն ըստ հրամանին. իշխանք օդոյս այս սարսեսցեն զհոգի սորա մի արգելցեն. ՚ի յօթեւ:

Աւ. Գւ Ճանապարհ մոլորելոց եւ ճառագայթ խաւարելոց. հրաւիրեցեր զորդիս լուսոյ ՚ի յերկնային հարսանիս քո. ընդ զուարճալից անդ ժողովոց արժանացո ըզսա դասուց. լի լապտերօք մոյծ յառագաստ ընդ իմաստուն սուրբ կուսանացն: Մերով բնութեամբ զոր ըզգեցար ՚ի փայտ խաչին բեւեռեցար, լուծանելով ըզ-

մեզ 'ի՛ մեղաց 'ի նախա՛հօրըն կապա-
նաց. լո՛յծ և ըզսա՛ 'ի յանցա՛նաց վա-
սըն քո՛ սուրբ չարչարանաց. լի: Յե՟ստ
կամաւո՟ր մահու խա՛չի եդար 'ի նո՛ր
գերեզմանի. երե՛քօրեայ թաղմամբ
յերկրի նոր ըստե՛ղծեր զմեզ կե՛ն-
դանի, զի՛ջեալս ընդ քե՛զ 'ի հող մա՛-
հու վերակո՛չեա ձայնիւ փողոյ. լի:
Նըստեալ կանա՟նցն իւղաբերի՛ց եւ
ողբայի՛ն արտասուալից, իբր ըզմեռ-
եալ անյո՛ւսալից ըզկե՛նդանիդ յաւի՛-
տենից. վա՛սըն նոցի՛ն սո՛ւրբ արտա՛ս-
ուաց մաքրեա ըզսա՛ 'ի յանցանաց. լի:
Ճա՟րժեալ հիմա՟նցըն դըժո՛խոց՝ 'ի
տեսանե՛լ ըզքեզ ներքնոց, հանե՛ր ըզ-
հոգիսն որք 'ի՛ բանտին, կապեա՛լ զիշ-
խանըն մահածին. ը՛նդ հանգուցեա՛լ
հոգիս սը՛րբոց՝ հանգո զհո՛գիս նընջե-
ցելոյս. լի: Ո՟ւրախութեա՟մբ զօրք երկ-
նա՛յին յերկնից յե՛րկիր իջանէին.

յորժամ յարեա՛ր ՚ի մեռելոց լոյս
ծա՛գեցար արարածոց. սո՛ւրբ յարու-
թեա՛մբ քո կենա՛րար յարո ըզսա՛ ՚ի
կեանս անմահ. լի: Զը՞հանդուրժեա՟լ
պահապա՛նացն ՚ի յերկիւղէ՛ երկնա-
ւորացն, որք ա՛ւետիս տայի՛ն կանանց
թէ մա՛հ լուծաւ մահկանացուաց. սա՛
որ մահո՛ւ քո տընկա՛կից՝ լիցի կենա՛ցդ
հաղորդակից. լի: Պա՞րակցեա՟լ ան-
մարմնա՛կանքն առ կենսատո՛ւ սուրբ
գերեզմանն, տան զաւետիս ազգի
մարդկան վասը՛ն կենացն յա՛ւէժա-
կան. դա՛սաւորեա՛ պարուց նո՛ցին ըզ-
նընջեցեա՛լս յօրըն վերջին. լի: Ջա՞-
հաւորեա՟լ նըշան խա՛չին յարեւելի՛ց
փայլեալ ծագին, հաւա՛տացեալքն ՚ի
քե՛զ բերկրին եւ ուրա՛ցողքըն կո-
ծեսցին. զերկըրպագո՛ւս սըրբոյ խա՛-
չին պայծառացո լո՛ւսով նորին, լի:

Այ. Գյ Ռա՞հ գործեա՟լ երկնաւո՛րաց՝

դան առա՛ջի քո Նախընթաց, զընտ-
րեալըս քո ժողո՛վելով, քեզ ընդ ա-
ռա՛ջ բերեն ամպով. ընդ աղաւնեա՜ց
օդապա՛րից խառնեա ըզսա՛ սուրբ ե-
րամից. դա՜սաւորեա ըզսա՛ վերնոցն
երգե՛լ ըզփառս ընդ զը՛ւարթնո՜ցն:
Սա՛րսափի՜ն տարե՛րք երկրի՝ յորժամ
փառօք գա՛ս հայրենի, արեգական
լոյս խա՛ւարի լուսի՛նն աստեղքըն
նըւաղին. ըզսա յաւո՜ւրն աներե՛կի
լուսաւորեա՛ լուսով քոյին, դաս: Վե՛ր-
նակա՜ն զօրացը՛ն պետ փողէ բար-
բառ աւե՛տաբեր, արի՛ք մեռեալք
որք յա՛դամայ քանզի՛ ահա եկըն փե-
սայ, ը՛նդ հարսնացեա՜լ մաքուր հո-
գւո՛ց կարգեա ըզսա՛ 'ի թիւ սրբոց.
դասս: Տի՛րակա՜ն յաթոռ նը՛ստիս,
յարարա՛ծոց երկըրպագիս, ա՛րդարու-
թեամբ զաշխա՛րհ դատես, վարձս
ըստ գո՛րծոց հատուցանես. յա՛յնժամ
շնորհեա՜ ողորմո՜ւթիւն նընջեցելոյս

մեր Թողութիւն. դասս: Բա°մեալ
մարդկա՞ն ազգ ժողո՛վին որք յադա-
մա՛յ ծընեալք լինին. եւ հրեղինաց
դասք Ե՛րկնային համանգամա՛յն վայ-
րաքերին. ՚Ի՛ յայնմ ահե՛ղ հրապարա՛-
կին մինչեւ ընդ սա՛ յօրն ահագին. դաս:
Ց°ուցանի՞ն գաղտնիք մարդկա՛ն, իւ-
րաքանչիւր որ գործեցան. բարեա՛ց
գործողքըն պըսակին, չարեա՛ցն ՚ի
հուրն ա՛նշէջ մատնին. յա՛յնժամ յիշ-
եա՛ զսորա՛ բարին, գործըք մեղա՛ցըն
ջըն՛ջեսցին. դասս: Խ՛ուսին պըսա՞կք
զանազանեա՛լք եւ պատմուճա՛նք լու-
սափայլեալք. սուրբ վըկայի՛ցն ՚ի գը-
լուխ եդեա՛լ և արդարո՛ցըն զարդար-
եալ. հա՛ղորդս արա՛ հայցմամբ նո՛ցին
ընդ սա լուսո՛յ փառաց նոցին, դասս:
Փա°ռաց ՚ի փա՞ռըս բարձրա՛նան, ա-
ջակողմեա՛նքըն վերանան, յորժամ
լըսեն զերա՛նական ձայն օրհնո՛ւթեան

'ի քէն կոչման. Նընջեցելոյս մեր լը-
սեցո զաստուածային բարբառըդ քո.
դասս: Քահանայք և ժողովուրդք
հայցեմք 'ի քէն տէր բարեգութ,
ընդ նընջեցեալըն հաւատով ընկալ
ըզմեզ նովին յուսով, յերուսաղէմ
քաղաք վերին յորում արդարքըն ժո-
ղովին, փառս վերերգել միշտ ընդ
նոսին երրորդութեանդ երրեակ ան-
ձին:

Դյ Աւարիչ և մարդասէր ան-
ոխակալ և բարեգութ, որ գովիսդ
'ի սրովբէից տէր դատաւոր ար-
դարութեան, ընդ սրբոց առա-
քելոց տէր պըսակեա զմեր նըն-
ջեցեալսն. ողորմած տէր ողոր-
մեա հոգւոցըն մեր նընջեցե-
լոց: Յորժամ գրեալքըն կատա-
րին, որ զայնմ աւուր մեզ պատ-
մեցին. մարգարէից բանքըն յար-

գին, առաքելոցըն մի ճարին. ու։
Ի վերինն Երուսաղէմ 'ի բնակա-
րանըս հրեշտակաց, ուր Ենովք
և Եղիաս կան ծերացեալ աղաւ-
նակերպ. 'ի դրախտին Եդեմա-
կան պայծառացեալ արժանա-
պէս. Ողորմ։ Թագաւոր փառաց
Քրիստոս, որ ժամանեալ գաս 'ի
յերկնից 'ի վերայ թեւոց հող-
մոց քո հայրենի կերպարանօք.
և առնես հրափորձութեամբ
ըզքննութիւն որդւոց մարդկան։
Ողորմ։ Ի գնել բեմին բազմի
փեսային, և առագաստըն զարդա-
րի. գաբրիէլեան փողըն գոչէ.
սուրբք ամենայն անդ հաւաքին.
արդարոց դասքըն բերկրին,
իսկ մեղսասէրքըն թախանձին. Ո։
Յորժամ հընչիւն փողոյն լինի և
ղեւտական գիրըն յայտնի. ճառա-

գայթ սըրբոյ խաչին յարեւե-
լից փայլեալ ծագի. հրեշտակաց
գունդք ծաւալին, հրեշտակա-
պետք պարունակին. օղոր: Ահեղ
խորհուրդ քահանային, բազ-
կատարած կայ ի բեմին առաջի
սուրբ սեղանոյն. հուր շիջանի,
խաւար մերժի. տըրտմեալ հոգիքն
ուրախանան, զի թողութիւն մե-
ղաց լինի. օղոր: Մովսէս աստ-
ուածախօս և ահարոն ըղեւ-
տացին, մարգարէքն իսրայէլին,
և քահանայք հին օրինին, յա-
ռաջագոյն մեզ ծանուցին ըղ-
գալուստ սուրբ միածնին. ի փըր-
կութիւն մեզ յայտնեցին, յա-
նապատին կերակրեցին. օղորմ:
Տըրտմահաղորդ չարչարանօք ի
յանձն առեր ըզմահ խաչին. եւ
փայտին բարձող եղեր վասն ա-

դամ, նախաստեղծին. Ողորմ։
Զարհուրեցան զօրք երկնայինն
յորժամ տեսին զտէրդ ի խաչին.
արեգակն լոյս քո զարկեաւ,
և լոյս լուսնին նուաղեցաւ. յա-
հեղ փառացն աստուածորդւոյդ
խաւար եղև ընդ տիեզերս. Ող։
Ուրախացան ազգք մարդկան
յորժամ լուան զքո յարութիւնդ.
նորափետուր զարդարեցան ի
յարութեան սուրբ մարմնիդ. Ող։
Աղաչանօք սրբոյ խաչին և ան-
բարբառ բարեխօսին. և սըր-
բոյ աստուածածնին, և յով-
հաննու կարապետին. և սրբոյն
ստեփաննոսին և առաջին մար-
տիրոսին. և սրբոյ լուսաւոր-
չին հայաստանեայց հայրապե-
տին. և սրբոց առաքելոց և
համօրէն մարտիրոսաց. Ողորմ։
Ես մնացի ի վերանալ մի-

նէ՞ն աւուրց իմոց, յովլ երթայ-
ցեմ և ես անյսօր. յառաջին օթե-
վանին զոր ոչ գիտէի. օգնեա
և ինձ Քրիստոս անյսօր յառաջին
ճանապարհին. եւ 'ի միւսանգամ
գալըստեանըն քո օգնեա ինձ։
Եկն եհաս օր վախճանի իմոյ.
լալո ւմն ողբո ւմն և աշխարումն.
սիրտ իմ խռովեցաւ յիս. և ոս-
կերք իմ ցամաքեցան. օգ։ Ի մա-
հիճս իմ զարթուցին զիս պա-
հանջողք հոգւոյ իմոյ. տանէ-
ին զիս ճանապարհ հեռաւոր,
զոր ոչ գիտէի, օգ ։ Նայեցայ
և ոչ ոք էր որ օգնէր ինձ. ապաւի-
նեցայ յաստուած փրկութեան
իմոյ. ցընծացէ հոգի իմ յար-
քայութեան քում. օգ։ Գըրեցայ
ես 'ի գիր կենդանութեան. և մեկ-
նեցայ երթալ առ արարիչն երկ-

նի և Երկրի. օգ. Ցանըստուեր և
յանեղ լուսոյն հեռացայ խաւ-
մամբ խաւարային. Ճաշակեցի ըզ-
մահաբեր պտուղն. հողանայ
պատկեր բարերար ստեղծողիդ. օգ.
Ցանջատման հոգւոյս ՚ի մարմ-
նոյս. ՚ի քակտել գեղեցիկ շին-
ուածոյս. զարհուրիմ ՚ի սպառ-
նալեաց Թագաւորին, Թէ պահան-
ջէ յինէն զտաղանդ պատուի-
րանին. օգ. Կուսածին մարդաց-
եալ աստուած իմ յիսուս. յայնմ
աւուր ահեղ ատենին. զգին ա ր-
եան քո մի դատապարտեր. օգ.
Սոսկալի է որ վախճանին և ա-
հեղ որ դատաստանին. յայնըմ
աւուր ահեղ ատենին ըզգինս
արեան քո մի անտես առներ.
զի պատկեր եմ բարերար ստեղ-
ծողիդ. օգ. Ջահաւոր դատաս-

տան դաստաւորիդ տէ՛ր. և զարհու-
րեցայ. զի անպատրաստ եգիտ
զիս 'ի հրամանաց քոց Թագաւոր
յաւիտենից. օգ. Աստուածածին
անարատ մայր տեառն և կոյս սուրբ.
բարեխօսեաց առ որդին քո մի-
ածին. զի փրկեսցէ զմեզ 'ի
սպառնալեաց գեհենոյն. և պար-
գևեսցէ մեզ զերկնից արքա-
յութիւնն. և հանգուսցէ զհո-
գիս մեր ննջեցելոցն. օգ.

**Մաղթանք. Հոգւոց հանգուցելոց**

---

ՕՐՀՆՈՒԹԻՒՆ Բյ.

Ուրախացիր սրբուհի գաբրի-
էլի աւետեօքն. որ քարոզեացն ըզ
գալուստ արքային տեառն 'ի
յերկնից. Ողջոյն ընդ քեզ մա-
րիամ, 'ի քեզ սուրբ հոգին ե-
կեսցէ. և զօրութիւն բարձրելոյն

'ի վերայ քո հովանացի։ Որ ծնա-
նելոցն է 'ի քէն իսրայէլի առաջ-
նորդ․ և ընդհանուր քարոզի
աստըւած հըզօր անմահ բանն։

Ուրախ լեր բերկրեալ ամենա-
սուրբ կոյս․ որ ծնար աշխարհի զար-
դարութեան արեգակն․ որ լուսա-
ւորեաց զազգս որդւոց մարդկան։
Ուրախ լեր բերկրեալ դուռըն կըն-
քեալ․ որ ծնար աշխարհի զթագաւո-
րըն քրիստոս․ որ նստի 'ի վերայ ա-
նարուեստ աթոռոյ։ Գեղմն իմանա-
լի զոր ետես գեդէոն, յառաջ քան
զայս հաւաստացեալ, իմանամք զան-
ճառելի ըզծնունդ․ և երկըրպագեմք
որ 'ի կուսէդ մարմնացաւ աստըւածդ։

Մաղթանք․ Փառք հրաշափառ
Քարոզ ըստ ձայնի աւուրն։

## Բէ. Դէ.

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։

Վասն 'ի վերուստ խաղաղութեան և փրկութեան անձանց մերոց զՏէր աղաչեսցուք։ Տէր ո։

Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ ձայնի աղաչանաց մերոց զՏէր աղաչեսցուք։

Վասն քաւիչ եւ ներող լինելոյ Աստուծոյ 'ի վերայ մեղաց մերոց զՏէր աղաչեսցուք։

Վասն թողլոյ մեզ զամենայն յանցանս մեր ըզ կամայ և զակամայ զՏէր աղաչեսցուք։

Վասն զի մի' ընդ խոտանան գտանիցիմք յաւուրն պատասխանատուութեան զՏէր աղաչ։

Վասն հոգւոցն հանգուցելոց՝ որք ճշմարիտ և ուղիղ հաւատով 'ի Քրիստոս ննջեցին, զՏէր աղաչեսցուք։ Յիշեա Տէր և ողորմեա։

Եւ ևս միաբան վասն ճշմարիտ և սուրբ հաւատոյս մերոյ զՏէր աղաչես։ Տէր ողորմեա։

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք։ Քեզ Տեառնդ յանձն եղիցուք։

Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։ Տէր ողոր։ Տէր ողոր։ Տէր ող։

## Աձ․ Գձ․

Վասն 'ի գիշերի և 'ի տուընջեան և յամենայն ժամու խօսիլ մեզ զբան Տեառն՝ զՏէր աղ։

Վասն չանկանելոյ մեզ 'ի փորձութիւն, որում ո՛չ կարեմք հանդուրժել, զՏէր աղաչես։

Վասն անբիծ և անդատապարտ կալ մեզ առաջի ահեղ ատենին Քրիստոսի. զՏէր աղա։

Վասն առաջնորդելոյ մեզ 'ի նաւահանգիստն կենաց անվախճանից զՏէր աղաչ։

Վասն արժանի լինելոյ մեզ վերին կոչմանն և երկնից արքայութեանն զՏէր աղաչես։

Վասն հոգւոցն։ Եւ ևս միաբան։ Զանձինս։

Ողորմեաց մեզ։

---

## Ակ․ Գկ․

Վասն ուղղելոյ զգնացս մեր 'ի ճանապարհս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Վասն ցրելոյ 'ի մէնջ զամենայն խորհուրդս չարին՝ զՏէր աղաչես։

Վասն պարգևելոյ մեզ առողջ խորհուրդս և առաքինի վարս, զՏէր աղաչես։

Վասն պահելոյ զմեզ ընդ հովանեաւ ամենազօր աջոյն իւրոյ զՏէր աղաչ։

Վասն խորտակելոյ զհակառակորդն փաղփաղակի ընդ ոտիւք մերովք զՏէր աղաչ։

Վասն հոգւոցն։ Եւ ևս միաբան։ Զանձինս։

Ողորմեաց մեզ։

Բյ. Դյ.

Վասն գտանելոյ մեզ զշնորհս և զողորմու-
թիւն 'ի բարերար Տեառնէ մերմէ. զՏէր աղաչ:
Վասն փրկելոյ զմեզ 'ի զրպարտութենէ մարդ-
կան և յորոգայթից սատանայի զՏէր աղ.
Վասն ամենայն անձանց քրիստոնէից և տանց
հաւատացելոց զՏէր աղաչեսցուք:
Վասն որք 'ի լերինս, յայրս և 'ի փապարս
բնակեալ են սուրբ հարքն մեր զՏէր աղաչ:
Վասն որք սաղմոսիւք և օրհնութեամբ կա-
տարեն զամենայն ժամանակս կենաց իւրեանց
զՏեր աղաչես:
Վասն հոգւոցն: Եւ ևս միաբան: Զանձինս:
Ողորմեաց մեզ:

Աղօթք. ապա Ալէլուք

Ալէլուիա, Ալէլուիա, Ալէլուիա:
Առաքեաց զբան իւր. և բժշկեաց զնոսա. և
փրկեաց զնոսա յապականութենէ իւրեանց: Խոս-
տովան եղիցին Տեառն՝ ողորմութեանց նորա, և
սքանչելեաց նորա որդիք մարդկան:
Ալէլուիա, Ալէլուիա, Ալէլուիա:
Իջցէ որպէս զանձրեւ 'ի վերայ գեղման, որ-
պէս ցօղ՝ զի ցօղէ յերկիր: Ծագեսցի յաւուրս
նորա արդարութիւն. բազում խաղաղութիւն
մինչեւ կատարեսցի լուսին:

Փառք եւ երկրպագութիւն Հօր եւ Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։ Այժմ և միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Ալէլուիա, Ալէլ. Ալէլ։

Մաղթանք. Լցաք առաւօտու

---

Հրց. Դջ. Ո՛ր դասուց երկնաւորաց անհիմանալի, այսօր հողեղինաց յայտնեցեր ըզծածկեալ խորհուրդ. օրհնեալ տէր աստուած հարցըն մերոց։ Ո՛ր բազմաչեայ քրովբէից անտեսանելի. կերպացեալ ըզմերս 'ի սրբոյ կուսէն տընօրինաբար. օրհ։ Ո՛ր առաւել բարձրացեալդ ես յաւիտենից, մշտընջենաւոր լըցուցիչ եւ աղբիւր կենդանարար. օրհնեալ։

է. Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք զնա յաւիտեան. Ո՛ր ըզկերպարանըս ծառայի էառ, և ըզմեղս 'ի մարմնի իւրում դատապարտեաց. անդադար գովելով բարձր արարէք։ Ո՛ր այսօր մարմնացեալ 'ի սրբոյ

կուսէն յաղագս անիծիցն, եւ ե-
բարձր ըզպատուհաս նախաստեղծին.
ժողովուրդք առաւել բարձր ար։ Որ
էին 'ի բարձունըս գերեալ ըզզօրու-
թիւն մահու, այսօր բաշխի անապա-
կանութեան պարգեւք մարդկան. քա-
հանայք հոգեւոր երգով առա-
ւել բարձր արա։

Քարոզ. Եկեալքս։ Մաղթ. Հզօր յաղ։

——

Մեծ. Ուրախացի՛ր աստուածածի՛ն
վերօրհնեալդ 'ի սրովբէից. ծագե-
լով 'ի քէն մեզ լոյս մայր եղեր վե-
րաձգողին. ազգ և ազինք ըզքեզ
մեծացուցանեմք։ Հիմն եղեր եկե-
ղեցւոյ խորան եղեր հոգւոյն սրբոյ.
'ի հրեշտակաց սպասաւորեալ գաբ-
րիէլ քեզ աւետեաց. ազգ և։ Տե-
սանեմք ըզտոսկալի զհրաշալի խոր-
հուրդ յայտնեալ. 'ի հոգւոյն սրբոյ

յղացեալ զքանն աստուած մարմնով
ծնար․ անզ։

——

Քարոզ․ Սբ․ զԱստուած։ Աղօթք․ Ընկալ։

Ուր․ Բյ․ Անկանիմք առաջի քո աստուածածին․ և աղաչեմք զանարատ ընկոյզ։ Բարեխօսեա վասն անձանց մերոց․ և աղաչեա ընդ միածին որդին։ Փըրկել ըզմեզ ի փորձութենէ, եւ յամենայն վըտանգից մերոց։

——

Քարոզ․ Երկրպագեմք։ Մաղթանք․ Ողորմած։

Տէր․ Օրհնեմք զքեզ աստուած ընդ անմարմնոցըն դասուց․ որ ի բարձունս ես բնակեալ․ խնայեա ի քո արարածս։ Գովեմք զքեզ միածին որդի և բանդ աստուած, որ ի կուսէն մարմնացար․ խնայ։ Բա-

ըն՟բանեմք սուրբ զՀոգիդ, որ Նորո-գողդ ես և կեանք. եւ միաբան ա-սասցուք. փառք 'ի բարձունս աստու-ծոյ:

---

Փա՛ռք 'ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն, 'ի մարդիկ հաճութիւն: Եւ օրհ-նութի՛ւն քեզ 'ի բարձունս, օրհնեալ ես Տէր Աստուած մեր: Օրհնեմք զքեզ եւ գովեմք զքեզ: Խոստովանիմք Տէր զքեզ եւ երկիրպագանեմք քեզ, փառաւորեմք զքեզ. գոհանամք Տէ՛ր ըզ-քէն վասն մեծի փառաց քոց: Տէր թագաւոր, սուրբդ երկնային, Աստուած և Հայր ամենակալ: Տէր և Որդի Հօր միածին Յիսուս Քրիստոս եւ սուրբ Որդի: Տէր Աստուած գառն Աստուծոյ և Որդի Հօր, որ առեր զմերս 'ի Կուսէն: Ողորմե-ցար, բարձեր զմեղս աշխարհի, և արդ ընկալ զաղաչանս մեր: Սուրբդ՝ որ Նստիս ընդ աջմէ Հօր, ողորմեաց մեզ: Զի դու միայն սուրբ դու միայն, բարձեալ ես դու միայն Տէր մեր Յիսուս Քրիստոս: Տէր եւ Հոգիդ սուրբ՝ որ 'ի փառս Աստուած ընդ Հօր. Ամէն:

Եւ յամենայն ժամ օրհնեմք զքեզ. Տէր և գո-վեմք զանուն սուրբ քո յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից: Արժանի արա Տէր զօրս զայս խաղա-ղութեամբ և առանց մեղաց պահեա զմեզ. Օրհ-

նեալ ես Տէր Աստուած հարցն մերոց, գովեալ և փառաւորեալ է անուն սուրբ քո յաւիտեանս. ամէն. Օրհնեալ Տէր ուսո՛ ինձ զարդարութիւնս քո։ (Երիցս կրկնեա) Տէր ապաւէն եղեր մեր յազգէ յազգ։ Ես ասացի՝ Տէ՛ր, ողորմեա ինձ եւ բժշկեա՛ զանձն իմ. ես մեղայ քեզ։ Ցոյց մեզ, Տէ՛ր, զողորմութիւնս քո, և զփրկութիւնս քո տուր մեզ։ Տէ՛ր, ողորմութիւն քո յաւիտեան. զգործս ձեռաց քոց մի՛ անտես առներ։ Տէ՛ր իմ, զքեզ ապաւէն ինձ արարի. ուսո՛ ինձ առնել զկամս քո, զի դու ես Աստուած իմ։ Ի քէն է Տէ՛ր, աղբիւր կենդանութեան, և լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս։ Ծագեա՛ զողորմութիւնս քո որք ճանաչեն զքեզ Տէ՛ր։

Մաղթանք. Փառք պատիւ,

———

Առաւօտու երգ

Իջցէ որպէս զանձրեւ 'ի վերայ գեղմն, որպէս ցօղ զի ցօղէ յերկիր։
Աստուած զիրաւունս քո արքայի տուր, եւ զարդարութիւնս քո որդւոյ թագաւորի։

———

Քարոզ. Փառաւորեսցուք։ Սբ. Աստուած ըստ պատշաճի աւուրն

Մղկ. Դյ Ծագո՛ւմըն հրաշալի՛ որ անյայտ էր 'ի մէնջ, և՛ բա՛նըն հայրա-

*կա՛ն ա՛նըմբըռնե՛լի, հուր փա՛յլակ-նացեա՛լ եւ 'ի մարմնի՛ բնակեցաւ ան-վըհա՛ս պահերո՛վ զարմարա՛ծս ամե-նա՛յն: Ծագո՛ւմն հրաշագո՛րծ որ 'ի կուսէ՛ն ծագեցաւ. Ճառագա՛յթե՛րո՛վ զարմարա՛ծս ա՛մենա՛յն, երկինըք ցըն-ծայի՛ն եւ երկիրս ո՛ւրախանայր եւ քրիստո՛ս ա՛ստըւա՛ծ ընդ մա՛րդկա՛ն շըրջեցա՛ւ: Ա՛ռ քեզ ապաւինի՛մք ա-մենաս՛րբո՛ւհի՛. գերագո՛յն և հրաշա-լի՛ և՞ բաշխո՛ղ ծարաւեա՛ց և հան-գիստ աշխա՛տելոց. եւ եղե՛ր վերըն-կա՛լ աստուածա՛յին բանի՛ն:*

---

*Քարոզ.* Վասն խաղաղութեան: *Աղօթք* Սուրբ ես Տէր:
Ձկնի. Սաղմոս ձայնիւ

*Իջցէ որպէս զանձրեւ 'ի վերայ գեղման, որ-պէս ցօղ զի ցօղէ յերկիր:*

*Աստուած զիրաւունս քո թարքայի տուր, եւ զարդարութիւնս քո որդւոյ թագաւորի:*

*Դատել զժողովուրդս քո արդարութեամբ, և զաղքատս քո իրաւամբք:*

Առցեն լերինք զխաղաղութիւն ժողովրդեան, և բլուրք զարդարութիւն։

Իրաւ արասցէ աղքատաց ժողովրդեան և կեցուսցէ զորդիս տնանկաց, և խոնարհեցուսցէ զամբաստանս։

Կացցէ և մնասցէ ընդ արեւու, յառաջ քան զլուսին յազգ մինչեւ յազգ։

Իջցէ որպէս զանձրեւ 'ի վերայ գեղման, որպէս ցօղ զի ցօղէ յերկիր։

Ծագեսցի յաւուրս նորա արդարութիւն. բազում խաղաղութիւն մինչեւ կատարեսցի լուսին։

Տիրեսցէ նա 'ի ծովէ մինչեւ 'ի ծով. 'ի գետոց մինչեւ 'ի ծագս աշխարհի։

Առաջի նորա նախ Հնդիկք անկցին, և թըշնամիք նորա հող կերիցեն։

Թագաւորք Թարսի և կղզեաց պատարագս մատուսցեն նմա. թագաւորք Արաբայ և Սաբայ պատարագս բերցեն նմա։

Երկիրպագցեն նմա ամենայն թագաւորք երկրի, և ամենայն ազգք ծառայեսցեն նմա։

Զի փրկեաց զաղքատն 'ի ձեռաց հզօրի, զաղքատն եւ զտնանկն՝ որոյ ո՛չ է իւր օգնական։

Անխայեսցէ նա յաղքատն եւ 'ի տնանկն, եւ զանձինս տընանկաց կեցուսցէ, 'ի վաշխից չարաց փրկեսցէ զանձինս նոցա։

Պատուական է անուն նորա առաջի նոցա. կեցցէ և տացի նմա յոսկւոյն արաբացւոց։

Յաղօթս կացցեն առ նա յամենայն ժամ. եւ զօրհանապազ օրհնեսցեն զնա։

*Եղիցի հաստատութիւն ընդ ամենայն երկիր ․ և ՚ի վերայ գլխոց լերանց ։*

*Բարձրասցի քան զԼիբանան պտուղ նորա , և ծաղկեսցի ՚ի քաղաքի Տեառն որպէս խոտ երկրի ։*

*Եղիցի անուն Տեառն օրհնեալ յաւիտեան ․ զի յառաջ քան զարեւ է անուն նորա ։*

*Ի նա օրհնեսցին ամենայն ազգք երկրի ․ և ամենայն ազինք երանիցեն նմա ։*

*Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի՝ որ առնէ սքանչելիս միայն , և օրհնեալ է անուն սուրբ փառաց նորա յաւիտեան , լցցի փառօք նորա ամենայն երկիր , եղիցի եղիցի ։*

### Աւետարան եւ ապա Երգ

*Կէր․ Նորաստեղծեալ բանն յանէից ՚ի սկզբանէ զերկինս երկնից , և զերկնային զօրս անմարմնոց իմանալեացըն զուարթնոց , և զգալի տարերց քառից հակառակաց միաբանից ․ որով յաւէտ փառաբանի երրորդութիւնն անճառելի ։*

*Երեքսրբեան մի տէրութիւն միով բնութեամբ աստուածութիւն , լոյսն որ անեղ արարչական առաց լինել լոյս եղական ․ զոր եւ ծագեաց յօրն առաջին միաշաբաթ կիւրակէին ․ որ ․*

*Րաբունօրէն բացատրեսցուք , զծածկեալ խորհուրդըն ծանիցուք ․ զի լոյսն անտես իմանալի մաքուր հոգւոց տեսանելի ․ ՚ի սոյն ծագեաց միաշաբաթ մեզ յարութեան սուրբ ճառագայթ ․ ե-*

կայք փրկեալք ընդ զուարթնոյն տուք օրհնու-
թիւն յարուցելոյն։

Սէրըդ սիրով խոնարհեցար 'ի փրկութիւն մեր մարմնացար․ նովին մարմնովըն խաչեցար 'ի գերեզման մահու եդար․ այսօր յարեար աստուածաբար, 'ի հրեշտակաց քարոզեցար․ եկայք
փրկեալք։

Երեւեցար խնկաբերիցն յողջոյն կենացն ուրախալից, եւ 'ի լերինըն Գալիլեա առաքելոց մետասանից․ արժանացո՛ զմեզ ընդ նոսին զքեզ տեսանել յօրըն վերջին․ եկայք փրկ։

Սիօնի որդիք զարթիք, հարսին լուսոյ տուք աւետիք․ եթէ փեսայն քո յարուցեալ յաղթեաց մահու իշխանութեամբ․ գայ պսակէ ըզքեզ փառօք, եւ ընդ առաջ պճնեալ զարդուք, երգեա՛ երգ նոր յարուցելոյն, ննջեցելոց կենաց պըտղոյն։

---

Բշ․ Արարչական բանին հրաման 'ի յերկրորդումն աւուր սկըզբան, ըզջուրսն 'ի ջուրցըն բաժանեաց, հաստատութեամբ պարունակեաց, որով զաշխարհս հողեղինաց անջրպետեաց 'ի հըրեղինաց․ ընդ նոսին որդիք լուսոյ տուք օրհ-
նութիւն երրեակ լուսոյն։

Բազմաչեայ հոյլք քրովբէից երեքսըրբեանըդ-սրովբէից․ աթոռք անեղ աստուածութեանըն համագոյ երրորդութեանն․ բարեխօս լերուք առ

Տէր վասն մանկանց եկեղեցւոյ· ընդ նոսին որդիք
լու։

Գերագոյն իշխանութիւնք եւ անփոփոխ միշտ տէրութիւնք· անյաղթելի սուրբ զօրութիւնք 'ի յԱրարչին փառատրութիւն, աղաչեցէք զՏէրն ողորմած անտես չառնել զգործս ձեռաց· ընդ նոսին որ։

Դասք անմարմնոցըն պետութեանց հրեշտակապետըք բարձրութեանց, հոգիք հրեղէնք եւ սպասաւորըք հրեշտակաց զինուորութիւնք· մաղթեցէք զՏէրըն Տէրանց վասըն մարդկան երկրաւորաց· ընդ նոսին որ։

Երկնաւորաց դասուց վերնոց օրհնաբանից քոց զուարթնոց· քաղցրացին առ քեզ գթած որ վասն մեր ձայն մաղթանաց· զօրս եւ տացես մեզ պահապան յայսմհետէ մինչ 'ի վախճան· ընդ նոսին։

Զօրութեանց եւ տէրութեանց, իշխանութեանց և պետութեանց, և ամենայն անուանելոց, որ 'ի յերկինս պաղատանօք· ընկալ Քրիստոս ուրախութեամբ զմեզ յօր մահու եւ յարութեան· ընդ նոսին օրհնել հոգւով զքեզ ընդ Հօր փառաւորելով։

---

Գւ. Էական բանն որ ընդ Հօր արարչակից եւ համազօր, յերրորդ աւուր զՋուրսըն զատոյց ըզ բոյսս եւ զտունկըս բղխեցոյց· իսկ 'ի յերրորդ

գարուն դարձեալ զջուրցըն հեղեղ ցամաքեցոյց. զնոյ տապանաւն իւր ապրեցոյց, ըզկենդանեաց սեռս աճեցոյց. տուք օրհնութիւն անճառ լու-

սոյն Հօր եւ Որդւոյ եւ սուրբ Հոգւոյն։

Ընդ ծառոց երկրի զգալեաց տնկեաց եւ ըզ տունկս իմանալեաց. զհեղեղ մեղացըն ցածուցեալ զդասս արդարոց բազմացուցեալ. յորոց և մեծն 'ի ծնունդս կանանց միջնորդ շնորհաց և օրհնաց.

տուք օրհ։

Թագաւորին երկնից զինուոր արքայութեանն աւետաւոր. խնդրեա՛ դընել ելս 'ի սրտի առ 'ի հովտէս տրտմականէ. յուխտեալ տեղին տէրու-նական 'ի խոստացեալն որդւոց մարդկան· տուք

օրհնութիւն ան։

Ժառանգին Հօր ըսպասաւոր և յարգանդէ եր-կըրպագող, Կարապետ և Մկրտիչ այնմ՝ որ մե-ղաց մերոց քաւիչ, լեր բարեխօս առ նոյն գը-

թած ջնջել ըզգիր մեր յանցանաց· տուք։

Ի Հօրէ լոյս ծագեցար մեռեալ բնութեանս կենդանարար· առաքեցեր յառաջընթաց սուրբ զՅովհաննէս քարոզ կենաց. սորին հայցմամբ ա-

մենակալ ըզպաղատանըս մեր ընկալ. տուք։

Լուսաշաւիղ յերկինս ելին հողանիւթեայ սուրբ հրեշտակին, արժանացո ըզմեզ նորին նեղ և անձուկ ճանապարհին· զի հետեւող գոլով նորին Հօր քոյ վերին օթեւանին. և երգեսցուք ընդ երջանկացն որդւոց լուսոյ քեզ երգս փա-

ռաց.

Դշ. Խաւարն անդոյ և սկզբնածին հալածե-
ցաւ յօրն առաջին. լոյսն այն պայծառ յօր չոր-
րորդին յարեգական նիւթ հաւաքեալ. լուսինն
'ի տիպ լուսոյ ստեղծեալ և աստեղաց պարք
յօրինեալ. որով օրհնի ստեղծողն էից 'ի բանա-
ւոր պաշտօնէից։

Ծածկեալ խորհուրդըն ծանուցաւ չորրորդ-
դարուն Իսահակաւ. 'ի չորրորդ օր դարձեալ հր-
րեշտակն ետ զաւետիսըն կուսական. Թէ լոյսն
որ ոչ բովանդակի, 'ի քեն մարմնով պարունակի.
յոր օրհնեցայք ազգ։

Կուսին նախնւոյ մօրն Եւայի, յորմէ Ադամըն
հին պարտի, բարձան անէծքըն" տրտմական քո
սուրբ ծնընդեամբ կոյս Մարիամ. աղաչեա զքո
միածինն թողուլ ըզմեղս որդւոց նոցին. յոր օրհ-
նեցայք ազգ երկ։

Հարսն ընծայեալ յերկրէ յերկինս, յոր ամ-
բառնամք առ քեզ հոգիս, յօր լսելոյ քո զաւե-
տիս խնդրեա լինել մեզ լսելիս. զձայն աւետ-
եաց քո միածնին եթէ եկայք օրհնեալք հօր իմ.
յոր օրհնեցայք ազգ։

Ձայնիւ առ քեզ Տէր պաղատիմք եւ առաջի
քո անկանիմք. աղաչանօք Աստուածածնին շիջո
'ի մէնջ ըզբոց հնոցին. տուր արտասուօք զմեղըս
ջնջել և վերստին զմեզ նորոգել. յոր օրհ։

Ղեկավար ճարտարապետ անցեր ընդ ծովս
կենցաղս անհետ. վերաբերեա ընդ Պետրոսի ըզ

մեզ 'ի յաւեաց մեղաց ծովէս․ պաղատանօք գե-
րագունին անապական քում ծնողին․ յոր օրհ․

---

Եւ․ Ճառագայթեալ բանն 'ի Հօրէ յոր հին-
գերորդըն հրամայէ, թղխել 'ի Ջրոց սեռք կայ-
տառաց և թեւաւորս օդականաց, իսկ 'ի դա-
րուն հինգ մկրտին յամպն և 'ի ծովն Իսրայէլ
հին․ տացուք հրաշից Ներգործողին պատիւ եւ
փառս անեղ բանին։

Մաքրապէս օրինակի առաքելոցըն Քրիստոսի,
որք 'ի ծովէն Տիբերական 'ի յերկնայինսըն կոչե-
ցան․ անցին ընդ ծով աշխարհական և 'ի հոգին
մկրտեցան․ տացուք հրաշից․

Ցուրախութիւնսն անզրաւական 'ի հարսանի-
սըն անապական․ զձեզ առաքեաց հայրըն փա-
ռաց հրաւիրատուք տրտմականաց․ սուրբ հար-
սանեացն այն հայցեցէք ընդ ձեզ լինել մեզ պա-
րակից․ տացուք հրաշից․

Նորոգողք տիեզերաց 'ի Նախահօրըն յանցա-
նաց․ Նորափետուր զարդարեցիք զեկե ղեցիս հե-
թանոսաց․ պաղատեցէք առ Նոյն գթած զմեզ
Նորոգել 'ի հնոց մեղաց․ տացուք հրաշից Ներ։

Շինող էիցըս համայնից արարածոց 'ի յանգո-
յից․ Նոյն շինեցեր զեկեղեցի վէմդ 'ի վերայ վի-
մին բանի․ 'Նդ եդեալ հիմունս 'ի Նոր Սիօն ըզ
մեզ յօդեա շինմամբ 'ի Նոյն․ տացուք։

Ուրախացաւ գնացիք գետոց քայլք 'ի քէն
շինեալ Ցիսուս․ յորժէ վըտակք շնորհաց հոսեն

զօգիս մարդկան առօգաննեն. արբո և զմեզ 'ի
Ջրոյն կենաց հայցմամբ հոգւոյն մատռուակաց.
զի բանաւոր երկիրըս քո պտղաբերի 'ի փառըս
քո։

Ո–ր· Զըհանդուրժեալ բնութեամբ բարւոյն ու-
նել միայն զանճառ բարին· այլ ստեղծեալ մարդ-
յիւր պատկերին 'ի վեցերորդն առաւօտին· և 'ի
յերրորդ ժամ զկողածինն 'ի յօգնութիւն ետ հո-
ղածնին. զորս 'ի դրախտին եդ վայելել, բայց
'ի պտղոյն մահու արգել։

Պապանձեալ առ դատողին յետ յանցանաց
Ադամըն հին, զկինըն պատճառ եդեալ խաբման
և կինըն զօձըն դաւաճան· որով երկիրս այս անի-
ծաւ, փուշ և տատասկ 'ի սմա բուսան. վճիռ մա-
հու մարդոյն տուաւ դառնալ 'ի հող ուստի
ստեղծաւ։

Ջնջել փութայր հայրըն փառաց ըզգիր պար-
տեաց մեր յանցանաց. որով զգեցաւ որդին զը-
թած 'ի վից դարուն զմարմին մեզաց· հօր հա-
ճութեամբ 'ի մահ խաչին եկն կամաւ 'ի յուր-
բաթին· զառն զենաւ 'ի հին զատկին փոխան
զառանցն յօրինակին։

Ոսահիւ լուսոյ պատուիրանին արդարութեան
ճանապարհին. բարձրանալով քո 'ի խաչին բարձ-
րացուցեր զմեզ 'ի յերկին. քո անպատում խո-
նարհութեամբդ եւ կամաւոր խաչելութեամբդ

հաշտեա ընդ մեզ Տէր գըթութեամբ և թող
ըզմեզս ողորմութեամբ։

Սոսկալիդ սերովբէից եւ ահաւորըդ քրովբէ-
ից. խոնարհեցար 'ի չարչարանս չարչարելի ըն-
նութեամբ մարդկան. 'ի խաչին զմեղս ըսպաներ
և զդատակնիք մահու լուծեր. հաշտ։

Վեհագոյն բնութեանց էից և արարիչըդ բո-
լորից. յորժամ ծագես զխաչիդ նըշան 'ի գալըստ-
եան քո միւսանգամ. զերկրպագուս այժմ հա-
ւատով լուսաւորեա նորին լուսով. զի համաձայն
խաչազգեցիցն ըզքեզ օրհնեմք յաւիտենից։

— —

Ծ-ք. Տէրն յետ ստեղծման արարածոց հան-
գեաւ յեօթն օրն 'ի գործոց. այն որ հանգիստ
աշխատելոց և կամքըն գործէ եղելոց. ուստի և
մեզ յոյս հաստատուն ետ հանգստեամբըն շա-
բաթուն. թէ աստ գործել զգործս Աստուծոյ,
անդ է հանգչիլ ընդ Աստուծոյ։

Բարունաբար վարդապետիմք, յօրինակէ Տեա-
ռըն խրատիմք. որ 'ի յերկրորդ արարչութեանն
յետ կատարման տնօրէնութեանն. յեօթներորդ
օր հանգստեան իջեալ մարմնով 'ի գերեզման. ըզ
կապեալ հոգիսըն վերածեաց զանանց հա՛գիստըն
պատրաստեաց։

Յօղդ որ 'ի քոյդ կողէ ցօղեալ բժըշկեսցէ ըզ
հանգուցեալսն. իջցէ 'ի հող մահու նոցին եւ
բուսուսցէ յօրըն վերջին. կենդանարար ձայնիւըդ
քո կոչեա զնոսա 'ի կեանըս քո. և դասեցո ընդ

արդարոցն երգել քեզ փառս ընդ զուարթնոցն։

Իխուծեալ զբնութիւնս կենաց ունող, դարձոյց յանցանքն 'ի մահու հող. իսկ անմահիդ մեռելութիւն շնորհեաց դարձեալ զանմահութիւն. զորս են ընդ քեզ թաղեալ մահուամբ աւազանին մկրտութեամբ, յարո ընդ քեզ քոյին փառօք արեգական նըման լուսով։

Փայլին արդարքն յարքայութեանն եւ ճգնաւորքն 'ի հանգստեանն. մարտիրոսքըն պըսակին և կուսանաց լապտերք վառին. դասեցո Տէր ընդ նոսին որք զքեզ Աստուած խոստովանին. արդարութեամբ մի դատեսցին, այլ գըթութեամբ քո քաւեսցին։

Քո անպատում խոնարհութեամբդ որ թաղեցար մեռելութեամբ. և յարուցեր յորդւոց մարդկան որք հաւատով'ի քեզ անկան. յարո՛ եւ զմեզ արդարութեամբ և զնընջեցեալսն ողորմութեամբ. զի կենդանեացըս բերանով տացին քեզ փառս ընդ Հօր Հոգւով։

Խնդրես. կեցո.

# ԿԱՆՈՆ

## Ս. ԾՆՆԴԵԱՆ ՃՐԱԳԱԼՈՅՑԻ ԵՐԵԿՈՅԵԱՆ

*Նախ՝* Ձայն Ա. Երեք Ողորմեայք ամբողջապէս.
*Մաղ.* Հոգւոց հանգուցելոց։
*Ապա՝* ԶՍաղմոսերգութիւն.
*Եւ ապա* Սաղմոս ձայնիւ *ԳԼ. ԻԲ.*

*Տէր հովուեսցէ զիս եւ ինձ ինչ ոչ պակասեսցի։ 'Ի վայրի դալարւոջ անդ բնակեցոյց զիս, եւ առ ջուրս հանգստեան սնոյց զիս։*

*Դարձոյց զանձն իմ առ իս, եւ առաջնորդեաց ինձ 'ի ճանապարհս արդարութեան վասն անուան իւրոյ։*

*Թէպէտ եւ գնացից ես 'ի մէջ ստուերաց մահու, ոչ երկեայց 'ի չարէ, զի դու Տէր ընդ իս ես։*

*Ցուպ քո եւ գաւազան՝ նոքա մխիթարեսցեն զիս։*

*Պատրաստ արարեր առաջի իմ զսեղան, ակն յանդիման նեղչաց իմոց։*

*Օծեր իւղով զգլուխ իմ, բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս։*

*Ողորմութիւն քո Տէր զհետ իմ եկեսցէ զամենայն աւուրս կենաց իմոց, բնակել ինձ 'ի տան Տեառն ընդ երկայն աւուրս։*

*Այլ. ալէ. Եւ ես խաղաղութեան. Օրհնութիւն.*
Դարձեալ *Սաղմոս ԳԼ. ՀԹ.*

Որ հովուեսդ Իսրայէլի նայեաց, որ առաջնորդես որպէս խաշին Յովսէփու։

Որ նստիս 'ի քրովբէս, յայտնեաց առաջի Եփրեմի եւ Մանասէի։

Զարթո՛ զզօրութիւնս քո, եւ ե՛կ 'ի կեցուցանել զմեզ։

Աստուած զօրութեանց դարձո՛ զմեզ. երեւեցո զերեսս քո 'ի մեզ եւ կեցցուք։

Տէր Աստուած զօրութեանց մինչեւ յե՞րբ բարկանաս յաղօթս ծառայից քոց։

Ջամբեցեր մեզ հաց արտասուաց եւ արբուցեր մեզ արտասուս չափով։

Արարեր զմեզ նախատինս դրացեաց մերոց, այ-պըն կատականաց թշնամեաց մերոց։

Աստուած զօրութեանց դարձո՛ զմեզ, երեւեցո՛ զերեսս քո 'ի մեզ եւ կեցցուք։

Այգի յԵգիպտոսէ փոխեցեր, հաներ զհեթանոսս և զնոսա տնկեցեր, և առաջնորդեցեր նմա։

Հաստատեցեր զարմատս նորա և ելից զերկիր, ծածկեաց զլերինս հովանի նորա եւ բարունակ նորա զմայրս Աստուծոյ։

Ձգեաց զորթ իւր մինչեւ 'ի ծով, մինչև 'ի գետս են շառաւիղք նորա։

Ընդէ՞ր քակեցեր զցանկ նորա։ եւ կթեն զնա անցաւորք ճանապարհի։

Ապականեաց զնա խոզ անտառի, և երեվայրի արածեցաւ 'ի նմա։

Աստուած զօրութեանց դարձ, հայեաց յերկնից եւ տես, այց արա այգւոյս այսմիկ և դարման տար սմա, զոր տնկեաց աջ քո։

'ի վերայ որդւոյ մարդոյ՝ զոր զօրացուցեր զնա 'ի քեզ, այրեցեալ 'ի հուր և աւերեալ 'ի սաստէ քում-մէ կորիցէ։

Եղիցի ձեռն քո 'ի վերայ առն, աջ քո 'ի վերայ որդւոյ մարդոյ, զոր զօրացուցեր զնա 'ի քեզ։

Ոչ ևս 'ի բացեայ եղիցուք մեք 'ի քէն, կեցուս-ցես դու զմեզ և զանուն քո Տէր կարդասցուք։

Աստուած զօրութեանց դարձո՛ զմեզ, երեւեցո զերեսս քո 'ի մեզ եւ կեցցուք։

Ալէլուիա որթի։

Աւետարան եւ ապա դարձեալ Սաղմոս Գլ. Բ.

Կց. Տէր ասաց ցիս որդի իմ ես դու, եւ ես այսօր ծնայ զքեզ։

Փխ. Ընդէ՞ր խռովեցան հեթանոսք, եւ ժողովուրդք խորհեցան 'ի սնոտիս։

Յանդիման եղեն թագաւորք երկրի, եւ իշխանք ժողովեցան 'ի միասին վասն Տեառն եւ վասն օծելոյ նորա։

Խզեսցուք զկապանս նոցա, և ընկեսցուք 'ի մէնջ զլուծ նոցա։

Բնակեալն յերկինս ծիծաղեսցի զնոքօք, եւ Տէր արհամարհեսցէ զնոսա։

Յայնժամ խօսեսցի ընդ նոսա բարկութեամբ իւրով եւ սրտմտութեամբ իւրով խռովեցուսցէ զնոսա։

Ես կացի թագաւոր 'ի նմանէ 'ի վերայ լերին Սի-օնի սրբոյ նորա, 'ի պատմել զհրամանս Տեառն։

Տէր ասաց ցիս որդի իմ ես դու, եւ ես այսօր ծնայ զքեզ։

Խնդրեա՛ յինէն եւ տաց քեզ զհեթանոսս 'ի ժառանգութիւն և յիշխանութիւն քեզ ընդ ամենայն ծագս երկրի։

Հովուեսցես զնոսա գաւազանաւ երկաթեաւ եւ որպէս զանօթ բրտի փշրեսցես զնոսա։

Արդ՝ թա՛գաւորք, զայս 'ի միտ առէք, եւ խրատեցարուք ամենեքեան՝ որք դատէքզերկիր։

Ծառայեցէք Տեառն երկիւղիւ, և ցնծացէք առաջի Նորա դողութեամբ։

Ընկալարուք զխրատ Նորա՝ զի մի բարկասցի Տէր, եւ կորնչիցիք 'ի ճանապարհացն արդարութեան։

'Ի ժամանակի՝ յորժամ բորբոքեսցի բարկութիւն Նորա։

Երանի ամենեցուն՝ որք յուսացեալ են 'ի Տէր։

Ալէ. ալէ. Եւ ևս խաղաղութեան. Օրհնութիւն.
Դարձեալ Սաղմոս. Գլ. ՃԹ.

Կց. 'Ի վայելչութիւն սրբոց քոց յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ։

Փխ. Ասաց Տէր ցՏէր իմ, Նիստ ընդ աջմէ իմմէ, մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց։

Գաւազան զօրութեան առաքեսցէ քեզ Տէր 'ի Սիօնէ, և տիրեսցես դու 'ի մէջ թշնամեաց քոց։

Ընդ քեզ է սկիզբն յաւուր զօրութեան 'ի վայելչութիւն սրբոց քոց, յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ։

Երդուաւ Տէր եւ ոչ ևս զղջասցի, թէ դու ես Քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի, եւ Տէր ընդ աջմէ քումմէ։

Խորտակեսցէ յաւուր բարկութեան զթագաւորս.

*դատէ զհեթանոսս և բազում առնէ զհարուածս, եւ խորտակեսցէ զգլուխս բազմաց յերկրի։*

*Զուղխս 'ի ճանապարհի արբուսցէ. վասն այսորիկ և բարձր արասցէ զգլուխս։*

*Ալէլուիա որթի։* Աւետարան։
*Ապա* խոնարհեցո։ Այրեցո։
*Եւ եթէ չաբաթ իցէ* Լոյս զուարթ։
*Մեսեդի.* Տէր ասաց ցիս։ *Քարոզ.* Աղաչեսցուք։
*Սբ. Ած.* ըստ պատշաճի աւուրն։
*Համբ. Բձ.* Անկանիմք. տես յէջ 57։
*Ձկնի՝* Հայր գթած։

Ապա Գիրք Ծննդոց, Ա «Ի սկզբանէ»։
Յետոյ կ'ընթեռնուն յԵզեկիէլէ մեսասան ընթերցուած ներն եւ մինչ կ'ընթեռնուն «Օրհնեցէք ամենայն գործք Տեառն», դպիրք կը նուագեն։

*Օ՛րհնեցէ՛ք գո՛վեցէ՛ք և բա՛րձր ա-
րարէ՛ք ըզնա յաւիտե՛ան։*

Երիցս կրկնութիւն

*'Ի ժամ Ս. պատարագին ժամամուտ*

*Աստուածածին անհարսնացեալ զբանն անսկիզբն յղացար, եւ զԱստուածն անիմանալին ծնար. զանպարագրելին 'ի գիրկս քո բարձեր, նմա անդադար բարեխօսեա վասն անձանց մերոց։*

Ճաշու

*Մեծ. Գյ.* *Զա՛նճառելի լուսո՛յ մայր և՛ ըզբնակարա՛ն անսկզբնա՛կից որդ-*

ւոյն. օրհնութեամբ մեծացուցանեմք։ Զանհաս տնօրէնութեան մայր, եւ զանձնաւոր տաճար աստուծոյբանին. օրհնութեամբ մե։ Զբոլորից փրկութեան մայր, որ զանտանելին յէից 'ի յարգանդի եբարձ. զնա ամենեքեան օրհնութեամբ մեծացուցանեմք։

Սբ. Ած. որ ծնար եւ յայտնեցար վասն։
Գիրք եւ ապա Սաղմոս։

Հոգին սուրբ եկեսցէ 'ի քեզ և զօրութիւն բարձրելոյն հովանասցի 'ի վերայ քոյ։

Աւետարան. ապա Փառք քեզ Տէր Աստուած մեր:

## ՀԱՆԳԱՆԱԿ ՆԻԿԻԱԿԱՆ

Հաւատամք 'ի մի Աստուած Հայրն ամենակալ. յարարիչն երկնի եւ երկրի, երեւելեաց եւ աներեւութից։ Եւ 'ի մի Տէր Յիսուս Քրիստոս որդին Աստուծոյ, ծնեալն յԱստուծոյ Հօրէ միածին, այսինքն յէութենէ Հօր։ Աստուած յԱստուծոյ, Լոյս 'ի լուսոյ, Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ. ծնունդ եւ ո՛չ արարած։ Նոյն ինքն 'ի բնութենէ Հօր. որով ամենայն ինչ եղև յերկինս և 'ի վերայ երկրի, երեւելիք և աներեւոյթք։ Որ յաղագս մեր մարդկան, եւ վասն մե-

րոյ փրկութեան՝ իջեալ յերկնից՝ մարմնացաւ, մարդացաւ. ծնաւ կատարելապէս 'ի Մարիամայ սրբոյ կուսէն հոգւովն սրբով։ Որով էառ զմարմին, զհոգի, և զմիտ, և զամենայն որ ինչ է 'ի մարդ, ճշմարտապէս եւ ո՛չ կարծեօք։ Չարչարեալ, խաչեալ, թաղեալ, յերրորդ աւուր յարուցեալ. ելեալ 'ի յերկինս նովին մարմնովն նստաւ ընդ աջմէ Հօր։ Գալոց է նովին մարմնովն և փառօք Հօր 'ի դատել զկենդանիս և զմեռեալս. որոյ թագաւորութեանն ո՛չ գոյ վախճան. Հաւատամք և 'ի սուրբ Հոգին. յանեղն և 'ի կատարեալն. որ խօսեցաւ յօրէնս և 'ի մարգարէս եւ յաւետարանս։ Որ էջն 'ի Յորդանան. քարոզեաց զԱռաքեալսն, եւ բնակեցաւ 'ի սուրբսն։ Հաւատամք և 'ի մի միայն ընդհանրական եւ յառաքելական եկեղեցի, ի մի մկրտութիւն, յապաշխարութիւն, 'ի քաւութիւն եւ 'ի թողութիւն մեղաց։ Ի յարութիւնն մեռելոց. 'ի դատաստանն յաւիտենից հոգւոց և մարմնոց, յարքայութիւնն երկնից և 'ի կեանսն յաւիտենականս։

Իսկ որք ասեն՝ էր երբեմն, յորժամ ո՛չ էր Որդի. կամ էր երբեմն, յորժամ ո՛չ էր սուրբ Հոգի. կամ թէ՝ յոչէից եղեն, կամ յայլմէ էութենէ ասեն լինել զՈրդին Աստուծոյ՝ եւ կամ զսուրբ Հոգին. և թէ՝ փոփոխելիք են կամ այլայլելիք. զայնպիսիսն նզովէ՝ կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցի.

Ի սրբոյ Լուսաւորչէն մեզ ասացեալ·

*Իսկ մեք փառաւորեսցուք՝ որ յառաջ քան զյաւիտեանս. երկրպագանելով սրբոյ Երրորդութեանն և միոյ Աստուածութեանն Հօր եւ Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, այժմ և։*

*Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչես։*

Սրբասացութիւն

*Բազմութիւնք հրեշտակաց և զօրաց երկնաւորաց իջեալ ի յերկնից ընդ միածնին Թագաւորին. որք երգէին և ասէին սա է Որդին Աստուծոյ. ամենեքեան ասացուք ուրախ լերուք երկինք եւ ցնծասցեն հիմունք աշխարհի. զի Աստուած յաւիտենական ՚ի յերկրի երևեցաւ և ընդ մարդկան շրջեցաւ. զի կեցուսցէ զանձինս մեր։*

**Նախատօնակ**

**յԱրձակման Ս. Պատարագին**

**Խորհուրդ մեծ. իւր սարօքն.**

# ԿԱՆՈՆ

## Ս. ԾՆՆԴԵԱՆ ԱՌԱՒՕՏՈՒՆ

*Տէր զի թագաւոր, իւր սարօքն. Տն էջ 1.*

Օրհ. Դկ. Խորհուրդ մեծ եւ սքանչելի, որ յայսմ աւուր յայտնեցաւ. Հովիւքն երգեն ընդ հրեշտակս տան աւետիս աշխարհի։

Ծնաւ նոր արքայ 'ի Բեթղեհէմ քաղաքի, Որդիք մարդկան օրհնեցէք, զի փառքն մեր մարմնացաւ։ Անքաւելին երկնի եւ երկրի 'ի խանձարուրս պատեցաւ. Ոչ մեկնելով 'ի Հօրէ 'ի սուրբ այրին բազմեցաւ։

Այսօր ցնծան երկինք 'ի վերուստ մեծապայծառ աւետեօք. Եւ արարածք ամենայն զգեցան հանդերձ փրկութեան։

Այսօր այրին ընծայեցաւ Քրիստոս որդին աստուծոյ. Եւ հրեշտակաց

բաղձութիւնքն յերկնից յերկիր
վայր իջեալ։

Այսօր Հովուացըն տեսեալ զար-
դարութեան արեգակն. Եւ ընդ Հը-
րեշտակս երգէին փառք 'ի բար-
ձունս աստուծոյ։

Ի Հօրէ ծագեցար լուսաւորել
զաշխարհս. Արդարութեան ա-
րեգակըն տէր փառք քեզ։

Ծնար 'ի յայրին ընծայեցաւ
բեթղեհէմ. Արդարութեան
արեգակըն տէր փառք քեզ։

Հովուացն յայտնեցար երկրպագ-
եալդ 'ի մոգուց. Արդարութեան
արեգակըն տէր փառք քեզ։

Եւ մեք երգեցուք որ 'ի կուսէն
մարմնացար. Արդարութեան ա-
րեգակըն տէր փառք քեզ։

**Քաղուածք Օրհնութեան**

**Այսօր բանն 'ի Հօրէ, անմեկնելի**

և անճառելի խորհըրդով, ՚ի ձեռըն
կուսական որովայնի տնօրինաբար
յերկրի երևեցաւ։ Մանուկ անժա-
մանակ ՚ի հօրէ անսերմն ՚ի կուսէ,
՚ի գիրկըս մօր գըգուեցաւ ա յսօր
արարի՞չն երկնի և երկրի։ Որ մաք-
րեաց ըզյորդանան և լուաց ըզմեղս
աշխարհի. զոր օրհնեն անդադար
արարածք ամենայն զէակիցըն հօր
և հոգւոյն։

Աստուածածին սուրբ կոյս անա-
պական տաճար, անպարագիծ էին
բոլորից բնութեանց լայնածաւալ
տեղի. այսօր ընդ բերկրական զը-
ւարթնոյն կրկնեցեր աւետեաց զտէրըն
տէրանց ՚ի քեզ. ո՜ւ որ մաղթեմք
բարեխօսել վասըն մեր անըլուելի ձայ-
նիւ։ Յիմանալի վտակաց տանն աս-
տուծոյ հոսմանց, վիճակեալ տեսա-
նողացըն ձայնի սրբմամբ ըզմայլեցար.

այսօր զանթառամըն ծաղկեցար ըզ
ծաղիկ 'ի ժամու տալով զպտուղն. առ
որ: Այսօր 'ի քեզ լցեալ ամովսածնին
բարբառ. որ 'ի փրկութիւն հասարա-
կաց տուեալ նշան բնութեան ազգի
մարդկան. ահա կոյս յղասցի և ծնը-
ցի որդի զընդ մեզ յայտնեալն աս-
տուած. առ:

Ըզքեզ աստուածածին աղբիւր
անըսպառ լուսոյն, որ լուսաւորէ ըզ
հաւատացեալս, միաբանական ձայ-
նիւ երգով մեծացուցանեմք: Դու
պարծանըք կուսութեան մարդկան.
դու ուրախութիւն հրեշտակաց.
դու բարձող անիծիցն. վասն որոյ
զքեզ աստուածածին մեծացուցա:
Դու ճշմարիտ արեւելք արեգակա-
նըն արդարութեան, յորմէ ծագեաց
փրկութիւն տիեզերաց, միաբանական
ձայնիւ երգով մեծա:

Աստուածածին և սրբուհի, որ ըզբանն աստուած անսերմն յղութեամբ յարգանդի կրեցեր. անդադար երգով մեծացուցանեմք: Զքեզ մայր կուսութեան եւ յղութեան լուսոյ, և առագաստ անճառելւոյ բնակողին. 'ի քեզ փեսայացեալ բանին. անդադար երգով: Քև լուծան կնիք դատապարտութեան և, քև կանգնեցաւ մեղուցեալ մայրըն գլորեալ: վասն որոյ ըզքեզ աստուածածին և կոյս. անդադար երգով մեծացուցա:

Միայնոյ քեզ 'ի կանայս կոյս յետ ծնընդեան երգեմք զօրհնութիւն. զի լոյս 'ի լուսոյ քև յայտնեցաւ աշխարհի. և զնախամօրն եբարձ զանէծս անճառ ծընընդեամբն 'ի քէն: Քեզ միայնոյ մարմնացելոյդ 'ի սուրբ կուսէն, օրհնութիւն 'ի բարձունըս

վերերգեմք ասելով, փառըք քեզ Քրիստոս որ եկիր կամաւ Հօր կեցուցանել ըզմեզ ։ Խընդա Մարիամ, որ եղեր մայր Քրիստոսի, և աղաչեա զառ ՚ի քէն զմարմնացեալ բանն աստուած. զի փրկեսցէ զմեզ ՚ի փորձութենէ ։

Եւ ևս խաղաղու.

Հոգիք հրեղինացն այսօր տօնեն ընդ մեզ ըզգալուստ հոգւոյն աստուծոյ ։ Տեսանողն յառաջ նշանակէր զառատաբուղխ վըտակ իմաստից ՚ի մեզ հեղեալ ՚ի հոգւոյն ։ Վէմըն հաւատոյ զմայլեալ անմահական բաժակաւն այսօր բաշխէր ծարաւեաց ։ Գետոցս այս գնացիւք ցնծայ քաղաքն աստուծոյ սիոն մայր եկեղեցի ։ Վասն որոյ եւ մեք երրեակ եւ մի աստուածութեանն երգեմք ըզփառս ՚ի բարձունս ։

Ո՛ր 'ի հօրէ՜ առաքեցա՛ր մարդա-
սէ՛ր կարո՛ղ փրկիչ. եւ ըզմեղուցեալ
ըզմարդըն բըժշկեցեր. ողորմեա՛ տէր
հրաժարելոյս. զոր հրաւիրեալ առ
քեզ կոչեցեր: Ո՛ր 'ի խաչի՜ն բեւե-
ռեցա՛ր մարդասէր կարող փրկիչ. և
ըզցօղ անապական արեանըդ ցօղեցեր
տիեզերաց. ողորմեա՛ տէր հրաժարե-
լոյս, Ո՛ր ըզդըժոխս աւերեցեր և ըզ
գերեալսըն փրկեցեր և զարգելեալսըն
վերածեր 'ի լոյս կենացըն յաւիտե-
նից. ողորմեա՛ տէր:

Փառք Հօր. Այժմ եւ միշտ:

Մաղթանք, «Փառք հրաշափառ Ծննդեան»

Քարոզ ըստ ձայնի աւուրն. տես յէջ 52

## ԱԼԷԼՈՒՔ

### Ծննդեան Տեառն մերոյ Յիսուսի

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Այ. Տէ՛ր հովուեսցէ զիս. և ինձ ինչ ոչ պակասեսցի։

'Ի վայրի՛ դալարւոջ անդ բնակեցոյց զիս, եւ առ ջուրս հանգստեան սընոյց զիս։

Է. Ալէ։ Իջցէ՛ որպէս զանձրեւ 'ի վերայ գեղման. որպէս ցօղ զի ցօղէ յերկիր։

Ծագեսցի՛ յաւուրս նորա արդարութիւն. բազում խաղաղութիւն մինչեւ կատարեսցի լուսին։

Փա՛ռք եւ երկրպագութիւն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. Ա՛յժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն։

Դա՛սք հրեշտակաց օրհնեն զՔեզ Քրիստոս, ալէլուիա. Մարդկա՛ն ազգ սաղմոսեն քեզ։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

---

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Աէ. Լո՛ւր դուստր եւ տես. խոնարհեցո զունկն քո. մոռա զժողովուրդ քո եւ զտուն Հօր քոյ, զի ցանկացաւ Թագաւոր գեղոյ քոյ։

Սա՛ ինքն է Տէր քո՝ երկիրպագցես սմա. եւ դուստր ծուրայ երկիրպագցէ սմա. եւ պատարագօք զերեսս սորա պաշտեսցեն մեծամեծք 'ի ժողովրդոց։

Ք. Ալէ: Նա՛ կարդասցէ առ իս, Հայր իմ ես դու. Աստուած ընդունող փրկութեան իմոյ:
Ե՛ս անդրանիկ արարից զնա, եւ բարձր քան զամենայն թագաւորս երկրի:
Փառք եւ երկրպա: Այժմ եւ միշտ եւ:
Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

---

Ալէլուիա. Ալէլուիա. Ալէլուիա:
Բյ. Իջցէ՛ որպէս անձրեւ 'ի վերայ գեղման. որպէս ցօղ զի ցօղէ յերկիր:
Ծագեսցի՛ յաւուրս նորա արդարութիւն. բազում խաղաղութիւն մինչեւ կատարեսցի լուսին:
Ք. Ալէ: Եցո՛յց Տէր զփրկութիւն իւր, առաջի ազգաց յայտնեաց զարդարութիւն իւր:
Յիշեա՛ց ողորմութեամբ իւրով զՅակոբ. Ճշմարտութեամբ իւրով զտունն Իսրայէլի. եւ տեսին ամենայն ծագք երկրի զփրկութիւն Աստուծոյ մերոյ:
Փա՛ռք եւ երկիր: Այժմ եւ միշտ: Ալէլուիա:

---

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա.
Բկ. Նա՛ կարդասցէ առ իս Հայր իմ ես դու.
Աստուած ընդունող փրկութեան իմոյ:
Ե՛ս անդրանիկ արարից զնա. եւ բարձր քան զամենայն թագաւորս երկրի:
Ք. Ալէ: Ընդ քե՛ղ է սկիզբն յաւուր զօրու-

Թեան. 'ի վայելչութիւն սրբոց քոց յարգանդէ
յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ։
Երդուա՛ւ Տէր եւ ոչ եւս զղջասցի. թէ դու
ես Քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսե-
դեկի, եւ Տէր ընդ աջմէ քումմէ
Փառք եւ եր. Այժմ եւ միշտ։ Ալէլուիա։

---

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Գյ. Եցո՛յց Տէր զփրկութիւն իւր, առաջի ազ-
գաց յայտնեաց զարդարութիւն իւր։
Յիշեա՛ց ողորմութեամբ իւրով զՅակոբ, ճշ-
մարտութեամբ իւրով զտունն Իսրայէլի, եւ տե-
սին ամենայն ծագք երկրի զփրկութիւն Աստու-
ծոյ մերոյ։

Ժ. Ալէ։ Յիշեա Տէր զԴաւիթ, եւ զամենայն
հեզութիւն նորա։
Որպէ՛ս երդուաւ Տեառն, եւ ուխտս եդ Աս-
տուծոյ Յակոբայ։
Փառք եւ |երկրպագ. Այժմ և միշտ։ Ալէ։

---

Ալէլուիա. Ալէլուիա. ալէլուիա։

Գկ. Ընդ քե՛զ է սկիզբն աւուր զօրութեան.
'ի վայելչութիւն սրբոց քոց յարգանդէ յառաջ
քան զարուսեակ ծնայ զքեզ։
Երդուա՛ւ Տէր եւ ոչ ևս զղջասցի. թէ դու
ես Քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսե-
դեկի. եւ Տէր ընդ աջմէ քումմէ։

Փ. Ալէ։ Տէ՛ր ասաց ցիս որդի իմ ես դու. և ես այսօր ծնայ զքեզ։

Խնդրեա՛ յինէն, եւ տաց քեզ զհեթանոսս 'ի ժառանգութիւն. եւ իշխանութիւն քեզ ընդ ամենայն ծագս երկրի։

Փա՛ռք եւ՟երկրպա. Այժմ և միշտ և։ Ալէ։

---

Ալէլուիա. Ալէլուիա. Ալէլուիա։

Դյ. Յիշեա՛ Տէր զԴաւիթ, եւ զամենայն հեզութիւն նորա։

Որպէ՛ս երդուաւ Տեառն, եւ ուխտս եդ Աստուծոյ Յակոբայ։

Փ. Ալէ։ Տէ՛ր հովուեսցէ զիս. եւ ինձ ինչ ոչ պակասեսցի։

'Ի վայրե՛ դալարւոջ անդ բնակեցոյց զիս. եւ առ ջուրս հանգստեան սնոյց զիս։

Փա՛ռք և երկրպա։ Այժմ և միշտ և։ Ալէ։

---

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Դկ. Տէր ասաց ցիս որդի իմ ես դու. եւ ես այսօր ծնայ զքեզ

Խնդրեա՛ յինէն, եւ տաց քեզ զհեթանոսս 'ի ժառանգութիւն. եւ իշխանութիւն քեզ ընդ ամենայն ծագս երկրի։

Փ. Ալէ։ Լո՛ւր դուստր և տես, խոնարհեցո՛

զունկն քո. մոռա զժողովուրդ քո եւ զտուն Հօր քոյ, զի ցանկացաւ թագաւոր գեղոյ քոյ։ Սա՛ է Տէր քո՝ երկիրպագցես սմա. եւ դուստր Ծուրայ երկիրպագցէ սմա. եւ պատարագօք զերեսս սորա պաշտեսցեն մեծամեծք 'ի ժողովրդոց։

Փառք և երկրպա։ Այժմ և միշտ և։ Ալէ.

---

Հրց. Գյ. Անըսկիզբն էակից բանըդ Հօր. որ էիր յառաջ քան զյաւիտենս. և եկիր 'ի փրկութիւն բանեղծուածոց քոց. ընդ քեզ օրհնեմք աստըւած Հարցըն մերոց։ Ծընար 'ի կուսէ անճառ միութիւն. անբաժանելի եւ միշտ գոլով ոչ մեկնեցար 'ի Հայրական ծոցոյ. զքեզ օրհնեմք ։ Ցընծութեամբ տօնեսցուք ըզծընունդ քո սուրբ, որ յայտնեցար մեզ լոյս 'ի լուսոյ. և լուսով քով լցեր զտիեզերս. զքեզ օրհն։

ե, Գործըք տեառն ըզտէր օրհն-

նեցէք, և բարձր արարէք ըզ
նա յաւիտեան :

Ըզծնեալն ՚ի սրբոյ կուսէն օրհ-
նեցէք. և ուբարձր արարէք ըզնա
յաւիտեան։ Զանճառելի զծընո-
ւնդ փրկչին գովեցէք, և առաւե-
լբարձր արարէք ըզնա յաւիտ-
եան :

Մեծ. Ուրախ լեր աստուածածին,
յոյս և փրկութեան մայր, զքեզ
ընդունող լուսոյ մեծացուցանեմք :
Ըզքեզ լուսոյ մայր և կոյս, զքեզ
գանձ ըզ կենաց՝ աստուածային ձայ-
նիւ ցնծութեամբ մեծացու : Մայր
սուրբ անարատ լուսոյն. Հրեշտակա-
յին օրհնութեամբ պատուեալ զքեզ
մեծաց :

«Ի Կիւրակէի յետ Իւղաբերից Աւետարանին» ։

Հոյլք հոգեղէնք ընդ հովիւն քարոզէին ՚ի յանքանից մըսուր զբա-նըն բազմեալ և մոգքն աստեղբըն գուշակեալ մատուցին զընծայսն խոր-հըրդոյ ։

---

Որ․ Ամենիմաստ ամենից հայր բազմազեղ, խնամող ստեղծող և տէր բոլորից․ անեղ և էիցս էակ, զոր միշտ օրհնեն դասք անմարմնա-կանացն յաւէժաբար հնչմամբ ։ Որ կերպարան եւ կնիք հօր առեալ վա-սըն մեր, ծառայի կերպ ՚ի կուսէն․ որ էն ՚ի յաթոռ փառաց․ անտես վերնոցն, ՚ի յայրին իջևանի և ՚ի մըսուր անքանից բազմեալ ։ Զ՚ի կու-սէն մարմնացեալ բանն, եկայք ժո-ղովուրդք ընդ հովիւսըն բարեբանես-ցուք․ և ընդ մոգուցն երկըրպագես-ցուք․ ընդ երկնային զօրսն երգես-

ցուք փառք ՚ի բարձունս աստուծոյ։

Տէր· Ճառագայթ և կերպարան է-ութեան հօր բանդ աստուած· ըզ-քեզ բարեբանեմք ասելով· փառք ՚ի բարձունս աստուծոյ։ Որ միացար ՚ի մարմնի անճառապէս ճշմարիտ աստուած· զքեզ բարեբանեմք։ Որ զանիծիցըն բարձեր ըզդատապարտու-թիւն քրիստոս աստուած· զքեզ բարեբանեմք։

Որթի, Աւետարան։ Ապա Փառք ՚ի բարձ. տես էջ 58
Դարձեալ մեաց· Աւետարանին.
Ապա Եւ յամ. ժամ։

Եղէ· Ա—· Արեգակն արդարութեան այսօր յայտնեցար ազգի մարդկան. մարդ եղեալ սրբեցեր ըզջուրս, վերա-ծնեալ զմեզ մկրտութեամբըն սրբոյ հոգւոյն։ ՚Ի վայելչութիւն փառաց սրբութեան քոյ ՚ի յարգանդէ յա-ռաջ քան զարուսեակ ծնայ ըզքեզ,

մարդ եղեալ սրբեցեր ըզջուրս. վե-
րածնեալ զմեզ մկրտութեամբըն սըր-
բոյ հոգւոյն։

---

Քհն. Մայր սո՛ւրբ աքանչելի լուսոյն, որ զԱստ-
ուածն ամենայն յաւիտեանց յորովայնի քում կը-
րեցեր, եւ ցնծութի՛ւն աշխարհի ծնար զբանն
Աստուած, աղաչեմք։

Մայր սուրբ բարեխօսեա։

Աղաչեա վասն մեր զառ 'ի քէն զմարմնացեալն
Աստուած, որ խոնարհեցաւ 'ի հայրական ծոցոյ,
էառ մարմին ըստ մարդկային բնութեանս. առ-
նե՛լ խաղաղութիւն յերկինս և յերկրի. աղաչեմք։

Մայր սուրբ բարեխօսեա։

Աղաչեա վասն մեր զառ 'ի քէն զմարմնացեալն
Աստուած՝ ներել մեզ, անտես առնել զյանցանս
մեր եւ տա՛լ օգնականութիւն ընդդիմակաց լի-
նել հակառակամարտիցն 'ի պատերազմի. աղա-
չեմք։

Աղաչեա վասն մեր զառ 'ի քէն զմարմնացեալն
Աստուած՝ զի լռեսցին պատերազմունք, դադա-
րեսցին յարձակմունք թշնամեաց, տնկեսցի՛ն սէր
եւ արդարութիւն 'ի յերկրի. աղաչեմք։

Աղաչեա վասն մեր զառ 'ի քէն զմարմնացեալն
Աստուած, աճեցուցանել յերկրի մերում զքաղցր

բղխումն աղբերաց. զառատ պտղաբերութիւն բուսոց եւ տնկոց, առ 'ի զուարճալի' լինել ամենայն հարկաւոր պիտոյից մերոց. աղաչեմք:

Աղաչեա վասն մեր զառ 'ի քէն զմարմնացեալն Աստուած, զի միաբանեսցէ զեկեղեցի իւր սուրբ, չինեալ 'ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից, պահել անարատ մինչեւ յօր երեւելոյ գալըստեան իւրոյ. աղաչեմք:

Աղաչեա' վասն մեր Սրբուհի զմիածին քո զորդին եւ վասն հոգւոցն հանգուցելոց, ընդունել յարքայութիւնն երկնից եւ տալ մասն եւ բաժին ընդ սուրբս ամենայն. աղաչեմք:

Յիշեա՛ Տէր և ողորմեա:

Եւ եւս առաւել գյորդորումն սիրոյ և զգործըս բարեաց պարգեւել մեզ խնդրեմք:

Տուր մեզ Տէր Աստուած:

Զանձինս մեր եւ զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալիդ յանձն արասցուք:

Քեզ Տեառնդ յանձն եղիցուք:

Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ:

Տէր ողորմ. Տէր ող. մայր սուրբ բարեխօսեա առ Տէր վասն մեր:

Սուրբ Աստուած որ ծնար եւ յայտնեցար վասն մեր ։
*Տար*․ Խորհուրդ մեծ․ Տես յեջ 79
*Ջկնի որթի*․ Աւետարան ։
*Տար*․ Այսօր ցնծան եր․ Տես յեջ 80
*Ջկնի որթի*․ Աւետարան ։
*Տար*․ Այսօր բանն ՚ի Հօրէ․ Տես յեջ 80
*Ջկնի որթի*․ Աւետարան ։
*Տար*․ ՚Ի Հօրէ ծագեցար․ Տես յեջ 80
*Ջկնի որթի*․ Աւետարան ։
*Սաղմոս*․ ՚Ի վայելչութիւն․ Տես յեջ 80
*Աւետարան*․ *եւ ապա* «Նորաստեղծեալ» կամ «Առարչական» Ըստ պատշաճի աւուրն տես յեջ 62
*Ապա* «Կեցո՛» ։

---

*՚Ի ժամ Ս. Պատարագին*

*Տարական զգեստու*

*Դչ*․ *Խորհուրդ խորին անհաս անըսկիզբն․ որ զարդարեցեր զվերին պետութիւնդ, ՚ի յառագաստ անմատոյց լուսոյն․ գերապանծ փառօք զդասըս հրեղինաց ։ Անճառահրաշ զօրութեամբ ստեղծեր զԱդամ պատկեր տիրական․ եւ նազելի փառօք զգեստաւորեցեր ՚ի դրախտն Ադենայ տեղի բերկրանաց ։ Չարչարանօք քո սուրբ միած–*

նին. Նորոգեցան արարածք ամենայն, եւ վե-
րստին մարդն անմահացաւ, զարդարեալ 'ի ըզ-
գեստ անկողոպտելի։ Անձրեւածին բաժակ հը-
րահոսան, որ հեղեր յառաքեալսն 'ի սուրբ վեր-
նատանն, հեղ և 'ի մեզ՝ Հոգիդ սուրբ Աստուած,
ընդ պատմուճանի զքո զիմաստութիւն։ Տան քում
վայելէ սրբութիւն, որ զգեցար ըզվայելչութիւն,
սրբութիւն փառաց ընդ մէջ քո ածեալ պատեա
ըզմէջս մեր ճշմարտութեամբ։ Որ զարարչագործ
բազուկս քո տարածեցեր ընդդէմ աստեղաց,
հաստատեա՛ զբազուկս մեր կարողութեամբ, համ-
բարձմամբ ձեռաց առ քեզ միջնորդիլ։ Իւսմամբ
թագ 'ի գլուխ պատեսցես ըզմիտս եւ ըզգայա-
րանս խաչանիշ ուրարմամբ ըստ Ահարոնին, ծաղկ-
եալ յոսկեթել 'ի զարդ խորանի։ Բամից բոլորից,
տիրապէս աստուածպետական, Նափորտապատ
սիրով զմեզ զգեստաւորեցեր, քում սուրբ խոր-
հըրդոյդ լինել սպասաւոր։ Թագաւոր երկնաւոր.
զեկեղեցի քո անշարժ պահեա և զերկրպագուս
անուանըդ քում պահեա՛ 'ի խաղաղութեան։

Մաղ. Վասն սրբոյ Աստուածածնին։

Քարոզ. Սուրբ զԱստուածածինն :

Փ. Աղաղակեցէք առ Տէր ամենայն երկիր. ծառայեցէք Տեառն ուրախութեամբ։

Մտէք առաջի Նորա ցնծութեամբ, ծաներուք զի Նա է Տէր Աստուած մեր։

Նա արար զմեզ, եւ ո՛չ մեք էաք. մեք ժողովուրդք եւ խաշն արօտի նորա։

Մտէք ընդ դրունս նորա խոստովանութեամբ, եւ օրհնութեամբ 'ի յարկս նորա։

Խոստովան եղերուք Տեառն, եւ օրհնեցէք զանուն նորա։

Քաղցր է Տէր յաւիտեան է ողորմութիւն նորա, յազգէ մինչև յազգ եւ ճշմարտութիւն նորա։

Փառք Հօր եւ Որդ. Այժմ եւ միշտ։

Քարոզ. Սուրբ եկեղեցեաւս եւայլն։

---

Ընտրեալըդ յԱստուծոյ. ո՛վ երջանիկ Սուրբ
քահանայ.

Նըմանեալ Ահարոնի, եւ Մովսէսի մարգարէին. Այնմ որ զդեստուցն էր յօրինող, զոր Ահարոն միշտ ըզգենոյր։

Յօրինէր զպատմուճանն, զոր 'ի չորից կազմեալ նիւթոց, 'ի կարմրոյ, 'ի կապուտոյ, 'ի բեհեզոյ, 'ի ծիրանւոյ։

Մեղեդի Ծննդեան

Նոր ծաղիկ այսօր բղխէ յարմատոյն Յեսսեայ եւ որդի Դաւթի ծնանի զորդին Աստուծոյ։

Հրճուիմք այսօր մեք հոգեպէս տօնիւս մաքուր սուրբ կուսական. զի ծնաւ փրկիչ մեր Տէր

Քրիստոս որդի Դաւթի Աբրահամու։
Բանին Հօր ծոցոյ մարմնարան արփիահրաշ կոյս
Մարի րէյ րի րէյ րիամ։

'ի Թափորին

Այսօր տօն է սուրբ Ծննդեան․ աւետիս․
Տեառն մերոյ եւ յայտնութեան․ աւե․ աւե։
Այսօր սուրբ կոյսն անապական․ աւետիս․
Ծընաւ, եբեր զանմահ արքայն․ աւե․ աւե։
Այսօր արեւն արդարութեան, աւետիս․
Երեւեցաւ 'ի մէջ մարդկան․ աւե․ աւե։
Այսօր հրեշտակք յերկնից իջեալ․ աւետիս․
Ընդ մեզ օրհնեն զանմահ արքայն աւե․ աւե։

---

## ՇԱՐԱԿԱՆ ԽՆԿԱՐԿՈՒԹԵԱՆ ՍՐԲՈՑ ՊԱՏԱՐԱԳԻՆ

Ցայս յարկ նուիրանաց ուխտի Տեառըն տաճարիս․ ժողովեալքս աստանօր 'ի խորհուրդ պաշտաման պաղատանաց առաջակայ սուրբ պատարագիս․ խնկօք անուշիւք խումբ առեալ պարեմք 'ի վերնայարկ սրահըս խորանիս․ ուղղութեամբ ընկալ զաղօթս մեր որպէս բուրումն անուշահոտ խնկոց տաշխից եւ կինամոնաց․ և ըզ մատուցողս պահեա՛ սրբութեամբ միշտ եւ հանապազ քեզ սպասաւորել։ Բարեխօսութեամբ մօր քոյ և կու-

սի ընկալ զաղաչանս քոց պաշտօնէիցս։ Որ գե-
րագոյն քան զերկինս պայծառացուցեր սուրբ զե-
կեղեցի արեամբ քո Քրիստոս, եւ ըստ երկնայ-
նոցըն կարգեցեր 'ի սմա զդասս առաքելոց և մար-
գարէից սուրբ վարդապետաց. այսօր ժողովեալ
դասք քահանայից, սարկաւագաց, դպրաց եւ գըր-
ղերիկոսաց. խունկ մատուցանեմք առաջի քոյ Տէր
յօրինակ ըստ հընումըն Զաքարիայ. ընկալ առ
'ի մէնջ զխնկանուէր մաղթանս, որպէս զպատա-
րագն Աբէլի, զՆոյի և զԱբրահամու. բարեխօ-
սութեամբ վերին քո զօրացդ միշտ անշարժ պահ-
եա' զաթոռ Հայկազնեայս։

Զանապական կոյսըն Մարիամ աստուածածին
խոստովանի սուրբ եկեղեցի. ուստի տըւաւ հացն
անմահութեան եւ բաժակ մեզ ուրախարար.
տուք օրհնութիւնք նմա հոգեւոր երգով։

---

### Ժամամուտ

Աստուածածին զքեզ խոստովանեալ երկրպա-
գէ եկեղեցի ուղղափառաց. քանզի ուր քերովբէ-
քըն բազմաչեայք եւ աթոռք հրանիւթք եւ վեց-
թեւեան սերովբէքըն նայիլ ոչ իշխէին, կրեցեր
անսերմնապէս զանապականումն 'ի յարգանդի
քում որպէս զաղախին զՏէր, և ծնար որպէս ըզ
մարդ զԱստուածն բոլորից զմարմնացեալն առ 'ի
քէն զանճառ զբանն 'ի փրկութիւն աշխարհի, և
կեանք անձանց մերոց։

*Ճաշու*

Մեծացուսցէ անձն իմ զՏէր եւ ցնծասցէ հոգի իմ։

Գյ Սուրբ զաստուածածինն օրհնութեամբ մեծացուցանեմք։ Աւետաւոր հրեշտակն աւետարանէր ըղծըննեալ փրկիչն ՚ի սրբոյ կուսէն։ Ասէ ուրախ լեր բերկրեալդ․ քանզի տէր տերանց է ընդ քեզ։

Գիրք եւ ապա *Սաղմոս*։

*Ալէ․ Ալէ․ Այսօր ծնաւ որ ՚ի Հօրէ յառաջ քան զյաւիտեանս որդին, որ է օծեալ Տէր ՚ի քաղաքի Դաւթի, ՚ի վայելչութիւն խորհրդոց քոց յարդարեալ է յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ։*

Աւետարան *ապա* «Հաւատամք» *տես* էջ 76

*Սրբասացութիւն.* «*Բազմութիւնք*» Տես էջ 78

Տաղ

*Երկինք երկնից իմաց արարէք, եւ երկնայինք դուք խոնարհեցէք, ՚ի Բեթղեհէմ ՚ի յայրն ընթացէք․ զերկնից արքայն ՚ի մսրին տեսէք․ այ օր, այ օր, օր օր օր, օր օր օր, օր օր օր, իմ միածին որդեակ օր օր օր, իմ անդրանիկ Յիսուս օր օր օր։*

Չկնի վերջին աւետարանին Քարոզ. Եւ եւս խաղա:
Օրհնութիւն եւ փառք Հօր։

# ԿԱՆՈՆ

## Ը· ՄԿՐՏՈՒԹԵԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Ծար· Գձ· Լոյս 'ի լուսոյ 'ի Հօրէ առաքեցար և մարմնացար 'ի սուրբ կուսէն. զի վերստին նորոգեսցես զապականեալն Ադամ: Դու աստուած 'ի յերկրի երեւեցար եւ ընդ մարդկան շրջեցար, և փրկեցեր ըզ տիեզերս յանիծիցն ադամայ: Քեզ 'ի յերկնից վկայեաց Հօր քոյ ձայն, ասէ դա է իմ որդի. և սուրբ հոգին զքեզ յայտնեաց աղաւնակերպ երևմամբ:

Զքեզ որ հոգւով և հրով մաքրեցեր զմարդկան աղտեղութիւն, որպէս զաստուած և զփրկիչ ամենեքեան օրհնեսցուք: Փրկիչն երեւեցաւ և զաշխարհս մաքրեցոյց 'ի պատ-

րանայց թշնամւոյն, որդեգրութիւն շնորհելով 'ի ձեռն մկրտութեան ։ Ջրով կիզու զմեղս մեր այսօր երկեալ ապրեցուցիչն. և զովացուցանէ զաշխարհս աստուածային ջրովն ։

Զգլուխ վիշապին փրկիչըն ջախջախեաց 'ի յորդանան 'ի գետն, եւ ինքեան իշխանութեամբ զամենեսեան ապրեցոյց ։ Զհին մարդն նորոգելով փրկիչն 'ի մկրտութիւն գայ այսօր, զի զապականեալ զբնութիւնըս ջրով նորըս գործեսցէ. անապական զգեստ փոխարէն տալով մեզ ։ Մկրտի քրիստոս և սրբին ամենայն արարածք. և տայ մեզ թողութիւն մեղաց. ջրով և հոգւով վերասրբելով ըզմեզ։

Գիրք եւ ապա Սաղմոս ։

Ալէ՛ . ալէ՛ . Ուրախ լիցին երկինք և ցնծասցէ երկիր . զուարճասցի ծով լրիւ իւրով, տիեզերք և ամենայն որ 'ի նոսա ։

Աւետարան եւ ապա Աղօթք եւ յետոյ Քարոզ եղանակաւ ։

Ցամենայն ժա՛մ օրհնեմք զօրհնեալ փրկիչդ Էմմանուէլ, ծնար 'ի կուսէ, եւ վերըստին ծնըն-դեամբ մկրտեցար 'ի Յորդանան 'ի Յովհաննէ, նորի՛ն բարեխօսութեամբ ընկալ զաղաչանս քոց պաշտօնէից, աղաչեմք ։

Լուր Տէր եւ ողորմեա ։

Որ սրբեցե՛ր զջուրսն Յորդանանու սրբիչդ աշխարհի, տալով զկնիք նորոգման որդւոց Սիո-նի . տուր մաքրութի՛ւն սուրբ Եկեղեցւոյ և ազա-տութիւն քում ժողովրդեան . աղաչեմք ։

Հեղցես Տէ՛ր 'ի մեզ ըզշնորհս հոգւոյդ, զոր ընկալար տնօրէնութեամբ 'ի Յորդանան, զհոգի իմաստութեան, գիտութեան եւ զօրութեան, զհոգի հանճարոյ եւ խորհրդոյ աստուածպաշ-տութեան, լցո՛ զմեզ հոգւով երկիւղի քոյ . ա-ղաչեմք ։

Անո՛ւն կոչեցար իւղ թափեալ և իւղով հոգ-ւոյն օծեալ կնքեցար, և հայրական ձայնիւ յերկ-

նից սիրելի որդի Հօր վկայեցար, շնորհեա՛ յոր-
դեգրութիւն ծնելոցս ժամանել փառաց որդւոյդ
Աստուծոյ. աղաչեմք։

Նորագո՛րծ տաճար կազմեցեր զՅօրդանան
քան զարփին բարձրագոյն. որով ցուցար ստեղ-
ծիչ աշխարհի և ամենայն երկնից դերագոյն. ա-
րա՛ զմեզ լինել տաճար ամենասուրբ Երրորդու-
թեանդ. աղաչեմք։

Նիւթեղէ՛ն մարմնովդ առ 'ի մէնջ 'ի Յովհան-
նէ եղեր ձեռնադրեալ. և զձուլեալ մարմինդ
հրոյ աստուածութեանդ ջրով այսօր մխեցեր.
ամրացո՛ զմարմին քո սուրբ զեկեղեցի 'ի դրանց
դժոխոց լինել անվանելի. աղաչեմք։

'Ի փորձութի՛ւն մտեր յանապատին ընդդէմ
փորձողին. եւ մերով բնութեամբս յաղթեցեր
հակառակողին յերիս տեսակս մարտին. կարողացո՛
զհոգի, զմիտս և զմարմին լինել յաղթող 'ի փոր-
ձանս չարասիրին. աղաչեմք։

Սաւառնացեա՛լ հրեշտակք անմարմինք մատ-
եան պաշտել զքեզ յանապատին, որք են բանակք
Աստուծոյդ և բանակեալ շուրջ զաթոռովդ պա-
րէին, զնոսա տո՛ւր մեզ պահապան 'ի յելս եւ 'ի
մուտս ընդդէմ բանակաց խաւարին. աղաչեմք։

'Ի հաղբի՛ց Թշնամւոյն պարսպեալ ամրացո՛
սուրբ զեկեղեցի, եւ յանուն քո ժողովելոցս շը-
նորհեա՛ զքաւութիւն եւ զթողութիւն միածին
որդի Աստուծոյ, յիշեա՛ զհոգիս ննջեցելոց մերոց

եւ այց արա 'ի քում գալստեանդ. աղաչեմք:
Ցիշեա Տէր եւ ողորմեա:

Եւ եւս առաւե՛լ զ'յորդորումն սիրոյ և զգոր-
ծըս բարեաց պարգեւել մեզ խնդրեմք:
Տուր մեզ Տէր Աստուած:

Բամեա՛ զցրուեալսն 'ի մի միաբանութիւն
յուսոյ, հաւատոյ եւ սիրոյ, 'ի հնազանդութիւն
քոյոց աստուածայնոց պատուիրանաց, 'ի վայե-
լո՛ւմն երկնայնոց հայրականաց քոյոց օթեւանաց.
աղաչեմք:
Լուր Տէր եւ ողորմեա:

Գոչմա՛մբ Տիրուհւոյ իսկապէս Մօր քոյ և կու-
սի Մարիամու Աստուածածնի, և հուպ եղելոյ քեզ
հողանիւթ հրեշտակին 'ի Ցորդանան այսօր ըզ
քեզ ձեռնադրողին, կրկին բացողին զերկինս սըր-
բոյն Ստեփաննոսի նախավկային. եւ հօրն մերոյ
սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, եւ ամենա՛յն սըր-
բոց քոց Տէր որք յաւիտենից քեզ հաճոյացան.
աղաչեմք:
Տէր ողոր. Տէր ողոր: Ցիշեա Տէր եւ ողորմեա:

Երգ

Ո՜վ զարմանալի խորհուրդ այս մեծ յայտնեալ:
Արարիչն Աստուած 'ի Ցորդանան եկեալ.
Կամէր մկրտիլ 'ի ծառայէն իւրմէ,

*Զառնոյր կարապետն զմկրտելն 'ի յանձն.*
*Յորդանան լուեալ փախստական դառնայր,*
*Վըտակ առ վըտակ պատգամաւոր լինէր։*
*Գետ մի՛ զարհուրիր, քո արարիչն եմ ես.*
*Եկեալ մըկըրտիմ եւ լուանամ ըզ մեղս։*
*Յիսուսյառաջեաց Աստուածութեամբն 'ի ջուրն.*
*Հանդերձ Յովհաննու Յիսուս 'ի գետն եմուտ։*
*Երկինք պատառեալ ձայն 'ի յերկնից իջեալ,*
*Ձայն Հօր 'ի բարձանց Որդւոյն իւր վըկայեալ։*
*Սուրբ Հոգւոյն իջեալ աղաւնակերպ տեսլեամբ.*
*Յայտնեալ ցուցանէր Հօր փառակից զՈրդին։*

*Այսօր ձայնըն հայրական յերկնից իջեալ հաճոյական սիրեցելոյ որդւոյ վկայ. ա՛յ յորդորէ, գետ յորդորէ, գետ Յորդանան։ Աւետաւոր ձայնիւ երգէր մեծ կարապետն Յովհաննէս։*

Ապա *Աղօթք* եւ *Տեառնագր.* «Օրհնեսցի եւ սրբեսցի»։

Ապա

Շար. Դյ. Առաքելոյ աղաւնւոյ իջանելով մեծաձայն հնչմամբ 'ի բարձանց 'ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեաց անկիզելի զաշակերտսն. մինչդեռ նըստէին 'ի սուրբ վերնատանն։ Աննիւթական աղաւնի անքննելի որ քննէ ըզխորս

աստուծոյ, զոր առեալ 'ի հօրէ պատ-
մէ զահաւոր և զմիւսանգամ գա-
լուստ. զոր քարոզեցին համա-
գոյական: Օրհնութիւն 'ի բար-
ձունս, եղողին 'ի հօրէ հոգւոյն սըր-
բոյ, որով առաքեալքն արբեցան
անմահական բաժակին, և հը-
րաւիրեցին զերկիրս 'ի յերկինս:

Քրզ. Սբ. խաչիւ, Աղօթք Պահպանիչ

Եւ ապա Նախատօնակ

Ծոր. Ակ. Արեգականն արդարու-
թեան ծագման արուսեակդ առա-
ւօտեալ. նախընթաց ճանապարհի
որդւոյն աստուծոյ տնօրէնութեան
սուրբ յովհաննէս. առ քրիստոս
բարեխօսեա վասն անձանց մերոց:
Բարձրելոյն անճառ խորհրդոց տեսա-
նող իմաստիւք հոգւոյն. 'ի յորո-
վայնէ մաքրեալ տաճար աստուծոյ,

Եւ՛ բնակարա՛ն սուրբ երրո՛րդու-
թեանն. ա՛ռ քրիստոս:

Գաբրիէ՛լ հրեշտակապե՛տն առաք-
եա՛լ ա՛ռ զաքա՛րիա՛ս, աւետարանե՛լ
զհրաշա՛լի՛ ծը՛նո՛ւնդ քո՛ սուրբ յա՛-
մուլ ծերո՛յն եղիսա՛բե՛թէ. առ քր:

Դասապե՛տն երկնից զօրա՛ցն երեւ-
եա՛լ քա՛հանայա՛պե՛տին. յորժամ
մտանէ՛ր 'ի սրբութիւն սը՛րբո՛ցըն խըն-
կա՛րկե՛լով ը՛ստ օրինա՛ցն 'ի՛ տա՛ճա-
րին. ա՛ռ քրիստոս:

Եւ տեսեա՛լ զանհի՛ւթականն 'ի՛ ձեւ-
մայրմնո՛յ, յա՛ջմէ սե՛ղա՛նոյն, պա՛կուց-
եա՛լ յերկիւղ մա՛հո՛ւ սասա՛նե՛լով
և հաստատիւր բա՛նիւ հրե՛շտա՛կին.
առ քրիստոս:

Զգերագո՛յն քան զբնութիւն լուեա՛լ
զեղանա՛կ ծ՛նըն՛դեա՛նը՛ն քոյ, սոս-
կա՛ցեալ հի՛անա՛յր զա՛քա՛րի՛աս եւ
համրա՛ցեալ պատժի՛ւր պա՛պանձեա՛լ
լե՛զուաւ. առ քրիստոս:

Էակից բանն 'ի հօրէ իջեալ յերկ-
նից զկընի ձայնիդ, ուստի գաբրիէլ
վերառաքէր զկոյսըն մարիամ առ
ամլութեամբ յղացեալն ըզքեզ յո-
րովայնի · առ քրիստոս ։

Ընդ ժամանել ձայնի ողջունին մա-
րիամու առ եղիսաբեթ, խայտացեր
ձայնդ ընդառաջ բանին աստուծոյ
յորովայնէ ամլոյն երկրպագելով ·
առ քրիստոս բար ։

Թագաւորըն բոլորից պարածածկեալ
յարգանդի կուսին · զոր ծառայդ
հաւատարիմ տեսեալ հոգւովըն
սրբով և բերանով մօր քոյ օրհնա-
բանէիր · առ քրիստոս ։

Ժառանգաւոր հին օրինացն արդա-
րութեան ընդ մարգարէիցն · եւ
նախաշաւիղ հետեւողաց անձուկ
ճանապարհին նոր օրինացս ընդ
առաքելոցն · առ քրիստոս ։

Ի յանապատի հրեշտակական վարուք
բնակեցար ըստ եղիայի, կերակրե-
լով մարախ և մեղր վայրենի.
հին և նոր պատուիրանաց օրինա-
կաւ. առ. քրիստոս բարե։
Լուսապայծառ շնորհօք հոգւոյն զար-
դարեալ ըստ ներքին մարդոյն.
իսկ արտաքուստ անմաքրական ստե-
ւովըն ծածկեալ ըստ տխրագոյն
զգեստու նախահօրն. առ. քրիստ։
Խորհրդով մաքրագունիւ արդարա-
պէս արիացեալ. ՚ի յօրինակ մեռե-
լութեան զօտի մաշկեղէն ընդ մէջ
ածեալ քո երևեցար. առ. քրիս։
Ծնընդեան հոգւոյն սրբոյ զորս յա-
դամայ յորդիս աստուծոյ, ՚ի քէն
սկիզբն և օրինակ եղեալ ՚ի յոր-
դանան մկրտութեամբն յապաշխա-
րութիւն. առ. քրիստոս։
Կարապետ թագաւորին երկնաւորի

առաքեցար, պատրաստել զճանա-
պարհս նորա յոգիս մարդկան ընդ
եսայեայ քարոզելոյն. առ քրիս։
Հուր կիզանող զմեղս մարդկան գու-
շակեցեր զառաջին գալուստն
տեառն. իսկ դատողական հեծանո-
ցաւ մաքրել զկալ աշխարհի ըզմիւ-
սանգամ գալստեան խորհուրդն. առ
քրիստոս բարեխօսեա։
Ձայն բարբառոյ յանապատէ զքեզ
անուանեաց Եսայիաս. եւ հրեշտակ
տեառն առաջի առաքելով ծանոյց
հոգւովըն մաղաքիաս. առ քրիստ։
Ղեւտական քահանայութեանն յահա-
րոնէ 'ի քեզ կատարումն. և ճըշ-
մարիտ քահանայութեանն որ 'ի քը-
րիստոսէ 'ի քէն սկիզբն հաստա-
տութեան. առ քրիստոս։
Ճրագ. օրինացըն մովսիսի լուսատու-
տանն իսրայելի. եւ իմանալի արե-

գամկանն յառաջընթաց առ 'ի յեր-
կիր ծագմանն 'ի կուսէն. առ քրիս:
Մկրտել զբոլորից աստուածն առ
քեզ եկեալ հրաժարէիր, տեսանե-
լով զգերապայծառ լոյս աստուա-
ծութեանն ընդ հողեղէն բնութեան-
նըս պարունակեալ. առ քրիստոս:
Յորժամ էջ 'ի յորդանան հուրն
աստուած 'ի քէն մըկըրտիլ, վերնա-
կան իշխանութիւնքըն զահի հար-
եալ զարմանային նորահրաշ տես-
լեամբն. առ քրիստոս:
Նոր Հեղիաս նախ գալստեանն քա-
րոզ ըստ հընոյն որ 'ի յերկրորդին.
արժանի եղեր լսել հայրական ձայ-
նին ըզմիածնէն դա է որդի իմ սի-
րելի. առ քրիստոս:
Շնորհատուն արարածոց որ 'ի հօրէ
հոգին ճըշմարիտ, աղաւնակերպ
տեսլեամբ քեզ երևեցաւ զաստ-

ուածութիւն իւր էակցին յայտ-
նեալ աշխարհի· առ Քրիստոս։

Որ ըզխրացս անճառելի տնօրէնու-
թեանցն Քրիստոսի ոչ լուծանէ իր·
գհամագոյ երրորդութեանն անձնա-
ւորութիւն տեսանել ՚ի յորդանան
արժանի եղեր· առ Քրիստոս։

Զոր իշխանքն խաւարի յաշխարհա-
կան մեղաց ծովէս, հալածեցաւ
ջրովքն յորդանանու· մկրտեալն ՚ի
քէն զգլուխ վիշապին ՚ի նմա խոր-
տակեաց· առ Քրիստոս։

Պարագլուխ մարգարէիցն օրինադրէր
զգառն օրինակին· իսկ դու ըզճշմա-
րիտ օծեալն ըզՔրիստոս անուանե-
ցեր գառն աստուծոյ և բարձող մե-
ղաց· առ Քրիստոս։

Ջուր մաքրութեան ՚ի քէն մկրտե-
լոցն յարբուցմն իմաստից, ապստամ-
բացն յերկիւղ հատմամբ տապարին

և խոնարհացն ՚ի խորատ իմաստու-
թեան. առ քրիստոս:

Ուսահ լուսոյ արդարութեան եղեր
անձուկ ճանապարհաւն. առաջնոր-
դեցեր որդւոց մարդկան երանել
յերկինս անմարմնական վարուց քոց
օրինակաւ. առ քրիստոս:

Միրոյ անմահ և երկնաւոր սուրբ
փեսային ի՚ կեղեցւոյ, փեսաւեր եւ
հրաւիրակ առաքեցար հարսին որդ-
ւոյ թագաւորին. առ քրիստոս:

Վարդապետին տիեզերաց ստանդե-
ցեր զքո աշակերտեալսն, եւ ըզլոյս
գիշերային ճրագի քոյ բանի հա-
մապայծառ արեգականն աւետա-
րանի. առ քրիստոս:

Տիրական սուրբ օրինացն եղեր քա-
րոզ առ օրնազանցսն. որով մատ-
նեալ բանտից և կապանաց մոլեգ-
նութեամբքն հերովդիայ. առ քրիս:

Բաժեալ խնճոյս արբեցութեան յա-
ւուր ծնընդեան մահաբերին· զքեզ
որ խայտալով ծնար տաճարակդ ա-
նապատի կոքաւելով խնդրեաց 'ի
մահ դուստր հերովդիադայ· առ։
Ցնծութեան աւետաբեր եղեր հոգ-
ւոյն որք 'ի դըժոխս· կարապետս կըր-
կին իջման տեառն 'ի ստորին կողմն
երկրի, որով լուծան երկունքն մա-
հու· առ քրիստոս։
Իսկական մարմնով յերկրի յաշա-
կերտաց քոց պարածածկեալ· և
աննիւթական հոգւով ընդ քրիստոսի
յարքայութիւնն երկնից վերափո-
խեցար· առ քրիստոս։
Փութացիր մեզ յօգնութիւն առ 'ի
վերուստ սուրբ յովհաննէս· առաք-
եալ և մարգարէ և կարապետ եւ
մկրտիչ որդւոյն աստուծոյ· առ։
Քահանայապետին քրիստոսի որ 'ի

խաչին պատարագեալ. քահանայդ
ինքնանըւէր մատո զպաղատանս եր-
գաբանիս և տօնողացս շնորհել զքա-
ւութիւն. առ քրիստոս։

Եւ Եւս խախաղութեան։ Օրհնութիւն

Հարց. Դյ. Որ աւետաւոր քում գա-
լըստեանդ առաքեցեր զհրեշտակա-
պետըն գաբրիէլ, աւետարանել զա-
քարիայ զաւետաւոր ծնունդ յառաջ-
ընթաց կարապետին քո յովհան-
նու, աղաչանօք սորա կեցո զմեզ
տէր աստուած հարցըն մերոց։ Որ
յարգանդին լցեալ հոգւով երկրը-
պագեաց քեզ յորովայն սրբոյ կու-
սին. զոր եսայիաս վերակոչեաց
ձայն բարբառոյ յանապատէ որ պատ-
րաստեաց զեկեղեցի հարսըն մա-
քուր սուրբ փեսային. աղաչանօք
սորա կեցո։ Որ բացեղէն հոյլք քը-

րովբէիցն ոչ իշխէին հայիլ 'ի փառս աստուածութեանդ. սա հողանիութեամբ գոլով բնութեամբ մկրտեաց զքեզ մարմնով 'ի ջուրսըն Յորդանանու. աղաչանօք սորա կեցո:

է. Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան:

Որ աւետաբեր գալըստեան բանին առաքեցաւ ձայնին յանապատէ, ըզտէր օրհնեցէք: Որ սրբութեանց սուրբ կուսածին որդին 'ի յամըրդւոյն հայցէր մաքրիլ յորդանանու. զտէր օրհնեցէք: Որ զծածկեալ խորհուրդ սուրբ Երրորդութեանն, կարապետին յայտնեալ Հոգին աղաւնակերպ իջմամբ. զտէր օրհնեցէք:

Մեծ. Առաւօտ խաղաղութեան եւ արուսեակ զըւարթարար այսօր Մարիամ սըրբուհին, 'ի փառըս քո Քըրիստոս ծագեաց մեզ լոյս յորդւոցն

օրհնաց. անդադար երգով սոքօք ըզքեզ միշտ մեծացուցանեմք։ Դրախտ աստուածային և արեւելք ի մանանայի այսօր մարիամ հրաշագեղ, ծնեալ 'ի յաննայէ 'ի մայրութիւն քո հրաւիրեալ քրիստոս որդի աստուծոյ. անդադ։ Տապանակ ապրեցուցիչ եւ տաղաւար երկրահամեան աստուածընկալ այսօր մարիամ լուսապայծառ, միածին ծընունդ յայտնեալ ծնողաց, 'ի ծնողութիւն քո կոչեցեալ միածին որդի աստուծոյ. [անդադար։

Ու. Երկնաւոր փեսայ անստուեր լոյս ի մանանայի, որ 'ի յերկնից իջեր 'ի սէր հարսին քո եկեղեցւոյ, զոր խօսեցաւ քեզ բարեկամն և փեսաւէրըն քո յովհաննէս, որին մաղթանօք ողորմեա։ Քառակերպին անհաս եւ անտես 'ի սերովբէից.

սրբութեանց սուրբ եւ տէր բոլո-
րից խոնարհեցար 'ի յորդանան,
հայցելով 'ի ծառայէն մաքրութիւն
ջրոյ 'ի լուանալ զմեղս ադամայ, սո-
րին մաղթանօք ողորմեա։ Որ յամ-
լորդւոյն վկայեցար գառն աստուծոյ
բարձող մեղաց, զոր գերագոյն ար-
դարոց ծանուցեր մեծ 'ի ծննդըս
կանանց և ճրագ օրինացն, որ
և 'ի դժոխս զփրկական գալուստն քո
քարոզեաց. սորին մաղ։

Տէր Այսօր ցնծան հրեշտակք 'ի
յերկինս. յիշատակաւ հողանիւթ հը-
րեշտակին, որք համադասեալք ձայ-
նիւն բարբառոյ երգեն զօրհ-
նութիւնըս հօր 'ի բարձունս։ Այս-
օր ցնծան հոգիք արդարոց նահա-
պետաց և մարգարէից, ձայնակից
լինել մեծին 'ի ծննդըս կանանց.
Երգեն զօրհնութիւնս որդւոյն մի-

անձնի՛ : Ա՛յսօր ցնծան դասք ա՛ռա-
քելոցն, տօ՛նախմբելով զյիշատակ
մեծի՛ մկրտչի՛ն. որ առաքելո՛ցն է
սկի՛զբըն և մարգարէ՛ից լը՛րո՟ւմն, ընդ-
նոսին եւ մե՛ք բղխեցելո՛յն 'ի հօրէ՞
Երգե՟մք զփառս 'ի՛ բարձո՛ւնս :

Մկ. Դկ. Մարգարէ՛ի՛ց գե՞րագոյն և՛
մեծ 'ի ծնո՛ւնդըս կանանց. ո՛ր ըզտնօ՛րէ-
նութիւն աստուա՛ծորդւոյն 'ի յա՛ր-
գանդի ծանեար հոգւո՟վն. ա՛ղաչեա՟
զա՛ստըւած վասն մանկանց ե՛կե՞ղեցւո՛յ :
Յորովայնէ՛ յո՞րովայն ե՛րկրպագո՛ղ քը-
րիստոսի. ո՛ր ըզհո՟ւրն աստը՛ւած մե-
րով ընութեամբ մկը՛րտեցեր 'ի յոր-
դանան. աղաչեա : Կատա՛րո՛ւմն օ՞րի-
նաց և՛ նախասկի՛զբըն շնորհայ. ո՛ր
հոգւո՟ցն 'ի դժոխս քարո՛զեցեր ըզ-
փ՛րկութի՛ւն գալստեա՛մբըն քրիստո-
սի. ա՛ղաչեա :

**Մաղթանք.** Քրիստոս Աստուած մեր վասն սուրբ
Խաչի քո պատուականի.

ԺԱՄԱՄՈՒՏ Բ. Ե. ԵՒ Ը. ԱՒՈՒՐ Ս. ԾՆՆԴԵԱՆ

Աղաչեմք զքեզ Սուրբ կոյս Մարիամ Աստուածածին, բարձրելոյն զօրութեամբն հովանաւորեալ եւ Սուրբ Հոգւոյն եկաւորութեամբն լուսաւորեալ. որ զամենայն գոյութեանց ըստեղծիչն յղացեալ ծնար անճառապէս, մարմնացելոյն առ 'ի քէն բարեխօսեա՛ կեցուցանել զանձինս մեր։

ԺԱՄԱՄՈՒՏ Գ. ԵՒ Զ. ԱՒՈՒՐ ԾՆՆԴԵԱՆ

Աստուածածին արհարսն. տես յէջ 75

ԺԱՄԱՄՈՒՏ Դ. ԵՒ Է. ԱՒՈՒՐ ԾՆՆԴԵԱՆ

Աստուածածին զքեզ խոս։ տես յէջ. 100

---

ՃԱՇՈՒ ՇԱՐԱԿԱՆ Բ. ԱՒՈՒՐ ԾՆՆԴԵԱՆ

Մեծ. Գկ. Ամենագովելի և քան զերկինըս բարձրագոյն. որ զանհասանելի ըզտէրըն յորովայնի քում կրեցեր. եւ ցնծութիւն աշխարհի ծընար. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք։ Ամենապայծառ բերկրեալ միշտ կոյս, որ զանբաւելի ըզբանն անճառաբար յըղացար. եւ ըզմարմնացեալն աստուած ծընանե֊

լով ՚ի քէն. փառս։ Ի լեռնէ վէմ առանց ձեռին հատեալ դանիէլ դուշակեաց զանսերմն ըղծընունդ քո հայրսն երկնաւոր. մայր և յետ ծնըն-դեան մնայով կոյս. փառս որդ։

ՃԱՇՈՒ Գ. ԱՒՈՒՐ

Մեծ. Գյ. Անըսկըզբնական բանին հօր բընակարան, տաճար և առա-գաստ, տեղի անտանելի լուսոյն. ըզքեզ մեծացուցանեմք արժա-նապէս երգով աստուածամայր եւ կոյս։ Յորմէ կենդանաստեղծեալք յանէզէն հաստեցան ամենայն ե-ղանակս, անսերմնապէս տղայա-ցաւ յորովայնի քում. և ծընաւ առ ՚ի քէն մարմնացեալ աստուածըն բոլորից. զքեզ մե։ Յորմէ զարհուր-եալ դողային դասք վերին զըւարթ-նոցն, տղայապէս առընկալեալ բար-

ձեր 'ի գիրկս, և մրրկուցեր որպէս մայր ըստացողին ըղքեղ ըղկուսական քո սուրբ ըղկալթն. գքեղ:

### ՃԱՇՈՒ Դ. ԱՒՈՒՐ

Մեծ. Բյ. Ըղքեղ կոյս և մայր և բընակարան աստուածային ներմարդութեան, գոհաբանեմք և վերօրհնեմք զեղեալ փրրկող կենդանութեան ազգի մարդկան. վասն որոյ ըղքեղ աստուածածին և կոյս բարեբանեմք ըղմայր եւ զաղախին փրրկչին մերոյ: Ծընունդըն հօր եւ հին աւուրց անժամանակն յաւիտենից. ժամանակաւ յորովայնէ քում բնակեցաւ և 'ի հօրէ ոչ մեկնեցաւ. վասն որոյ: Ծընեալն 'ի քէն 'ի խաչ ելեալ, և 'ի յաթոռ փառաց ընդ հօր, անարգեալ 'ի մարդկանէ, փառաւորութեամբ էութեամբ երկրրպագեալ. վասն: Ըղ-

քեզ ոչ միայն որդիք մարդկան այլ և վերին զօրութիւնք, դասք անմարմնոց հոգեղինաց հրեղինաց զուարթնոց և հրեշտակաց. զոր հաւանեն և վերօրհնեն և փառաւորեն ըզմայր և զաղախին փրկչին մերոյ:

## ՃԱՇՈՒ Ե. ԱՒՈՒՐ

Մեծ. Բյ. Անթառամ ծաղիկ, անդատապարտ շառաւիղ վերաբուսեալ յարմատոյն յեսեայ. զքեզ եսայիաս կանխաւ վերագոչեաց եօթնափեան շնորհաց հոգւոյն ընդունարան զոլ. աստուածածին և կոյս զքեզ մեծացուցանեմք: Համեղ ճաշակ պտղոյն բանաւոր բարունակ, յորմէ կթեցաւ մեզ ողկոյզն անըսպառ յուրախութիւն տըրտմեցելոցն ի ճաշակմանէ ծառոյն գիտութեան. սըրբուհի

անարատ ամենեքեան զքեզ մեծ։ Քաղաքավարեալ ի մարմնի անա-րատ վարուք. այսօր յառաջելոցն ամ-փոփեալ վերին ա կնարկութեամբըն վերափոխեցար յարքայութիւն որդ-ւոյ քո եւ աստուծոյ մերոյ. բարե-խօս խոստովանողացս զքեզ մեծ։

ՃԱՇՈՒ Զ. ԱՒՈՒՐ

Մեծ. Բյ. Զքեզ հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբանեն դասք ան-մարմնոց հրեշտակաց, ձայնիւ եր-գով գոչեն եւ աղաղակեն. աստ-ուած աստուծոց եւ տէր տէրանց փրկիչ գոլով։ Առաքեցեր զքո մի-ածինըդ մարմնանալ ի սուրբ կուսէն, եւ անարատ ծընանիլ յորովայնէ անապական. բառնալով ըզմեր նե-ղութիւնս. աստուած աստու։ Շնորհեք բարի յերուսաղէմ երեւեցաւ հեթա-

նոսաց· զի արարիչն յաւիտենից տը-
ղայ եղեալ յորդեգրութիւն կենաց
կոչէ· աստուած ասաու։

ՃԱՇՈՒ Է. ԱՒՈՒՐ

Մեծ. Բկ. Սիւն լուսոյ և ամպ հովա-
նի սուրբ կոյս, որ ցօղեցեր 'ի մեզ
ըզցօղն երկնային. զքեզ բարեբա-
նեմք աստուածածին կոյս։ Անկեզ
մորենի և որովբէ հողեղէն սուրբ
կոյս, քանզի պըտուղըն կենաց 'ի քէն
տուաւ մեզ· զքեզ բա։ Անիծից լու-
ծիչ եւ բաւիչ մեղաց սուրբ կոյս· որ
զանտանելին յէից 'ի գիրկըս քո բար-
ձեր· զքեզ։

ՃԱՇՈՒ Ը. ԱՒՈՒՐ

Մեծ. Այ. Անըսկիզբըն աստուած բա-
նըդ որ 'ի հօրէ առաքեցար, ընդ
ժամանակաւ լինել հաճեցար եւ

մարմնացար 'ի սուրբ կուսէն վասըն
մերոյ փրկութեան. այսօր մը-
կըրտիլ 'ի յորդանան 'ի յովհաննէ,
բառնալով զյանցանս առաջին
նախաստեղծ մարդոյն: Անեղանե-
լիդ աստուած բանդ անմեկնելիդ 'ի
հօրէ. ընդ ժամանակս լինիլ հա-
ճեցար և մարմնացար 'ի սուրբ կու-
սէն, աստուած և մարդ յայտնեալ
այսօր մը: Զորեքկերպեան կենդան-
եացն ըզխորհուրդ քերոբէից ամ-
րոդին. տեսանելով սուրբ զհոգին
աղաւնակերպ իջման մբ 'ի վերայ ջուր-
ցըն, աղաղակէր ասելով. ահա
գառն աստուծոյ որ 'ի հօրէ մըկա-
յեցաւ. դա է որդի իմ սիրելի, ընդ
որում ես հաճեցայ:

## Ալէլուիայք ծառու Ծննդեան ըստ աւուրց

*Բ, Աւր. Հոգւով Սրբով զօրացեալ սուրբ Ստեփաննոս, եւ ընտրեալ յորովայնէ, ճշմարիտ վկայ, սիրող եւ առաքեալ առաքողին, 'ի Քրիստոսէ ընկալար զզուարթնոցն զպսակ։*

*Գ. Աւր. Կարապետն Յովհաննէս զարհուրեալ՝ 'ի յորովայնէ յորովայն երկրպագէր. սպասաւոր եղեւ Բանին Աստուծոյ, եւ լուեալ զահաւոր զձայնն՝ աղաղակէր ասելով՝ Ահա՛ Գառն Աստուծոյ որ բառնայ զմեղս աշխարհի։*

*Դ. Աւր. Ուրախ լեր բերկրեալդ, Տէր ընդ քեզ. օրհնեալ ես դու 'ի կանայս, եւ օրհնեալ է պտուղ որովայնի քո։*

*Ե. Աւր. Դու մանուկ մարգարէ բարձրելոյն կոչեսցիր. գնասցես առաջի Տեառն պատրաստել զճանապարհս Նորա։*

*Զ. Աւր. Եհան զիս 'ի գբոյ տառապանաց, 'ի կաւոյ եւ 'ի տղմոյ։ Հաստատեաց 'ի վերայ վիմի զոտս իմ եւ ուղղեաց զգնացս իմ։*

*Կամ Դու ես քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի, եւ Տէր ընդ աջմէ քումմէ։*

*Է. Աւր. Երդուաւ Տէր Դաւթի ճշմարտութեամբ եւ ո՛չ ստեաց նմա. 'ի պտղոյ որովայնի Նորա նստուցանել յաթոռ Նորա։*

*Ը. Աւր. Ուրախ լեր բերկրեալդ.* (որպէս 'ի վերոյ)

---

## Սրբասացութիւն յաւուրս Ծննդեան. «Բազմութիւնք»։

# ԿԱՆՈՆ

## ՏԵԱՌՆԸՆԴԱՌԱՋԻ ՆԱԽՈՐԴ ԵՐԵԿՈՅԻ

*Խոնարհեցո։ Ավրեցո։*

Ալէլուիա. Ալէլուիա։

Լոյս զուարթ սուրբ փառաց մեծի Հօր երկնաւորի սրբոյ կենարարի յիսուս քրիստոս։ Եկեալքս 'ի մտանել արեգական, տեսաք զլոյս երեկոյին։ Օրհնեմք զհայր և զորդի և զսուրբ հոգին աստուծոյ։ Եւ ամենեքեան ասեմք ամէն։ Արժանաւորեա զմեզ յամենայն ժամ, օրհնել ձայնիւ երգով զանուն փառաց ամենասուրբ երրորդութեանդ։ Որ տաս զկենդանութիւն վասն որոյ և աշխարհս զքեզ փառաւորէ։

*Մեսեդի։ «Օրհնեալ եկեալ։ Տէր Աստուած մեր։» Քարոզ «Ասասցուք»։ Սուրբ Աստուած, որ եկիր եւ գալոց ես։*

Հմք. ալ. Մարմնացեալդ 'ի կուսէն նախամայութեան բանդ, այսօր 'ի տա-ճարն եկիր կատարել զօրէնս, վասն փրկութեան հեթանոսաց։ Որ յան-արուեստ աթոռնըստիս բարեբան-եալդ 'ի հրեշտակաց այսօր 'ի սիմէ-ոնի բառնալոյ 'ի գիրկս. որ ընծա-յեցես զմեզ 'ի կեանսըդ յաւիտե-նից։ Որ արձակիչդ ես կապելոց պար-գեւատու ամենեցուն. այսօր հայց-մամբ ծերունոյն արձակեա և զիս զբազմամեղս 'ի կապանաց մահու 'ի կեանսըդ յաւիտենից։

Զկնի՝ Նախատօնակ

Աձ. Դդ. Այսօր անըսկզբնական ծը-նունդ հայրական ծոցոյ. բանն եկա-ւորեալ 'ի տաճարն ընծայէ զարա-րածս հօր 'ի յերկինս։ Այսօր բարձ-եալ եղեւ 'ի գիրկըս ծերունոյն, որ բանիւ զարարածըս բարձեալ ունի

օրհնաբանեսցուք ։ Այսօր և մեք հա-
ւատացեալքս ընդ ծերունւոյն սի-
մէօնի, ըզբանն համագոյ հօր և
սուրբ հոգւոյն օրհնաբանեսցուք ։
Այսօր ՚ի տաճարն եկեալ կենարարն
և ՚ի գիրկսըն սիմէօնի գգուեցաւ.
զոր խնդութեամբ ընկալաւ Երուսա-
ղէմ։ Այսօր երկիրս երկինք անուա-
նեցաւ. զի տէրըն տէրանց իջեալ
յերկնից ՚ի յերկիր. և ընծայիլ յանձն
առնու ՚ի գործոց ձեռաց իւրոց։ Այ-
սօր հեթանոսաց լոյս ծագեցաւ քրիս-
տոս աստուած, և փառք իւրում
ժողովրդեանն իսրայէլի։

Հրց. Դց. Օրհնեմք ըզքեզ որ առա-
քեցար ՚ի հօրէ, անճառելի բանդ
աստուած յանձն առեր մարմնանալ
՚ի սուրբ կուսէն. աստուած հարցըն
մերոց։ Այսօր եկիր ՚ի տաճարն ան-
հասանելի փըրկիչ. և ՚ի գիրկսըն սի-

մէօնի գգուեցար․ աստուած ։ Ուս-
տի և սիմէօն հոգեւոր հնչմամբ ա-
ղաղակէր․ արդ արձակես ըզծառայս
քո տէր ըստ բանի քում 'ի խաղա-
ղութին․ աստուած ։

է․ Ըզտէր օրհնեցէք և բարձր
արարէք ըզնա յաւիտեան ։ Օրհ-
նեցէք ։ Ըզծնեալն յամենասուրբ
յորովայնէ յանարատ 'ի կուսէն
օրհնե ։ Օրհնեսցէ ։ Զեկեալն այ-
սօր 'ի տաճարն, զընկալեալն 'ի գիրկ-
սըն սիմէօնի․ օրհնե ։

Մեծ․ Այժմու քրովբէական երեւ-
եալ այսօր սիմէօն․ զաստուածորդին
'ի գիրկս իւր բարձեալ մարմնով․ զոր
զօրք երկնից 'ի բարձունս հանապազ
մեծացուցանեն ։ Հոգւովըն գոչէր
ցընծայր ալեօքըն ծերունին ասելով․
սա է թագաւորն անմահ, զոր զօր։
Արտասուելով աղերսէր, արձակեա

զիս ՚ի խաղաղութիւն, անարատ ծն-
նողի քոյ բարեխօսութեամբ. զոր ։

Ու. Որոյ առեալ հրաման ՚ի սուրբ
հոգւոյն, ոչ տեսանել ըզմահ մին-
չեւ տեսցէ զօծեալդ, տէր աղօ-
թիւք ծերոյն ողորմեա ։ Որոյ ընկալ-
եալ ՚ի գիրկս իւր զօծեալդ, և հայ-
ցէր ՚ի կենացդ ըզմահ. և արձակիլ
ի խաղաղութիւն. տէր ։ Յորոյ այսօր
՚ի գիրկսըն գգուեցար. և կատարե-
ցեր զփափաքումն ընծայելոյ քոյ ՚ի
տաճարին. տէր աղօթիւք ծերոյն ող։

Տէր. Զոր փառաբանեն ՚ի բար-
ձունս իմանալի զօրութիւնքն այսօր
՚ի տաճարն եկիր յընծայումըն քրիս-
տոս, որ ընծայես զարարածս բարձ-
րելոյ քում հօր ։ Ի գիրկըս մարմ-
նով բարձեալ եղեր ՚ի ծերունւոյն,
որ բանիւ զարարածս բարձեալ ու-
նիս քրիստոս, որ վասն մեր մարմնա-

ցա՜՛ր ՚ի սրբոյ կուսէ՛ն ։ Վասն որոյ
և մեք ընդ սիմէօնի գոչեսցուք, որ
՚ի հօրէ լուսոյ լոյս ծագեցար մեզ
և կեանք. փառք գալստեան
քո՛ յ տէր ։

Գիրք եւ ապա Սաղմոս

*Ալէ՛՛։ Ալէ՛՛։ Օրհնեալ որ գալոց ես յանուն Տեառն*
*և օրհնեցաք զքեզ ՚ի տանէ Տեառն ։*

Աւետարան՝ ապա Անդաստան

*Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։ Վասն ՚ի վերուստ խաղաղութեան և փրկութեան անձանց մերոց զՏէր աղաչեսցուք ։ Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի՚ ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ ։*

Յետ Անդաստանին՝ Տաղ

■ *Քրիստոս փառաց թագաւորն, այսօր եկեալ յընծայումն. կատարելով նա զօրէնս քառասնօրեայ գալստեամբն ։ Զոր մարգարէն Եսայի յառաջագոյն գուշակեաց, յերուսաղէմ քաղաքի Սիմէօնի ծերունւոյն ։*

*Ի գիրկս առեալ ծերունին զԱստուածորդին և ասէ.*

Մեծ աւետիս է այսօր Նահապետաց ամենից.
Մեծ աւետիս է այսօր Մարգարէից ամենից.
Մեծ աւետիս է այսօր Առաքելոց ամենից.
Մեծ աւետիս է այսօր Քահանայից ամենից.
Մեծ աւետիս է այսօր Ժողովրդոց ամենից։
Այլ մեծագոյն աւետիս Քրիստոնէիցս համայնից։
Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։

# ԿԱՆՈՆ

## ՏԵԱՌՆԸՆԴԱՌԱՋԻ ԱՌԱՒՕՏՈՒ

Տէր զի բազում իւր սարօքն, Տես երես 1—50
Հետեւակ չար. (Մարմնացեալդ.) Տես երես 131
Օրհնութիւն. (Այսօր անըսկզբ.) Տես եր, 131
Քարոզ, ըստ ձայնի աւուրն, Տես եր. 52

Ալէ. ալէ. ալէ։ Օրհնեա՛լ եկեալ յանուն Տեառն. օրհնեալ որ գա՞լոց ես։ Տէ՛ր Աստուած մեր երեւեցաւ մեզ. արարէք տօնս ուրախութեան կանխաւ մինչեւ յանկիւնս սե՞ղանո՛յ։

Ալէ. Տէ՛ր 'ի տաճար սուրբ իւրում. տէր յերկինս յաթո՞ռ իւրո՛ւմ։

Ա՛չք Նորա 'ի տնանկս հային, արտեւանունք Նորա քննեն զորդի՞ս մարդկա՛ն։

Փառք և եր։ Այժմ և միշտ։

*Նախ քան զՀարցն՝ Տարական*
*Մարմնացեալդ 'ի կուսէն ։ Տես երես* 131

Ուրախ լեր յոյժ դուստր սիօնի պայծառացիր երուսաղէմ, զարդարեա զդրունս քո քաղաքդ աստուծոյ ։ Քանզի քրիստոս որ էնն 'ի յաթոռ փառաց այսօր մտանէ 'ի քեզ նստեալ 'ի վերայ յաւանակի նորոյ ։ Ծերք եւ տղայք ոստովք ձիթենեօք միաբանութեամբ երգէին . օրհնութիւն որդւոյ դաւթի օրհնեալ եկեալ անուամբ տեառն ։

Պատկերակից եղեր հողեղէն բնութեանս տնօրինեցար յարգանդի կուսին բանդ աստուած . ընդ մեզ վերանորոգել պատկեր ։ Մերկացեալ 'ի Ճաշակմանէ նախաստեղծին ընդ փառս . միւսանգամ վերստին շնորհելով ընդ մեզ վերանորոգել 'ի փառս ։ Մը-

կըրտեալ ՚ի յորդանան ՚ի յովհաննէ,
աստուածային բնութեամբ մարմնովն
զոր ՚ի մէնջն էառ. ըզմեզ լուսա-
ւորելով աստուածային ծագմամբն :

Որթի. Աւետարան

դձ. Այսօր անսկզբնական. Տես երես 131
Այսօր ՚ի տաճարն եկ. Տես երես 132
Որթի. Աւետարան :
դձ. Լոյս ՚ի լուսոյ ՚ի հօրէ. Տես երես 102
Զքեզ որ հոգւով և. Տես երես 102

Որթի. Աւետարան։

Դկ Այսօր ՚ի տաճարն եկիր փըր-
կիչ. և ծերունոյն ՚ի գիրկս ընկա-
լեալ մնէր. արդ արձակես ըզծառայս
քո տէր : Այսօր աշխարհի ցուցար
լոյս, և փրկութիւն տիեզերաց քրիս-
տոս աստուած. որ մարդասէր ես
կեցո զմեզ : Այսօր իմանալի արե-
գակն, որ ծագեցար տիեզերաց
քրիստոս աստուած, որ մարդա :
Ի սկըզբանէ բանն աստուած մարմ-

Նացաւ 'ի կուսէն, այսօր զգուեցաւ 'ի տաճարին: Խայտայր ալեօքըն ծերունին աստուածորդւոյն 'ի գիրկս իւր, և օրհնէր զաստըւած ամենով: Արդ արձակես զծառայս քո տէր ըստ բանի քում 'ի խաղաղութիւն, զի տեսին աչք իմ ըզփրկողդ աստըւած:

Որթի. Աւետարան: Ապա Շարական

Բկ. Ի գալստեան տեառըն դրունք երկնից բանին. եւ ճառագայթիւք անճառ լուսով սուրբ խաչն երեւի: Յերեսաց տեառըն լերինք հալին, և 'ի յահէ փառաց նորա շարժին զօրութիւնք: Աւետեօք տեառըն մեռեալըք յառնեն. և սուրբք ամենայն անճառ փառօք զարդարին:

---

Ապա Հարց. Օրհնեմք զքեզ": իւր սարօքն:
Տես երես 132:

Առաւօտու երգ. Արեգակն արդա", Տես երես 93:

Քարոզ. Մայր սուրբ սքանչելի": Տես երես 94:

Սուրբ Աստուած, որ եկիր և գալոց ես":
Գիրք և աւետարան նախորդ երեկոյեան:
Երգ արարչութեան, ըստ աւուր պատշաճի: Տես եր 62
կեցո

---

'ի Պատարագին:

Ժամ. Տերունին այսօր Սիմէօն՝ հոգւովն գայր 'ի տաճարն՝ երեւելով քերովբէիցն վեհագոյն, զի որոց թեւօքն սաւառնեալ ո՛չ իշխէին հայիլ 'ի յահեղ փառացն, սա 'ի գիրկս իւր բարձեալ համբուրէր համարձակապէս և գգուէր որպէս զմանուկ, և աղերսելով հայցէր արձակիլ 'ի խաղաղութիւն:

Անսկզբնական բանդ Աստուած, 'ի վերջին աւուրս յանձն առեր լինել մարդ 'ի կուսէն, եւ արարիչդ յաւիտենից փակեցար ընդ ժամանակաւ, սուրբ տէր զօրութեանց եւ անկարօտ մաքրութեանց եկիր 'ի տաճարն քառասնօրեայ, զօրինացն կատարեցեր զարդարութիւն: Զոր բարձեալ Սիմէօնի զանպարագրելիդ 'ի գիրկս իւր հայցէր, որ արձակիչդ ես կապելոց արձակեա զիս 'ի խաղաղութիւն: Վասն որոյ ընդ ծերունւոյն Սիմէօնի վերադոչեմք առ քեզ Տէր, սուրբ, սուրբ, սուրբ տէր զօրութեանց, լի են երկինք և երկիր փառօք քովք 'ի փրկութիւն մեզ Քրիստոս Աստուած փառք քեզ.

## Ճաշու Շարական

Մեծ. Դկ. Անսկիզբն բանն յա-
նսկզբնական 'ի հօրէ. և սկզբնաւոր-
եալ 'ի կուսէն մարմնոյ զգեցմամբ
բովանդակելով յորովայնի և ընդ
հօր գոլով և սամհմանեալ ժամանա-
կաւ ծնեալ լինի աստուած եւ
մարդ: Մտեալ ընդ օրինօք անհիւ-
թականըն հողանիւթ գոլով. զի ըզ
հողամ ծնեալքս հօրն ընծայեսցէ աս-
տուածորդին որ 'ի ծոց հօր. տայ
քառամ սնօրեայ բանին 'ի գիրկըս ծե-
րունւոյն. և յայտնապէս ծանուցան-
նի աստուած եւ մարդ: Վասն ո-
րոյ և սիմէօն ցընծայր հոգւովն ապա-
ղակէր 'ի տաճարին. արդ արձա-
կես ըզծառայս քո տէր ըստ բանի
քում 'ի խաղաղութիւն. զի ընդ հա-
նուր տեսի զփրկողդ աստուած եւ
մարդ:

Գիրք եւ ապա Սաղմոս ,

Ալէ , Ալէ ։ Արդ արձակեա զծառայս քո Տէր ըստ բանի քում 'ի խաղաղութիւն, զի տեսին աչք իմ զփրկողդ Աստուած ։

Սրբասացութիւն , « Բազմութիւնք » Տե՟ երե՟ 78

Տաղ , Քրիստոս փառաց Թագաւորն . Տե՟ երե՟ 135

## Ի ՏՕՆԻ ՍՐԲՈՑ ՎԱՐԴԱՆԱՆՑ

Օրհ. Դկ. Նորահրա՛շ պըսակաւոր և զօրագըլուխ առաքինեաց, վառեցար զինու հոգւոյն արիաբար ընդդէմ մահու. Վարդա՞ն քաջ նահատակ որ վանեցեր ըզթշնամին. վարդագոյն արեամբըդ քով պըսակեցեր զեկեղեցի՛ ։

Երկնաւո՛ր Թագաւորին զինու յաղթեալ պատերազմին, խոհական իմաստութեամբ խոհեմացեալ անճառապէս. Խորէ՞ն խորհրդական եւ ծանուցեալ անուն բարի, խաչելոյն վկայ եղեալ հեղմամբ արեան պըսակեցա՛ւ ։

Բենակա՛ն լուսով լցեալ արխացեալըն քաջն Արտակ. Թաթաւեալ 'ի կարմրութիւն բոսորային բղխեալ աղբիւրն, զփըրկակա՞նն ըմպեալ ըզ բաժակ և մըկըրտեալ արեամբն իւրով, դասակցեալ ընդ անմարմնոցն երրորդութեան երգել ըզփա՛ռս ։

Սըրբափա՛յլ զգեստուք պըճնեալ 'ի յերկնաւոր հանդիսադրին, երրորդութեամբըն զօրացեալ վանեալ զամուրըս բանսարկուին. Հըմայեա՞կ նոր ընծայեալ որդւոյ գոլով չարչարակից. հոգւոյն յաղթեալ պատերազմին և չարասէր թագաւորին։

Էակա՞ն բարւոյն դիտմամբ ընդդէմ մեղացըն վառեցաւ. տարագնաց ելիւք յերկինըս պարակցեալ ընդ անմարմնոցն. Տաճա՞տ զարմանալի տաճար եղեալ Երրորդութեանն, տէրունեան սուրբ խորհրդոյն տուն և տեղի արժանացեա՛լ։

Ստացեա՛լ ըզհաւատոյ վահան յուսոյն զրահիւք ծածկեալ. զփըրկականըն սաղաւարտ 'ի գլուխ եդեալ զնըշան Խաչին. Վահա՞ն վեհ երեւեալ նոր մանկութեամբ նահատակեալ. խաչելոյն վըկայ եղեալ պըսակեցաւ արեամբն իւրո՛վ։

Ի հոտ անո՛յշ ողջակիզեալ մատուցանէր զինքըն նըւէր. բանաւոր պատարագաւ ընծայելով Հօր 'ի յերկինս, Արսէ՞նըն ցանկալի արդարութեամբըն ճոխացեալ. իմաստութեամբ պայծառացեալ յեօթնարփեան շնորհաց Հոգւո՛յն։

Երկօքո՛ւմբք հարազատօք ընտրելագոյն նահատակօք. յառաջեալ յամենեցունց գլուխ և աւարտ մարտիրոսաց. Նախաշաւի՞ղ գոլով բարեաց յառաջադէմըն Գարեգին. ընկալեալ ըզբըրաբիոնըն յաղթանակ նահատակա՛ցն։

Բամկակա՞ն խումբ հազարաց և երեսնից թիւ ընդ վեցից. որք ընդ նոսին նահատակեալք ա-

րիաքար պատերազմաւ. և հեղի՞ն զարիւնս իւր-
եանց 'ի նորոգումն եկեղեցւոյ՝ ընդ նոսին պըսա-
կելով 'ի յերկնաւոր հանդիսադրէն։

Գոհութեա՛մբ փառաւորութիւն Երրորդու-
թեանըդ նըւագեմք. բազմութեամբ պըսակելոցս
ըզմեօք մածեալ առաքինեացս. եկեղեցի՞ք Հա-
յաստանեայց պայծառապէս զարդարեցան ու-
նելով միշտ բարեխօս ըզհըրդնութիւն մարտի
րոսա՛ց։

Մկ. Դկ. Սփ. Արիացեալք առ
հակառակսն. քաջութեամբ առնուլ
ըզվրէժ խաբէութեան. Հանճա-
րեղք 'ի հաստուցումըն դաւանա-
ցըն. զամբարըշտացն արդարադատ
չափըմամբ. զօրականք յաղթողք.
պըսակեալք 'ի քրիստոսէ։ Փոխա-
նակեալք զունայնութիւնս ընդ
ճըշմարիտ յուսոյ անմահութեանն.
փափաքանաց ձերոց առիք ըզ
կատարումն,, մաքրիլ արեամբ յաղ-
թոյ մեղանց տըղմոյ. զօրա։ Հայցե-
ցէք զխաղաղութիւն ճըշմարիտ
վըկայք սրբոյ Երրորդութեանն, նե-

զերծո՛ցս յանօրինաց բռնութե-նէ. զի ցընծասցուք յաղթականաւ մարտի ձերով. Նահատակք, որք գոյք, պսակեալք ՚ի Քրիստոսէ։

### ԺԱՄԱՄՈՒՏ

Ցաշխարհական ՚ի ճակատամարտին, յաշխար-հական ՚ի ճակատամարտին և ՚ի մեծ պատերազ-մին ընդդիմամարտեալ լինէր անօրինացն պա-տերազմ։ Իսկ երանելի նահատակքն՝ զմոլութիւն անօրինացն խափանեցին և յաղթող գտան. քան-զի որոց ստացեալ էր զԱստուածային զօրու-թիւն, ո՛չ ժուժկալէր նոցա մարմնաւորական պատերազմն։ Արդ Քրիստոս Աստուած, նոցա բարեխօսութեամբն խնայեա՛ ՚ի մեզ և ողորմեա՛։

### ՃԱՇՈՒ

Մէջ. Դչ. Արեգակն արդարութեան ՚ի Հայաստան ծագեալ պայծառա-ցուցեր սուրբ զեկեղեցի հեղմամբ արեան սրբոցն. մաղթանօք սոցա խը-նայեա՛ ՚ի մեզ պարգևատու բար-

եաց ե՛ւ ողորմեա քո արարածոց ։
Պանծալի սուրբ զաւակօք հովիւքըն
զըւարթունք , հրով հոգւոյն շիջուցին
ըզ բոցն ըզկրակապաշտ պարսիցն .
մաղթա ։ Պարթեւական տեսանողին
յառաջագոյն ազգեցութեամբ զհա-
ւատոյ որդիս սրբոյն գրիգորի պըր-
սակազարդ տեսեալ . մաղթա ։

## ԱՌԱՋԻՆ ԿԻՐԱԿԷ ՄԵԾԻ ՊԱՀՈՑ

### ԲՈՒՆ ԲԱՐԵԿԵՆԴԱՆ

*Տէր զի բազում, իւր սարօքն . Տես էջ 1 ։*

*Կանոնագլուխ Բուն Բարեկենդանի եւ Նոր Կիւրակէի ։*

Սաղ. Օրհնեա՛ անձն իմ զՏէր , օրհնեցից ըզ-
Տէր 'ի կեանս իմ. սաղմոս ասացից Աստուծոյ ի-
մոյ , մինչեւ եմ ես ։

Մի՛ յուսայք յիշխանս յորդիս մարդկան , զի ո՛չ
գոյ փրկութիւն 'ի նոսա ։

Ելցէ՛ հոգի 'ի նոցանէ՝ և դարձցին անդրէն
'ի հող. և յայնմ աւուր կորիցեն ամենայն խոր-
հուրդք նոցա ։

Երանի ազգի՝ որոյ Տէր Աստուած Յակոբայ օգնական է նմա, և յոյս նորա ՚ի Տէր Աստուած է։

Ո արար զերկինս և զերկիր, զծով և զամենայն որ ՚ի նոսա։

Ո պահէ զճշմարտութիւն յաւիտեան, և առնէ իրաւունս զրկելոց։

Տայ հաց քաղցելոց, և արձակէ զկապեալս Տէր։

Տէր բանայ զաչս կուրաց. և կանգնէ զգլորեալս Տէր։

Տէր սիրէ զարդարս, Տէր պահէ զպանդուխտս. զորբս և զայրիս ընդունի Տէր, և զճանապարհս ամբարշտաց կորուսանէ։

Թագաւորեսցէ Տէր յաւիտեան, Աստուած քո Սիօն, ազգէ մինչեւ յազգ։

## ե. Օ՛րհնեցի՛ց ը՛նդ քե՛զ գոհու՛թեա՛մբ ՚ի կեանս իմ. սաղմոս ասացի՛ց քե՛՛զ քրի՛ստո՛ս թագա՛ւո՛ր յա՛ղթա՛կա՛ն նո՛ր ե՛րգո՛վ օրհնութեա՛մբ։

Սող. Օրհնեցէք զՏէր՝ զի բարի է սաղմոս. Աստուծոյ մերում քաղցր եղիցի օրհնութիւն։

Շինէ զԵրուսաղէմ Տէր, և զցրուեալսն Իսրայէլի ժողովէ։

Բժշկէ զբեկեալ սիրտս, և պատէ զամենայն վէրս նոցա։

Ո՛ թուէ զբազմութիւն աստեղաց, և զամենեսեան զնոսա յանուանէ կոչէ։
Մեծ է Տէր, և մեծ է զօրութիւն նորա. իմաստութեան նորա ո՛չ գոյ թիւ։
Ընդունի զհեզս Տէր, և խոնարհ առնէ զամբարտաւանս մինչեւ յերկիր։
Օրհնեցէք զԱստուած խոստովանութեամբ. սաղմոս ասացէք նմա օրհնութեամբ։
Ո՛ զգեցոյց զերկինս ամպովք, և պատրաստ արար զանձրեւ իւր յերկիր։
Բուսոյց զխոտ 'ի լերինս՝ և զդալարի 'ի ծառայութիւն մարդկան։
Ո տայ անասնոց կերակուր. ձագուց ագռաւուց՝ որք կարդան առ նա։
Ո՛չ թէ ընդ զօրութիւնս ձիոյ կամեցաւ Տէր, և ոչ ընդ իրանս առն հսկայի հաճեցաւ։
Այլ հաճեցաւ Տէր ընդ երկիւղածս իւր, և ընդ այնոսիկ՝ որք յուսան յողորմութիւն նորա։

ք. Քաղցրացին քեզ Քրիստոս գոհութիւնք երկիւղածաց անուան քո. զոր յուսացուցեր ողորմութեամբ քով 'ի խորհուրդս կենսաբեր գաղտաեանդ քոյ։

Սաղ. Գովեա Երուսաղէմ զՏէր.
Եւ օրհնեա զԱստուած քո Սիօն։

Զի զօրացոյց զնիգս դրանց քոց, և օրհնեաց զորդիս քո 'ի քեզ։

Ո եդ զսահմանս քո 'ի խաղաղութիւն, պարարտութեամբ ցորենոյ լցոյց զքեզ։

Առաքէ զբան իւր յերկիր, վաղվաղ ընթանան պատգամք նորա։

Դնէ զձիւն որպէս զասր, և զմէգ որպէս փոշի ցանեաց։

Արկանէ զսառն որպէս պատառս. առաջի ցրտոյ նորա ո՞ կարէ կեալ։

Առաքէ զբան իւր՝ և հալէ զնոսա. շնչեսցեն հողմք և գնասցեն ջուրք։

Պատմէ զբան իւր Յակոբայ, զարդարութիւն և զիրաւունս Իսրայէլի։

Ո՛չ այսպէս արար ամենայն ազգաց Տէր. և զդատաստանս իւր ո՛չ յայտնեաց նոցա։

է. Զքեզ քրիստոս գովէ եկեղեցի փրկեալ քո սուրբ. ցընծալով տեսանէ ըզքեզ ըզփրկողդ. եկեալ հայրական իշխանութեամբ 'ի պըսակել ըզսուրբըս քո։

Այսօր 'անճառ' իւր սարօքն։ Տես ի յառաջիկայդ

Օրհ. Դկ. Բանն որ ընդ հօր յէու-
թեան և համագոյ, սուրբ հոգւոյն.
ընդ պատկերին իւրական խառնեալ ընդ
հողանիւթ բընութեանս. զոր զար-
դարեալ փառօք եդ 'ի դրախտին
փափկութեան: Յորում ցընծայր
զուարճացեալ անտըխրական խնդու-
թեամբ. քանզի զաստուած տեսա-
նէր միշտ խոնարհեալ 'ի դրախտին.
յորմէ զլուսոյն ճառագայթ տը-
պաւորէր 'ի յինքեան: Վասն որոյ,
աղաչեա մայր աստուծոյ, միրիամ ըզ
միածինն քո զորդին. զի շնորհեսցէ
'ստ աւազակին ժառանգել վերըս-
տին մեզ ըզդրախտին վայելչութիւն:

Այսօր յօրինակ նախաստեղծին
ադամայ որ 'ի դրախտին փափկու-
թեան ուրախանայր ընդ հրեշտակս.
ցընծասցուք և մեք 'ի յօրհնութիւնս
հոգեւորս: Այսօր 'ի խորհուրդ աս-

տուածաստեղծ նախահօրն . որ 'ի պըտղոյն ադինայ ճաշակելով զը-ւարճանայր , ճաշակեսցուք և մեք ըզպատուիրանս աստուծոյ : Այսօր 'ի տիպ պատմուճանին առաջնոյ որով պըճնեալ զարդարիւր 'ի փառըս մարդն առաջին . զարդարեսցուք եւ մեք աստուածային օրինօք : Ցընծա Մարիամ արեգականն արդարութեան արեւելք . եւ աղաչեա զառ 'ի քէն զծընեալն աստուած վասըն մեր . զի դարձուսցէ վերըստին զմեզ 'ի դը-րախտին ժառանգութիւն :

---

## ԵՐԳ ԱՐԵՒԱԳԱԼԻ

*Եղիցի անուն Տեառն օրհնեալ եւայլն :*

Յարեւելից մինչ 'ի մուտս , 'ի հիւսիսոյ և 'ի հարաւոյ , ամենայն ազգ և ազինք . յօրհնութիւն նոր

Օրհնեցէք զարարիչն մարմնոց. որ ծագեաց ըզլոյս արեգականն այսօր յաշխարհս։

Եկեղեցի բազմարդարոց, փառաբանիչք ամենասուրբ Երրորդութեան. յառաւօտըս լուսոյ զառաւօտ խաղաղութեան քրիստոս գովեցէք ընդ հօր եւ հոգւոյն, որ ծագեաց ըզլոյս գիտութեանն իւրոյ ՚ի մեզ։

ՅՈՐԴՈՐԱԿ

Յարեւելից յարեւմուտս մանկունք սիոնի. օրհնեցէք միշտ անդադար զծագողըն լուսոյ։

Եկեղեցիք արդարոց եւ փառաբանիչք. բարեբանեցէք որ ետ զիմաստըն լուսոյ։

Քարոզ. Աղօթք. Սաղմոս. Ալողորմեցէ — Տէր

Զինուորք աստուծոյ, եւ ժառանգորդք երկնից արքայութեանն,

Որք փոխանակեալք զանցաւորս
տուիք զանձինսըն բարութիւնսն.
բարեխօսեցէք առ Տէր վասն ման-
կանց եկեղեցւոյ:

Նահատակք պանծալիք, և սի-
րեցեալք ՚ի յերկնաւոր հօրէն. որք
մըկըրտեցայք ընդ Քրիստոսի արեամբ
ձերով ՚ի մահ խաչին. բարեխօսե:

Մարտիրոսք ցանկալիք եւ օթե-
ւանք հոգւոյն ճըշմարտութեանն.
որք յաղթեցիք հոգւով կարեաց
և ցանկութեան. բարեխօսեցէք:

Գովելիք աշխարհի, և բաղձալիք
վերնոցըն պետութեանց. որք ե-
րանութեան մասին հասիք քան զա-
մենայն որդիս մարդկան. բարեխօ:

Կամաւոր պատարագք. մանկունք
տիօք եւ կատարեալք իմաստու-
թեամբ. որք փոխանակ կաթին
արբիք զգինին զմայլեցուցիչ. բարե:

## ՅՈՐԴՈՐԱԿ

Ծըգնաւորըք ճըշմարիտք վըկայք
քըրիստոսի. բարեխօսեցէք առ տէր
վասն անձանց մերոց։

Նահատակըք կենդանիք սիրողք
քրիստոսի. որք չարչարեցայք մար-
մնով վասն անուանըն տեառն։

Մարտիրոսըք ցանկալիք մարդկան
ըղձալիք. հայցեցէք ՚ի սուրբ հո-
գւոյն տալ մեզ ըզբարիս։

Գովելիք վերնոց դասուց, պար-
ծանք աշխարհի. խընդրեցէք զխա-
ղաղութիւն տալ եկեղեցւոյ։

Կամաւոր սուրբ պատարագք հա-
սակաւ մանկունք. հայցեցէք լինել
և մեզ ձեզ պըսակակից։

Մաղթանք. Քարոզ. Աղօթք. Սաղմոս Աստուած
Աստուած իմ. եւայլն։

Լոյս արարիչ լուսոյ առաջին լոյս,
բնակեալդ ՚ի լոյս յանմատոյց, Հայր
երկնաւոր, ՚ի դասուց լուսեղինացն
օրհնեալ. ՚ի ծագել լուսոյ առաւօ-
տուս. ծագեա ՚ի հոգիս մեր զլոյս
քո իմանալի:

Լոյս ՚ի լուսոյ ծագումն արեգակն
արդար. անճառ ծնունդ հօր որդի.
յառաջ քան զարեւ անուն քո գով-
եալ ընդ հօր. ՚ի ծագել լուսոյ:

Լոյս ՚ի հօրէ բղխումն անզբիւր բա-
րութեան. հոգի սուրբ անստու-
ծոյ, մանկունք եկեղեցւոյ ընդ հրեշ-
տակս ըզքեզ բարեբանեն, ՚ի ծագ:

Լոյս երրեակ եւ մի անբաժանելի
սուրբ երրորդութիւն. զքեզ ընդ
երկնայնոցն երկրածինքըս միշտ փա-
ռաւորեմք. ՚ի ծագել:

## ՑՈՐԴՈՐԱԿ

Անեղանելիդ աստուած Հայր ա-

մենակալ. ընկալ զաղաչանըս մեր
քոց պաշտօնէից։

Ի հօրէ ծագումն անճառ արեգակն
արդար. ծագեա ՚ի յանձինըս մեր
զլոյս ողորմութեան։

Ի հօրէ բղխեալ հոգի, աղբիւր
բարութեան. լուսով քով լըցո ըզ
մեզ յայսմ առաւօտուս։

Երեք անձինք եւ մի բնութիւն. մի
աստուածութիւն. զքեզ խոստովա-
նիմք յաւէտ սուրբ երրորդութիւն։

Մաղթանք. Քարոզ. Աղօթք. Սաղմոս Տէր հովուեսցէ։

Ճանապարհ եւ ճշմարտ-
ութիւն, եւ կեանք քրիստոս.
առաջնորդեաց հոգւոց մե-
րոց, յերկրէ ելանել յերկինս։
Դուռըն կենաց մըտից
յիսուս. մոյծ եւ ըզ մեզ առ
հայր քո եւ հոգի. երգել միշտ ըզ
փառս։

## ՑՈՐԴՈՐԱԿ

Ցանապարհ բարի քրիստոս և ճըշմարտութիւն. առաջնորդ հոգւոց
մերոց յերկրէ ի յերկինս։
Դուռն կենաց մըտից յիսուս. աստուած ճըշմարիտ. մոյծ և զմեզ
առ հայրըդ քո, հոգւովըդ սըրբով։

Մաղթանք. Քարոզ. Եւայլն

---

## ԵՐԿՐՈՐԴ ԿԻՐԱԿԷ

Օրհ. Դյ. Որ զօրէնըս սըրբութեան պահոց նախ ի դըրախտին աւանդեցեր, զոր ոչ պահելով նախաստեղծիցըն ճաշակմամբ պտղոյն ճաշակեցին ըզդառնութիւն մեղաց և մահու. վասն որոյ շնորհեա մեզ տէր ճաշակել ըզքաղցրութիւն քոց պատուիրանաց։ Որ զանազան վիրօք մեղաց հարաք յոգիս ի թըշնամւոյն,

և 'ի բազմապատիկ հիւանդու-
թեանս կարօտացաք մարդասիրիդ
բառնալոյ ըզցաւըս մեր. վասն ո-
րոյ բժշկեա ըզմեզ քրիստոս որ-
պէս մարդասէր ։ Որ եկիր 'ի փըր-
կութիւն մարդկան ծնընդեամբ կու-
սին մարիամու. և կենդանարար
քո յարութեամբդ հրաւիրեցեր ըզ-
մահացեալսն ի յարութիւն անմա-
հութեան. վասն որոյ աղաչանօք մօր
քոյ կեցո զմեզ փըրկիչ ։

Որ գերագոյն փառօք բարձրացուցեր
զմանկունս եկեղեցւոյ քո քրիստոս
խոնարհութեան քո ճանապարհաւ.
առաջնորդելով 'ի յերկնային վայրըս
հրեշտակաց. աղաչեմք առաջնոր-
դեա մեզ տէր ի յարդարութիւն ։
Որ զդառնութեան պտղոյն ճաշակն
որով մեռաք արդարութեան պահե-
լով քո քառասնօրեայ փոխեցեր

ի քաղցրագոյն օրինաց քոց ճա-
շակումն. աղաչեմք արբո մեզ տէր
զուրախարար սիրոյ քոյ բաժակն։
Որ անապականն ծնընդեամբքդ քով
լուծեր զերկունըս նախամօրն մա-
րիամու մայր աստուծոյ, բարեխօսու-
եա առ միածին որդին լուծանել
զկապանըս մեղաց մերոց. և աղաչ-
եա փըրկել զանձինըս մեր ի փոր-
ձութենէ։

## ԵՐՐՈՐԴ ԿԻՐԱԿԷ

Օրհ. Գկ. Օրհնեմք ըզքեզ անըս-
կիզբըն հայր որդւոյդ միածնի, զոր
առաքեցեր ի դարձումն մոլորեալ
ոչխարին. դարձո եւ զմեզ ի մեղաց
որդւոյ քոյ չարչարանօք։ Գովեմք
ըզքեզ բան եւ լոյս, որ զտիրական
քո պատկեր լուսով ճրագի քոյ գըտ-

ծատունդ ստեղծեր երկրորդ աշխարհ
զգայի. և 'ի դրախտն որ յադենի
տնտես եդեալ զմարդն առաջին.
օրհնեմք զան: Որ շինեցեր բարձրա-
գոյն զեկեղեցի քո խորհրդեամբ.
և 'ի սմա կարգեալ տնտես զքարոզս
բանին ճշմարտութեան. օրհնեմք:
Անտանելույն տաղաւար բարձող
էիցըս բարձողին, որ ծրնար զաստ-
ուած մարմնով զանմարմնաբար ծը-
նունդըն հօր բարե խօսեաւ վասըն
մեր աստուած ծածին մարիամ:

Որ զտիրականս առ 'ի քէն կար-
գեալ տնտես բնութեան մերոյ. ի-
մաստութեամբ ըզպարտիս եթող քո-
յոց պարտապանաց. թող եւ ըզմեր
ըզ յանցանս ողորմութեամբըդ քով
քրիստոս: Որ զպատմուճանն առա-
ջին զոր զգեցուցեր օծմամբ հոգւոյն,
մերկացաք մեղօք ըստ նախահօրըն
պատրանաց. զգեցո ըզնոյն վերը-

տին ողորմութեամբըդ քով քրիստոս ։ Յաստուածային կայծակունն ՚ի սրբովբէիցն անհրապելին. անմաքրապէս մերձեցաք գող պարտապան քում խորհրդոյն. շնորհեա ըզնոյն մաքրութեամբ ՚ի թողութիւն մեղաց մերոց ։ Որ վառեցար ՚ի յարփւոյն եւ ոչ կիզար ըստ մորենւոյն. այլ ետուր զհացըն կենաց կերակուր բանաւորաց. բարեխօսեա առ քրիստոս ջնջել ըզ գիր մեղաց մերոց ։

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԿԻՐԱԿԷ

Օրհ. Բկ. Որ պատուիրան ճըշմարտութեան աւանդեցեր եկեղեցւոյ քոյ քրիստոս. անսահման ժամանակաւ աղօթել միշտ առ աստուած հոգւով եւ մըտօք ։ Որ ըզբան քո օրինաց հաստատեցեր գործով մեզ

օրինակ, հանելով զգիշերն 'ի գլուխ
յաղօթսն աստուծոյ, բնութեամբ
մերով տնօրինաբար որում կրկնի
ծնունդ ամենայն։ Վասն որոյ, եւ
մեք պաղատեսցուք առ քեզ քրիս-
տոս, շնորհեա մեզ յամենայն ժամ
լինել քեզ յանդիման մաքուր ա-
ղօթիւք ըստ անմարմնոցն՝ որ յեր-
կինս։ Աղաչանօք աստուածածնին
անապական քում ծընողին՝ զիմա-
նալի աչըս սրտից մերոց բացցես
ողորմութեամբ հայիլ 'ի լոյս քո քը-
րիստոս։

Դատաւոր արդարութեան հաս-
տատեցեր 'ի մեզ ըզմիտս մեր, դա-
տել զհոգի եւ ըզմարմին. արդա-
րապէս դատաստանք ըստ օրինաց քոց
քրիստոս։ Իսկ անիրաւ դատաւո-
րին որ 'ի քաղաք բնութեան մե-
րոյ, ոչ ունելով զերկիւղ քո սուրբ,

և անպատկառ ՚ի մարդկանէ, ոչ առնելով դատ զրկելոյն։ Այլ անմահ սուրբ փեսայիդ այրի հոգի իմ պաղատի. ուսո զիրաւունըս քո ի-մում դատաւորիս, առնել ինձ դա-տաստան արդար ընդ ոսոխի մար-մնոյ իմոյ։ Մարիամ կոյս ան-բաւ զանապականն փեսայդ աղաչեա. զի հաշտեսցի ընդ այրի եղեալ հո-գիս, և միաւորեսցի դարձեալ սի-րով ընդ հեռացեալս ՚ի նմանէ։

## ՎԵՑԵՐՈՐԴ ԿԻՐԱԿԷ

Օրհ. Բյ. Որ ըզխորհուրդ քո զայլըս-տեանդ յառաջագոյն գուշակեցեր մարգարէիւքն իսրայէլի զորս ընտրե-ցեր յետ մովսիսի. որք խօսեցան հոգւով սրբով բազմապատիկ օրի-

նակօք. տո՜ւր մե՞զ փրկի՛չ ողո՛րմու-
թիւն և ը՛զմեղա՛ց ըզթո՛ղութի ւն ։
Ի՛ մերձենալ ամա՛ց վերջին զոր տե՛-
սանո՞ղքըն ծանուցին. ը՛զհասանի՛լ մեր
փրկողիդ առ ՚ի՛ վախճան ժա՛մանա-
կին. ե՛րեւե՞ցար ՚ի մէջ մա՛րդկան ըզ-
գեցեալ ըզկե՛րպ ծառայական. տո՜ւր։
Ի՛ վեցերորդ աւո՛ւր զադամ՞ ստեղ-
ծե՞ր ՚ի տի՞պ քո տիրական. ո՛ր ոչ
պահեա՛լ ըզպատուիրանըն մե՛րկացաւ
ըզպա՛տմուճանն. ի՛սկ նոր ա՞դամդ ՚ի
վեց դա՛րուն այց արարե՛ր կորուսե-
լոյն. տո՜ւր։ Տա՛ճար լուսոյ անը՛ստ-
ուերին և ա՛ռագա՞ստ անճառ բանին.
ո՛ր ըզնախնեո՛յ մօրն եւայի բարձե՛ր
զանէծսը՛ն տըրտմալի. հա՛յցեա՛ յորդ-
ւոյ քոյ միա՛ծնի հօր հաշտութեա՛նըն
միջնորդի. բա՜ռնալ ՚ի մէնջ ըզ խռո՛-
վութիւն և տա՛լ զոգւոց խա՛ղաղու-
թի՛ւն։

Ը՛ստ աւետեաց մարգա՛րէին որ ա՛ռ փրկեա՛լքս արեամբ գառինդ· ցը՛նծամք և մե՛ք ծառք ա՛նտառի ընդ գա՛լըստ տեա՛ռնըդ կրկնակի· շը-նո՛րհեա մե՛զ տէր ընդ արդա՛րոցն ընդ առ ՚ի քէ՛ն տնկեալ ծառոցն· ա՛յ-ժը՛մ յուսով զըւար՛ճանալ և յե՛րկ-րորդի՛ն ընդ քե՛զ ցընծա՛լ։ Սը՛մին նը-ման տա՛յ աւետիս զաքա՛րիա՛ նոր սի-օնի· Ե՛թէ ուրա՛խ լեր ա՛հա՛ գայ առ քե՛զ խոնարհ ե՛ւ հեզ արքայ· նը՛ստեալ ՚ի՛ յէշ եւ յաւա՛նակ կըր-կին ազա՛նց գոլ օրինակ· նը՛ստեա՛լդ յաթոռ քերո՛վբէից նիստ գը՛թու-թեա՛մբ ՚ի մե՛ր հոգի՛ս։ Զա՛հեղ փա-ռաց քո՛ց երե՛ւումն որ լի՛նելո՛ց է յերկրորդումն, ե՛տես դաւի՛թ յա-ռա՛ ջա՛գոյն ծանո՛յց կանխաւ ազդմա՛մբ հոգւոյն, թէ՛ յայտնա՛պէս աստուած գա՛յցէ հուր առաջի՛ իւր բորբոքէ·

յա՜յնժամ յիսուս 'ի մե՛զ խնայեա.
գըթա՛, քրիստոս և ո՛ղորմեա՛ : Ա՛ստ-
ուածածին ա՛նհարսնացեալ յերկրէ՛
յերկի՛նս հարսն ընծայեալ, յո՛րժամ
բազմի՛ս լուսո՛յ նը՛ման քո մի՛ածնիդ
յաջա՛կողման, յա՛յնժամ մա՛ղթեա
ընդ մեր ը՛զնոյն փրկել ըզմե՛զ յա-
հեղ բոցոյն, հա՜մա՛դասիլ ընդ ա՛ր-
դարոցն երգե՛լ ըզփա՛ռս ընդ ե՛րկ-
նայնո՛ցն :

# ԿԱՆՈՆ

## ՆԱԽՈՐԴ ԵՐԵԿՈՅԻ ԾԱՂԿԱԶԱՐԴԻ

*Խոնարհեցո։ Ապրեցո։ Լոյս զուարթ։ Տէ. եր. 130։*

*Մեսեդի. «Օրհնեալ էկ'»։ Քարոզ. «Ասասցուք'»։ Սբ. Ած. որ եկիր և գալոց ես ողոր'»։*

Հձք. Այ. Որ վերօրհնիս յաթոռս քերովբէից, ՚ի վերայ նստիլ յաւանակի հաճեցար. բարեբանեալ որ եկիր ՚ի կեցուցանել։ Ուստի և մեք զյաղթական օրհնութեանցն ընձայն մատուցանեմք քեզ թագաւոր փառաց ընդ տղայսն օրհնաբանելով. բարեբանեալ։ Ովսաննայ ՚ի բարձունս ալէլուիա. բարեբանեալ եկեալ անուամբ տեառն ալէլուիա. և օրհնութիւն որ գալոց ես անուամբ տեառն ալէլուիա։

Այսօր զանսկիզբն բանն որ յաթոռ

*փառաց ընդ հօր՝ յե՛րկրի երե՛ւեալ տեսակք. քրո՛վբէակա՛ն ձայնիւն օրհնե՛սցուք. օրհնեա՛լ եկեալ ա՛նուա՛մբ տեա՛ռն։ Այսօր յաւանա՛կ քերո՛վբէ՛ և տըղա՛յքն եբրա՛յեցւոց բա՛րեբանեն. օրհնութի՛ւն որդւո՛յ դաւթի, օրհնեա՛լ։ Այսօր զուա՛րճացան տիե՛զերըք գալըստեա՛մբ աստուածո՛րդւոյն յե՛րուսաղէմ. և գոչէի՛ն հնչմա՛մբ երգով, օրհնեա՛լ եկեալ։*

Ն— ապա կեցո։

# ԿԱՐԳ

## ԱՌԱՒՕՏԵԱՆ Ի ՏՕՆԻ ԾԱՂԿԱԶԱՐԴԻ

*Տէր զի բազում եղն . Տե՛ս յէջ 1-50 ։*

*Հետեւակ Շարական՝ Ցառաջ քան զօրհնութիւնն ։*

Դյ ։ Թագաւոր գոլով քո յաշխարհ մըտեր 'ի քաղաքն Երուսաղէմ. Նստեալ 'ի վերայ հողեղէն նոր յաւանակի, կոչել զհեթանոսս յերկրպագութիւն ։ Ծերքն ոստովք ձիթենեօք եւ տղայքն ոստովք արմաւենեօք, եւ երամ երամ դասուքն աղաղակէին. Ովսաննա օրհնեալ եկեալ 'ի յանունըն տեառն ։ Ցընծացաւ սուրբ սիօն. բերկրեցան սուրբ եկեղեցիք, եւ խնդութեամբ բազմաւ ելին ընդ առաջ, օրհնէին զգալուստ քո փրկիչ յաշխարհ ։

Յորժամ եկըն յիսուս յերուսա-

ղէմ ՚ի քաղաքն. ընդ առաջ ելին
ծերքն ոստովք ձիթենեօք. և զաս-
տուածորդին փառաւորէին։ Ի լեռ-
նէ ձիթենեաց տարածանէին ման-
կունքն ըղձանդերձս իւրեանց, եւ
ոստս ՚ի ծառոց բերեալ մատուցա-
նէին աստուածորդւոյն սուրբ
թագաւորին։ Ոստովք եւ տերեւ-
եալ ձիթենեօք երբայեցւոց ման-
կունքն օրհնէին. ուրախ լեր երու-
սաղէմ քաղաք և ցնծա սիոն մայր
եկեղեցի։

Զգալուստ քո քրիստոս այսօր յե-
րուսաղէմ նոր եկեղեցի սուրբ, յաղ-
թական երգով բարբառանեմք, օրհ-
նեալ եկեալ անուամբ տեառն։ Որ
վասն մերոյ փրկութեան յաւանակի
նստեալ յանձն առեր ընդ մանկունսն
բարբառանեմք, օրհ։ Թագաւոր երկ-
նաւոր զեկեղեցի քո անշարժ պահ-

եա, եւ զերկրպագուս անուանըդ քում պահեա ’ի խաղաղութեան։

Ի յարութեան յաւուր գալըստեան փրկչին, տարածանէին մանկունքն ըղհանդերձս, և անդադար ձայնիւ օրհնէին, օրհնեալ եկեալ անուամբ տեառն։ Ոստս ’ի ծառոց բերեալ մատուցանէին. աստուածորդւոյն առ Ճանապարհաւն. և անդադար ձայնիւ։ Ի ծերոց բղխեալ օրհնութիւն և ’ի տղայոց փառաբանութիւն, և անդադար ձայնիւ օրհ։

Օրհնութիւն. «Որ վերօրհնիս»։ Տե. Երե. 169։
Քարոզ. «Վասն ուղղելոյ»։ Տե. Երե. 53։

Ալէ. ալէ. ալէլուիա։ Տէ՛ր Աստուած մեր երեւեցաւ մեզ, արարէք տօնս ուրախութեան կանխաւ մինչեւ յանկիւնս սեղանոյ։ Աստուա՛ծ իմ ես դու եւ խոստովան եղէց քեզ. Աստուած իմ ես դու եւ բարձըր արարից զքեզ։

Ալէ՛՛։ Լերինք ցնծացեն առաջի Տեառն. զի գայ և հասեալ է Տէր ’ի դատել զերկիր։ Դատէ՛ զաշխարհս արդարութեամբ, և զժողովուրդս իւր ուղղութեամբ։ Փա՛ռք և եր՛՛։ Այժմ և միշտ՛՛։

Հրջ. Դկ. Ո՞ր 'ի քրովբէակա՛ն աթոռ
ը՛նդ հօ՛ր նստէ՛իր բա՛նդ աստուա՛ծ.
այսօ՛ր խոնարհութեա՛մբ նըստար մա՛ր-
մնո՛վ նոր յա՛ւանակի. ը՛զքե՛զ բա՛-
րեբանե՛մք աստուա՛ծ հա՛րցըն մերո՛ց:
Ո՞ր 'ի սրովբէի՛ցըն սրբաասաց ձա՛յ-
նի՛ւ անդա՛դար օրհնա՛բանիս, այսօր
'ի դասո՛ւց եբրա՛յեցւոց որդի դա՛ւթի՛
փառա՛բանեցար. ը՛զքե՛զ բարե: Ո՞ր
'ի հրակերպի՛ցն երգա՛բանեալ հը՛նչ-
մա՛մբ 'ի բարձունս օրհնաբանիս. այս-
օ՛ր 'ի ծերո՛ց և 'ի՛ տղայոց գովե՛ցա՛ր
ովսա՛ննա երգո՛վ. ը՛զքե՛զ:

Ըզտէր օրհնեցէ՛ք բարձր ա՛րարէք
ը՛զնա՛ յա՛ւիտեա՛ն:

Ա՛յսօ՛ր ըզգալուստ փրկչին մե՛րոյ
ցնծութեա՛մբ տօնէ նո՛ր երուսա՛-
ղէ՛մ. ժողովո՛ւրդք ո՛րք 'ի հեթանո-
սա՛ց. բարձր: Ա՛յսօ՛ր ը՛նդ մանկա՛նց
եբրայե՛ցւոց զհի՛ն աւո՛ւրցն եկեա՛լ

նոր արքայ, 'ի սիոն. մանկունք սուրբ եկեղեցւոյ. բարձր ամբ. Այսօր ընդ ծերոցն օրհնաբանից ուրախու-թեամբ բարեբանեցէք զանմահ թա-գաւորն եկեալ. քահանայք հո-գեւոր երգով բարձր ամբա :

Մեծ. Այ. Ուրախ լեր յոյժ դուստր սիոնի. պայծառացիր երուսաղէմ, զարդարեալ ընդդրունըս քո քաղաքդ աստուծոյ: Զանզի քրիստոս որ էն 'ի յաթոռ փառաց. այսօր մըտանէ 'ի քեզ նստեալ 'ի վերայ յաւանակի նորոյ: Ծերք և տղայք ոստովք ձիթենեօք միաբանութեամբ երգէ-ին. օրհնութիւն որդւոյ դաւթի. օրհ-նեալ եկեալ անուամբ տեառն :

Իւղաբերից Աւետարանի երգերը՝ Մեծ պահոց կիւրա-կէից պէս :

Ող. Բկ. Ուրախ լեր եկեղեցի սուրբ. 'ի գալըստեան սուրբ միած-

նին. ուրա՛խ լեր և՛ ցընծա՛ Հա՛նդերձ ամենա՛յն սրբո՛վք։ Խ՛նդա՛ յո՛յժ դո՛ւստը՛ր վե՛րի՛ն սի՛ո՛նի. ա՛հա թա՛գաւո՛ր քո գայ նը՛ստեալ 'ի յաւա՛նակի՛ նորո՛յ, ա՛րդար և՛ փը՛րկի՛չ փրկէ ե՛ւ կեցո՛ւցանէ՛։ Զը՛ւա՛րճացի՛ր և՛ բերկրեա՛ ժողո՛վո՛ւրդ ա՛ստուծոյ. մա՛տո՛ զոստը՛ս ծաղկեա՛լս Հաւա՛տով և՛ ասա. օ՛րհնեա՛լ ո՛ր եկի՛րըդ թագաւո՛ր՛ տիե՛զերա՛ց։

Տէր. Զքրի՛ստո՛ս թագա՛ւո՛րն ո՛ր է՛ն 'ի յաթո՛ռ փա՛ռաց, տեսա՛ք 'ի յե՛րկրի նստեա՛լ 'ի նո՛ր յաւա՛նա՛կի՛։ Ընդ ա՛ռա՛ջ ե՛լեա՛լ ա՛րքա՛յի՛ն դաս եբրա՛յե՛ցւոց. ծերքն ոստո՛վք ձիթե՛նեօք և տղայքն արմա՛ւե՛նեօ՛ք։ Միաբա նա՛կա՛ն ձա՛յնի՛ւ գոչէ՛լի՛ն երգ նոր. բարե՛բանելո՛վ զանը՛մա՛Հ թա՛գա՛ւորն։

Փառք 'ի բարձունս Աստուծոյ. Տես յէջ 58.

Ա՟՟օտ՟ Երգ

Այսօր մտանէ թագաւորն մեր Քրիստոս 'ի յԵրուսաղէմ նոր քաղաք Դաւթի ։ Ընդ առաջ ելին ծերքն ստովք ձիթենեօք , և զԱստուածորդին փառաւորէին ։

Սք · Ած · որ եկիր և գալոց ես ։
Շար · « Որ վերօրհնիս յաթոռս'' » ։ Տե՟ Երե՟ 169 ։

Գիրք Ե՟ ալ՟ Սաղմոս ։

Ալէ · Ալէ · Օրհնեալ եկեալ անուամբ Տեառն , օրհնեալ որ գալոց ես ։

Աւետարան , Անդաստան Ե՟ ալ՟

Ժամամուտ ։

Յորժամ եկեալ կենարարն 'ի գերեզմանն Ղազարու , յորժամ եկեալ կենարարն 'ի գերեզմանն Ղազարու , աւետաւոր ձայնիւդ աղաղակէիր ասելով . Ղա՛զարէ , արի՛ ե՛կ արտաքս ։ Իսկ մեռեալն 'ի գերեզմանէն յարեաւ , և նոյն ինքնդ զանմահութեան պարգևսդ ետուր սիրելւոյդ , և աստուածային ձայնիւդ 'ի գերեզմանէն կոչեցեր ։ Վասն որոյ և մանկունք Եբրայեցւոց ստովք օրհնէին զանմահ թագաւորութիւն քո ։ Ընդ նոսին և մեք ասեմք , Ո՛վսաննա , օրհնեալ է գալուստ քո , օրհնութիւն 'ի բարձունս , օրհնեալ որ գալոց ես անուամբ Տեառն ։

Շար · Դկ · Ցիսո՟ւս միածի՛նն անմա՛հութեանց պարգե՛ատուն երեւե՛ցաւ

մեզ. խափանեաց զզօրութիւն մահու։ Բղխմամբ արտասուաց մարիամու և մարթայի անկեալ առ ոտսըն տեառն, խնդրել ի՛ն զնորոգումն եղբօրն։ Բանիւ բանն աստուած կենագործեաց ըզղազարոս ի թաղմանէ. և եկեալ արտաքս անապական։

Ի քեզ եմք ապաւինեալ քրիստոսի մայր աստուծոյ մերոյ։ Որ քան զերկինս բարձրագոյն մարիամ, պարծանք եկեղեցւոյ քրիստոսի մայր աստուծոյ մերոյ։ Որ քան զարեգակն պայծառագոյն մարիամ. մի դադարիր բարեխօսել վասն մեր. քրիստոսի մայր աստուծոյ մերոյ։

Սուրբ զխաչ քո շնորհեցեր զէն եկեղեցւոյ քում սրբոյ. որով դատապարտեալ պարտեցաւ թշնամին։ Սովաւ պահպանեա ըզժողովուրդս

քո Քրիստոս. որով երկրպագեմք
քեզ ընդ Հօր և Հոգւոյն։

Փառք Հօր և Որդւոյ",

Ի քեզ ապաւինիմք Քրիստոս, որ
զալոյդ ես խաչիւ. որպէս զի փըր-
կեսցես զմեզ յայնմ աւուր ահեղ
ատենին։

Այժմ և միշտ և յաւիտ".

Պակասեցայ յազգատոհմէ լքեալ
թողի զկեանս աշխարհի. և մարմին
ունայնութեան դարձաւ 'ի հող ուս-
տի ստեղծաւ. յիս մարդասիրեամ
բազմագութ փրկիչ և փարատեցո ըզ
ցաւս անձին իմոյ։

Ալէ". Ալէ"։ 'Ի խորոց կարդացի առ քեզ Տէր Տէր, լուր ձայնի իմում։ Եղիցին ականջք քո 'ի լսել զձայն աղօթից իմոց։

Թէ զանօրէնութիւնս իմ քննես Տէր Տէր, իսկ ո՞ կարէ կալ առաջի քո, զի 'ի քէն է քաւութիւն։ Վասն ան-

ուան քոյ համբերի Տէր, համբեր անձն իմ բանի քում, յուսացաւ անձն իմ 'ի Տէր:
'Ի պահէ առաւօտու մինչև յերեկոյ, 'ի պահէ առաւօտու յուսացաւ Իսրայէլ 'ի Տէր: 'Ի Տեառնէ է ողորմութիւն բազում. 'ի Նմանէ է փրկութիւն. և Նա փրկեաց զԻսրայէլ յամենայն Նեղութեանց Նորա:

Աւետարան: «Հոգւոց»: Ե— տող

Շար. Բկ. Այսօր ընդ հրակերպեան դասուցն օրհնաբանեն երգն ծերքն ոստովք, եւ տղայքն արմաւենեօք. ովսաննա, օրհնեալ եկեալ 'ի յանուն տեառն: Զոր սերովբէքն ծածկաբար ընդունիլ ոչ բաւեն, 'ի վերայ յաւանակի նորոյ նստեալ բարեբանեցաւ 'ի տղղայոց. ովսաննա օրհնեալ: Այսօր ընդ ծերոց և ընդ տղայոց օրհնաբանութեանցն մեր երգեմք նորոյ արքայիդ եկեալ յերուսաղէմ.
ովսաննա օրհնեալ:

Օրհնեալ եկեալ անուամբ տեառն:

Օրհնեալ որ գալոցդ ես:

Նորաստեղծեալ ։ Երկու տուն միայն ։ Տե․ յէջ 62 ։

Ջկնէ Կեց․ ։

---

’Ի ժամ Ս․ Պատարագին

Մեղէդի

Ովսաննա երգով օրհնեմք այսօր զանմահ արքայդ-
մանկունքս նոր Սիոնի ։

Ժամամուտ ։

Ծնծա Երուսաղէմ և զարդարեա զաւագաստ քո Սիոն ,
քանզի ահա Թագաւոր քո Քրիստոս նստեալ ’ի յա-
ւանակի նորոյ՝ հեզութիւն ցուցանելով գայ մտանէ
յաւագաստ քո ։ Եւ մեք աղաղակեմք , ո՜վսաննա ,
օրհնեալ եկեալ յանուն Տեառն, որ ունի զմեծ զողոր-
մութիւն ։

Տէր Թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ ։

Ձյ. Դկ. Անսկիզըն բանըն Հօր որ
ի վերայ քերովբէիցըն հանգչի , այսօր
’ի վերայ յաւանակի նորոյ նըստեալ․
օրհնեալ արքայ եկեալ յանյաղթելի
Թագաւոր ։ Յառաջ քան զյաւիտ-
եանս որդին որ ’ի վերայ քառակեր-
պիցըն բազմի․ այսօր ’ի ծերոց եւ ’ի

տղայոց փառաւորեցաւ. օրհնեալ։
Եկայք նոր ժողովուրդք ընդ անմարմ-
նոցըն դասս բազմութեան. ըղա
հնչմամբ երգով քաղցըր ձայնիւ փա-
ռաւորեսցուք. օրհնեալ։

Գիրք Ե— ող— Սաղմոս։

Ալէ''. Ալէ''։ Տէր Աստուած մեր երևեցաւ մեզ, արա-
րէք տօնս ուրախութեան կանխաւ մինչև յանկիւնս սե-
ղանոյ։

Սրբասացութիւն։

Հրեշտակային կարգաւորութեամբ լցեր Աստուած զքո
սուրբ զեկեղեցի. հազարք հազարաց հրեշտակապետք
կան առաջի քո. և բիւրք բիւրուց հրեշտակք պաշտեն
զքեզ Տէր. և 'ի մարդկանէ հաճեցար ընգունիլ զօրհ-
նութիւն ձայնիւ խորհրդականաւ, սուրբ, սուրբ,
սուրբ տէր զօրութեանց։

Տաղ

Նստեալ յաւանակի նորոյ ըստ Զաքարիայ սրբոյ. ման-
կունք ը՟դ առաջ ելին ձայնիւ հրճուանաց երգով։
Ոստս արմաւենեաց առեալ, տերև ձիթենեաց բերեալ,
ծերքըն գոչէին ընդ տղայսն, վերին զօրացն երգակ-
ցեալ։

# ԿԱՐԳ

## ԾԱՂԿԱԶԱՐԴԻ ԵՐԵԿՈՑԵԱՆ

Նախ գիրք Ե. տող. Սաղմոս։

Ալէ''. Ալէ''։ Տէր 'ի տաճար սուրբ իւրում, Տէր յեր-
կինս յաթոռ իւրում։

Աւետարան. Ե. տող.

Շար. Որ վերօրհնիս յաթոռս''։ Տե. երե. 169։

Որթի

Շար. Թագաւոր գոլով քո''։ Տե. երե. 171։

Որթի

Շար. Յորժամ եկն Յիսուս։ Տե. երե. 171։

Որթի

Շար. Զգալուստ քո Քրիստոս''։ Տե. երե. 172։

Որթի

Շար. Ի յարութեան յաւ''։ Տե. երե. 173։

Ալէ''. Ալէ''։ Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց և ե-
տուր ուրախութիւն սրտից մերոց։

Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած ըստ արդարու-
թեան, 'ի նեղութենէ ինձ անդորր արարեր. ողորմեա
ինձ և լուր աղօթից իմոց։

Որդիք մարդկան մինչև յե՞րբ էք խստասիրտք. ընդէ՞ր
սիրէք զնանրութիւն և խնդրէք զստութիւն։

Ծաներուք զի սքանչելիս արար Տէր սրբոյ իւրում, և
Տէր լուիցէ ինձ 'ի կարդալ իմում առ նա։

Բարկանայք և մի մեղանչէք, զոր խնչ ասէք 'ի սիրտս ձեր, յանկողինս ձեր զղջացարուք։

Մատուցէք պատարագս արդարութեան և յուսացարուք 'ի Տէր։

Բազումք ասէին թէ ո՛ ցուցցէ մեզ զբարութիւն Տեառն. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց և ետուր ուրախութիւն սրտից մերոց։

Ի պտղոյ ցորենոյ գինւոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա։

Խաղաղութեամբ յայս և 'ի սոյն ննջեսցուք և զարթիցուք. զի դու Տէր միայն առանձին յուսով քով բնակեցուցեր զմեզ։

Աւետարան. Ե— ող— Անդաստան։

Աղ— Խոնարհեցո Տէր'': 6 տուն.

Շար. Ուրախ լեր եկեղե'': Տե— Երե— 175։

Ոչ ոք նման է քեզ յԱստ'': 6 տուն։

Շար. Խնդա յոյժ դուս'': Տե— Երե— 176։

Աստուած անօրէնք յարեան'': Ցվերջ։

Շար. Զուարճացիր և'': Տե— Երե— 176։

Փառք Հօր'': Այժմ և միշտ'':

Ապրեցո զիս Տէր'': 14 տուն։

Շար. ԶՔրիստոս թագա'': Տե— Երե— 176։

Տէր կարգացի'': 10 տուն։

Շար. Ընդառաջ ելեալ'': Տե— Երե— 176։

Զայնիւ իմով ես'': 8 տուն։

Շար. Միաբանական'': Տե— Երե—։ 176։

Փառք Հօր'': Այժմ և'':

Քարոզ. Ասասցուք ամենեքեան'':

Սուրբ Աստուած որ եկիր և գալոց ես'':

Համբ. «Այսօր ընդ հրակերպեան''»։ Տե— Երե— 180։

Աղօթք. Հայր գթած բա'':

Այլ Սաղմոս 'ի Թիւ։

Օրհնեալ որ գալոց ես յանուն Տեառն և օրհնեցաք զքեզ 'ի տանէ Տեառն։
Խոստովան եղերուք Տեառն, զի բարի է, զի յաւիտեան է ողորմութիւն նորա։
Ասասցէ տունն Իսրայէլի, զի յաւիտեան է ողոր"։
Ասասցէ տունն Ահարօնի, զի յաւիտեան է ողոր"։
Ասասցեն երկիւղածք Տեառն, զի յաւիտեան է ողոր"։
Ի նեղութեան իմում ես առ Տէր կարդացի և լուաւ ինձ յանդորր։
Տէր է իմ օգնական և ես ոչ երկեայց, զի՞ արասցէ ինձ մարդ։
Տէր է իմ օգնական, և ես տեսից 'ի թշնամիս իմ։
Բարի է յուսալ 'ի Տէր, քան յուսալ 'ի մարդիկ. բարի է յուսալ 'ի Տէր, քան յուսալ յիշխանս։
Ամենայն ազինք շրջեցան զինև, և անուամբ Տեառն յաղթեցի նոցա։
Շրջելով շրջեցան զինև և պաշարեցին զիս 'ի միասին և անուամբ Տեառն վանեցի զնոսա։
Ի մերժելն դրդուեցայ և եղէ մերձ 'ի գլորիլ, և Տէր ընկալաւ զիս։
Զօրութիւն իմ և օգնութիւն իմ Տէր, և եղև ինձ 'ի փրկութիւն։
Ձայն ցնծութեան փրկութեան 'ի յարկս արդարոց։
Աջ Տեառն արար զօրութիւն, աջ Տեառն բարձր արար զիս, և աջ Տեառն արար զօրութիւն։
Ոչ մեռայց, այլ կեցից և պատմեցից զգործս Տեառն։
Խրատելով խրատեաց զիս Տէր և 'ի մահ ոչ մատնեաց։

Աղօ. Տարական ԲԾ.

Շնորհեա մեզ տէր արթնութիւն ընդ իմաստուն կուսանացն. և զհոգւոյ մերոյ լապտերս պայծառացո։ Երկնչիմք 'ի քէն տէր զարհուրեմք 'ի պատասխանւոյն, զամենն ասելով եթէ ոչ գիտեմ ըզձեզ։ Յորժամ գաս փառօք հօր դատել ըզտիեզերս ամենայն, շնորհեա և մեզ տէր կալ 'ի յաջմէ քումմէ։ Բացցի մեզ դուռն ողորմութեան երկնաւոր փեսային. և մտցուք 'ի յառագաստ ընդ իմաստուն կուսանսն։ Ճաշակեսցուք ընդ առաջ փեսային և մտցուք 'ի յառագաստ նորա. զի մի մնասցուք արտաքս որպէս յիմար կուսանսն։ Պայծառացին լապտերք հոգւոց մերոց և բազմեցուսցես ըզմեզ ընդ հրաւիրեալսն 'ի կոչումն արքայութեան երկնից։

Բա՛ց մեզ Տէր, բա՛ց մեզ Տէր, բա՛ց մեզ Տէր զդուռն ողորմութեան, որ ողբալով կարդամք առ քեզ։

Ո՞վ են սոքա զի բացից"։
Ոչ թէ միայն արդարք մտանեն"։
Զի սա է դուռն երկնից"։
Արժան և ճշմարիտ են այդոքիկ"։

Այս Տարական Բկ։

Իմաստութեան կուսանքն պատրաստեալ իւղ լապտերաց ելին ընդ առաջ Երկնաւոր փեսային վառեալ լապտերօք։ Իսկ յիմարաց կուսից ունայնացեալք ի յիւղոյ, անպատրաստ գտան դատարկեան փեսային շիջեալ լապտերօք։ Վասն որոյ և մեք պատրաստեսցուք իւղ հոգևոր, զի մտցուք ի յառագաստ անմահ փեսային վառեալ լապտերօք։

Յոյս իմ ես դու տէր քաւիչ յանցանաց իմոց. մի անտես առներ ըզբղխումն արտասուաց իմոց. ողոր-

մեա՛ ի՛նձ աստուա՛ծ ։ Ա՛ռ քե՛զ ա-
պա՛ւինեցա՛յ ո՛րպէս զա՛նառակ ո՛րդին․
Հա՛յր մե՛՞ղայ յե՛րկինս և առա՛ջի՛
քո՛․ ո՛ղորմեա ։ փ՛րկեա՛ զի՛ս ա՛ստը-
ուա՛ծ ՚ի՛ բազում մեղա՛ց իմոց, ա՛րա՛
ա՛րժա՞նի քո՛յին սուրբ ա՛րքայու-
թեա՛նդ, ո՛ղորմեա՛ ։

Մե՛ղք իմ բա՛զում են յո՛յժ, ծա՛-
նըր են քան զա՛ւազ ծո՛վու․ քա՛նզի
քե՛՛զ միա՛յնոյ մեղա՛յ․ ո՛ղորմեա՛։ Բա՛ց
տէ՛ր ըզդուռն ո՛ղորմո՛ւթեան․ որ ող-
բալով կա՛րդամ առ քեզ քա՛նզի քե՛՛զ
միա՛յնոյ մեղա՛յ․ ո՛ղորմեա ։ Հե՛ղ յի՛ս
զգըթո՛ւթիւնըդ քո բազո՛ւմողորմ և՛
մարդասէր․ քա՛նզի քե՛՛զ միա՛յնոյ
մեղա՛յ․ ո՛ղորմեա ։

« Բաց մեզ՝՝։ »

Այս տեսանեմք զՏէրն մեր Քրիստոս՝՝։
Գին եմք անապական արեան՝՝։
Ա․․․ Շարական Բծ ։

Թագաւոր փառաց քեզ սպասեսցուք պատրաստեալք արժնութեամբ ընդառաջել, որ գաս 'ի դատել զերկիր։ Անաղօտ վառեալ լապտերըք Հաւատոյ ընդ դասս իմաստուն կուսանացըն. մըտանել 'ի յառագաստ ընդ երկնաւոր փեսային։ փութասցուք կանխեալ յառաջ քան ըզձայն աստուածային բարբառոյն. զի մի մնասցուք արտաքս ըստ չիջման հինգ կուսանացն։

« Բաց մեզ՚՚ »

Փողն ահաւորին Աստուծոյ՚՚։
Ահա ես և մանկունք իմ զորս՚՚։
Ձայն արարչին Աստուծոյ գոչէ՚՚։
Բացէք ինձ զդրունս արդարութեան՚՚։

Այլ Տարական։ Դկ.

Զողորմութեան քո զդուռըն բաց մեզ տէր. և արժանի արա զմեզ լու-

սեղէն յարկաց քոց ընդ սուրբըս քո։ Ի պատրաստեալ քո օթեւանըս սըր-բոց քոց. ընկալ և ըզմեզ փրկիչ յոր-դէ գրութիւն 'ի դպրութեան կե-նաց։ Ի նըստին քո յատենի դատա-ւոր ահեղ. խնայեա յարարածըս քո բարեխօսութեամբ և աղօթիւք սուրբ ճգնաւորացն։

Որթի. Աւետարան և այլ կեցո։

# ԿԱՐԳ

## ԱՒԱԳ ՀԻՆԳՇԱԲԹԻ ԱՌԱՒՕՏՈՒ

*Տէր զի բազում եղն. Տէ. յէջ 1-50 ։*
*Կանոնագլուխ Գկ. Արարի իրա. Տէ. յէջ 23*

Օրհ. Գյ. Վերաձգողն երկնից մըշտընջենաւոր Հօր որդին ներգործեալ խմուլս 'ի վեր քան ըղձրաշս. ծառայի առեալ ընկերիգ անկողոպտելի աստուածութեամբն։ Բանին զմաքրեցելոցն ջրով զոտըս լուանայ. զի զխոնարհութիւն 'ի նոսա տըպաւորեսցէ. երրորդութեան գովութեամբն։ Բաշխէ զմարմին իւր եւ զարիւն, ընդ որ ուխտ անուանեալ. և յիշատակ կամաւոր մահուանն, մերձեցելոցս 'ի նա սրբութեամբ։

Աղբիւր լուսոյ եւ ճառագայթ անշիջանելի լոյս. որ լըւանալ յանձըն առեր զոտս աշակերտացն. մաք-

րեան 'ի մէնջ ըզմէգ խաւարին խորհրդոյ և լուսաւորեա ըզմեզ։ Որ մարմնով և արեամբ քո ցուցէր ըզթողութիւն մեղաց, որ միշտ պատարագիս 'ի մեզ անծախապէս. մաքրեա։ Որ քաւիչ զայս նոր ուխտ ցուցեր յետ առաջնոյն քո մահացելոց 'ի ճաշակմանէ նախահօրն.

մաքրեա 'ի մէնջ ըզմէգ։

Որ եդ 'ի յերկինս և 'ի վերայ երկրի, այսօր յանձն առեր լուանալ զոտս աշակերտացն, և զիս լուա քրիստոս 'ի մեղաց իմոց։ Որ բարեբանիս յիմանալի զուարթնոցն, հաճեցար մարմնով պատարագիլ. արա և զիս արժանի աստուածային շնորհիդ։ Որոյ աթոռ քերովբէ 'ի վերնատունըն բազմեցար. կենարար բաժակաւդ ըզմեզ փրկեցեր. փըրկեա եւ զիս յաւիտենից 'ի հրոյն։

Քրիստոս մատնուած. որ վասն
մեր խոնարհեցար 'ի կամաւոր չար-
չարանս. լուացեր զոտս աշակերտացն
այսօր 'ի սուրբ վերնատունն. աղա-
չեմք փրկիչ ողորմեա։ Որ կազ-
մեցեր սեղան խորհրդոյ, և արքու-
ցեր յանմահական բաժակէն. որ ըր-
բոց քոց առաքելոցն այսօր 'ի սուրբ
վերնատունն. աղա։ Մաքրեա զմիտս
և զխորհուրդս, զի և մեք հաղոր-
դեսցուք սրբութեամբ ընդ սրբոց
քոց առաքելոցն այսօր 'ի սուրբ։

Որ վասն մեր յերկրի երևեալ
զամենայնըն կատարեցեր ըստ օրի-
նացն. այսօր կատարումն ըստուե-
րական տօնիցն. որդի աստուծոյ
ողորմեա։ Մարդ ճշմարիտ և զա-
ւըն անարատ որ դատապարտեցեր
զմեղս 'ի մարմնի այսօր խոնար-
հեցար 'ի լուանալ զոտս աշակեր-

տացն · որդի՛ց։ Բա՛ն հօր և քահանա-
յապետ ճշմարիտ որ զաշխարհա-
կեցոյց ըզմարմին և զարիւնդ քո
բաշխեցեր յաւուրքեալսն · այսօր
հաղորդին հողեղէնք աստուածային
խորհրդոյդ, որդի աստու։

Յորժէ սարսեալ սերովբէքն ոչ
իշխէին նայիլ · այսօր ի ծառայի
կերպարանս երևեալ նախնայուիտ-
եան բանն · օրհնեցէք ըզնա հօ-
գեւոր երգով։ Որ զըստուերականն
այսօր ճշմարտապէս կատարեաց,
լուանալով զոտս աշակերտացն 'ի
'ի պատրանաց Թըշնամւոյն · օրհ։
Այսօր վերըստին նորոգեցաք 'ի յան-
նիծից նախահօրն, ճաշակելով
ըզմարմին եւ զարիւն որդւոյն աս-
տուծոյ · օրհ ·

Քարոզ Վասն ողջնելոյ. Տես յէջ 53.

Ալէլուիա, ալէլուիա, ալէլուիա։

Լուացի՛ց սրբութեամբ զձեռս իմ և շուրջ եղէց զսեղանո՛վ քով Տէ՛ր։ Տէ՛ր սիրեցի զվայելչութիւն տան քո, և զտեղի յարկի փառաց քո՛ց։

Ալէ. Պատրա՛ստ արարեր առաջի իմ զսեղան. ակն յանդիման նեղչա՛ց իմո՛ց։ Օծե՛ր իւղով զգլուխ իմ, բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զի՛ս։

Փառք եւ երկլր. Այժմ և միշտ եւ։

Հըդ. Բյ. Լո՛յսդ ՚ի հայրական ծոցոյ ծագեալ հալածելո՛վ զխաւար մեղա՛ց կենարարըդ յայտնեցեր ա՛յսօր զխորհուրդ ընտրեալ քո աշակերտացն. ծրհնեալ եկեալդ ՚ի փրկութիւն մեզ. աստուած հարցըն մերո՛ց։ Զոր օրհնեն դա՛սք լուսեղէնք՝ զոտըս տաժանեալըս լըւացե՛ր, զանիծիցըն մերկացեալ ՚ի մէնջ ծածկոյթ, ըզգե՛ստ ծառայի սփածար. օրհ։ Անապականութեան աղբի՛ւր, զկենդանարարըդ բաշխեցեր զմարմինըդ քո. նորոգելով

ըզմահացեալըն յանցանօք 'ի պատ-
րանաց թըշնամւոյն. օրհնեալ եկ։

է. Եցէք. Ճառագայթ փառաց
հօր և պատկեր բարերարութեան.
որ ըզգեցաւն այսօր ըզգեստ ծառա-
յական կերպի. ըզնա ամենայն ա-
զինք օրհնեցէք հոգեւոր երգով։ Որ
անճառ խոնարհութեամբ 'ի մաքրու-
մըն ոտից աշակերտացն, ըզմարդկա-
յին ազգի գընացս ուղղեաց 'ի յեր-
կինս. ըզնա։ Որ բաշխմամբ կենդա-
նարար խորհրդոյ անապական ճա-
շակմամբն հրաւիրեաց ըզմեզ յերկ-
նից արքայութիւնն. ըզնա ամենայն
ազինք օրհնեցէք հոգևոր երգով։

Մեծ. Զքեզ հայր յառաջ։ Տես յէջ 126

Ող. Գյ. Արկողդ ըզլոյս որպէս զօ-
թոց. այսօր անճառ խոնարհութեամբ
'ի վերնատունըն խորհըրդոյ ըզգեստ

ծառայի ըսփա ծանիլ յանձն առեր.
ծորհնեմք զեկեալդ 'ի կամաւոր չար-
չարանս։ Որում երկրպագեն գունք
հրեշտակաց խոնարհեցար 'ի լուանալ
զոտըս հողեղէնս, բժըշկել սոքօք ըզ
զարշապարս նախահօրն. բըժըշկեա
զհոգւոյ իմոյ զհիւանդութիւն։ Որ
'ի խորհուրդըս փրկականս եկե-
ղեցւոյ բաշխեցեր աշակերտացն ըզ-
մարմինըդ քո, նորոգելով ըզմահաց-
եալըն 'ի ճաշակմանէ. հաղորդըս
այսմ ընկալ ըզմեզ միայն մարդասէր։

Տէր. Որ անըսկիզբըն յէութեանդ
ես ստորըւած, այսօր ըզգեցար ըզ-
գեստ հողեղէն ծառայի, ծածկե-
լով ըզմերկութիւն նախահօրն. օրհ-
նեալ եկեալդ 'ի փրկութիւն ազգի
մարդկան։ Որ վերօրհնիս 'ի հրեղէն
քերովբէից, այսօր եկիր կամաւ 'ի
վերնատունըն խորհըրդոյ. լուացեր

զաշակերտսըն յօրինակ վասըն մեր·
օրհ: Որ յաթոռ փառաց նըստիս
ընդ Հօր, այսօր բազմիլ ընդ աշա-
կերտսըն յանձն առեր, բաշխելով
ըղձարմին և զարիւնքո սուրբ· օրհ-
նեալ եկեալդ:

Առաւօտու Երգ

Որսացա՛ն զանձն արդարոյ, և զարիւն անբիծ պարտաւոր առնէին:

Եղև Տէր ապաւէն իմ. Աստուած օգնական յուսոյ իմոյ:

Քարոզ. Փառաւորեսցուք: Սուրբ Աստուած որ եկիր եւ.

Մնկ. Ակ. Այսօր կանգնեցաւ աւա-
զան մըկըրտութեան 'ի թողութիւն
մեղաց մերոց: Այսօր տէրըն մեր
լըւանայր զոտս աշակերտացն և պատ-
ուիրէր զայս ասելով: Մի ոմն 'ի
ձէնջ եղբարք, մատնելոց է զիս 'ի
մահ, և որոշի յաշակերտացդ: Զայն
լըւեալ պետրոսի ակնարկէր առ յով-

Հաննէ՞ս հարցանել թէ՛ ո՛վ իցէ՛։
Բա՛նըն զոր ա՛սաց յիսո՛ւս տը՛րտմե-
ցույց զիւր զաշա՛կերտսն, և խու՛մբե-
ցա՞ն ամե՛նեքեա՛ն։

Աղօթք, Սուրբ ես Տէր։ Ապա Սաղմոս։

Կց. Որսացան զանձն արդարոյ. և զարիւն անբիծ պարտաւոր առնէին։

Փխ. Աստուած վրէժխնդիր. Տէր Աստուած վրէժխնդիր յայտնեցար։

Բարձր լեր որ դատես զերկիր. հատո՛ զհատուցումն ամբարտաւանից։

Մինչեւ յե՞րբ մեղաւորք Տէր, մինչեւ յե՞րբ մեղաւորք պարծեսցին։

Բարբառեալ խօսէին զանիրաւութիւն. խօսեցին ամենեքեան. ոյք գործեն զանօրէնութիւն։

Զժողովուրդս քո Տէր խոնարհ արարին. և զժառանգութիւն քո Տէր չարչարեցին։

Զայրին և զպանդուխտն սպանին, զորբսն կոտորեցին և ասացին. ոչ տեսանէ զայս Տէր, եւ ոչ 'ի միտ առնու Աստուած Յակոբայ։

Իմացարուք անզգամք ժողովրդոց եւ անմիտք, մինչեւ յե՛րբ ո՛չ առնուք 'ի միտ։

Որպէս զի թէ որ տնկեաց զունկն, ինքն ո՞չ լուիցէ, կամ որ ստեղծ զակն, ինքն ո՞չ տեսանիցէ.

*Որ խրատէ զազգս, որպէս թէ ոչ յանդիմանեսցէ, որ ուսուցանէ մարդոյ զգիտութիւն, Տէր ճանաչէ զխորհուրդս մարդկան, զի են ընդունայնք։*

*Երանի մարդոյ, զոր խրատես դու Տէր, եւ յօրինաց քոց ուսուցանես դու նմա։*

*Ցածուցանես դու նմա զաւուրս չարութեան, մինչեւ փորեսցի խորխորատ մեղաւորի։*

*Ո՛չ մերժէ Տէր զժողովուրդս իւր. և զժառանգութիւն իւր ո՛չ առնէ անտես։*

*Մինչև դարձցին իրաւունք յարդարութիւն, ընկալցին զնա ամենեքեան, որք ուղիղ են սրտիւք։*

*Ո՞ յարիցէ ընդ իս 'ի վերայ չարաց, կամ ո՞ հաւասարեսցի ինձ 'ի վերայ այնոցիկ, որք գործեն զանօրէնութիւն։*

*Եթէ ոչ Տեառն Աստուծոյ օգնեալ էր ինձ. փոքր միւս ևս բնակեալ էր անձն իմ 'ի դժոխս։*

*Թէ ասէի. թէ ահա սասանեցան ոտք իմ, ողորմութիւն քո տէր օգնէր ինձ։*

*Ըստ բազում ցաւոց սրտի իմոյ մխիթարութիւն քո ուրախ առնէր զանձն իմ։*

*Մի հաւասարեսցի քեզ աթոռ անօրէնութեան, ո՛ պատճառէ զվաստակս ընդդէմ հրամանի։*

*Որսացան զանձն արդարոյ և զարիւն անբիծ պարտաւոր առնէին։*

*Եղեւ Տէր ապաւէն իմ, Աստուած օգնական յուսոյ իմոյ։*

*Հատուսցէ նոցա Տէր ըստ անօրէնութեան նո-*

ցա և ըստ չարութեան նոցա կործանեսցէ զնո-սա Տէր Աստուած մեր։

Ալէ . Ալէ. Ալէ . Որթի՝ Աւետարան։

Աղօ Կեցո։

## ԿԱՐԳ

## ԵՐՐՈՐԴ ԺԱՄՈՒ

Նախ «Ողորմեա», եւ ապա

Երգ

Օրհնեմք զքե՛զ Հայր անսկի՛զբն էից էա՛կ ՚ի յանգոյից, բարձեր ձեռօք նիւթ ՚ի հողոյ և ստեղծեր մարդ ՚ի պատկե՛ր քո, զլուխն ոտի՛ց խոնար-հեցաւ զի զպատուիրան քո մոռացա՛ւ, դարձեալ ասեմք ըստ անառա՛կին, թէ Հայր մեղայ՛ քեզ ՚ի յերկի՛նս։ Երկնաւորա՛ցն անքննելի եղեր մարդ-կան տեսա՛նելի· զգեցար պատկեր հողեղի՛նի պատկերըդ Հօր ա՛նփոփոխ-

լի. եղե՛ր յերրորդ ժամ 'ի խաչին վասն ադամա՛յ նախաստեղծին, ընդ աւազակի՛ն քում խա՛չակցին արժանացո ըզմե՛զ դրախտի՛ն: Թագաւո՛ր Թագաւո՛րաց առատաքուղխ հոգի շնորհաց. ժողովելոցն 'ի վերնատան առաքելոցն երկոտասան, 'ի հրոյ լեզո՛ւս երեւեցար յոգիս նոցա՛ վերանստա՛ր, լուր յանուն քո ժողո՛վելոցս էջ և առ մեզ յերրո՛րդ ժամո՛ւս:

Մաղթ. Յամենայն ժամու

Ապա Սաղմոսերգութիւնք:

Առ քեզ տէր համբարձի Գլ. ԻԳ.
Դատ արա ինձ տէր, զի » ԻԵ.
Տէր լոյս իմ և կեանք » ԻԶ.
Փառք Հօր։ Այժմ եւ. Եւ ես խաղաղութեան։
Առ քեզ Տէր կարդացի. Գլ. ԻԷ.
Մատուցէք Տեառն » ԻԸ.
Բարձր առնեմ զքեզ » ԻԹ.
Փառք Հօր։ Այժմ և։ Եւ ես խաղաղութեան։
Ի քեզ Տէր յուսացայ Գլ. Լ.
Երանի ում թողութիւն « ԼԱ.
Փառք Հօր։ Այժմ եւ։ Եւ ես խաղաղութեան։
Մի նախանձիր ընդ Գլ. ԼԶ:

Փառք Հօր։ Այժմ և։ Եւ ես խաղաղութեան։

Տէր մի սրտմտութեամբ Գլ. ԼԷ.
Ասացի թէ պահեցից » ԼԸ.
Համբերելով համբերի » ԼԹ.

Փառք Հօր։ Այժմ և։ Եւ ես խաղաղութեան։

Երանի որ խորհի զաղ. Գլ. Խ.
Որպէս փափաքի եղ. » ԽԱ.
Դատ արա ինձ Աստուած » ԽԲ.

Փառք Հօր. Այժմ և։ Եւ ես խաղաղութեան։

Ի նեղութեան իմում Գլ. ՃԺԹ.

Փառք Հօր. Այժմ և միշտ։

Տաղ. Դկ. Զարհուրեալ դողացայ և ամենամեղ անձն իմ յահեղ քոց դատաստանաց, յաններելի տանջանաց։

Ասա Եւ ես խաղաղութեան։

Դարձեալ Ի նեղութեան։ Փառք Հօր։

Քանզի կամաւ մերձեցայ ՚ի մեղս մեծամեծս. արդ կայ և մնայ ինձ աններելի պատուհասն։

Ասա Եւ ես խաղաղութեան։

Դարձեալ Ի նեղութեան։ Փառք Հօր։

Ա՛րդ անկեա՛լ աղաչեմ փըր-կի՛չ և՛ բարերար. խնայեա՛ յիս ՚ի մեղուցեալս և՛ ողորմեա՛ ինձ բազ-մամեղիս։

Ասա Տէր ամենակալ. Փառք Հօր։

Ծար. Դկ. Ամենակալ քաւեա ըզ մեղս իմ, զի աստուած ես ապաշ-խարողաց։

Դարձեալ Տէր ամենակալ

Եւ զհոգիդ սուրբ մի հաներ յինէն. զի աստուած ես ապաշ-խարողաց։

Դարձեալ Տէր ամենակալ

Եւ փըրկեա զիս յահագին հը-րոյն. զի աստուած ես ապաշխարողաց։

Ասա Աղաչեմք և խնդրեմք։

Ասա Քարոզ. Եկեալքս։ Աղօթք. Տէր Աստուած։

## Ձ՟ն՟է Սաղմոս։ Գլ. Ծ.

Կց. Ցօղեա յիս մշտկաւ և սուրբ եղէց. լուա և քան զձիւն սպիտակ եղէց։

Փխ. Ողորմեա ինձ Աստուած ըստ մեծի ողորմութեան քում, ըստ բազում գթութեան քում քաւեա զանօրէնութիւնս իմ։

Առաւել լուա զիս յանօրէնութենէ իմմէ, եւ և 'ի մեղաց իմոց սուրբ արա զիս։

Զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ, եւ մեղք իմ առաջի իմ են յամենայն ժամ։

Քեզ միայն մեղայ Տէր, և չար առաջի քո արարի.

Որպէս արդար եղիցիս 'ի բանս քո, և յաղթող 'ի դատել դաս։

Անօրէնութեամբ յղացայ և 'ի մեղս ծնաւ զիս մայր իմ։

Դու Տէր զճշմարտութիւն սիրեցեր. զանյայտս և զծածկեալս իմաստութեամբ քով յայտնեցեր ինձ.

Ցօղեա յիս մշտկաւ և սուրբ եղէց. լուա եւ քան զձիւն սպիտակ եղէց։

Լսելի արա ինձ Տէր զցնծութիւն և զուրախութիւն. և ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք։

Դարձո՛ զերեսս քո 'ի մեղաց իմոց և զամենայն անօրէնութիւնս իմ քաւեա յինէն։

Սիրտ սուրբ հաստատեա յիս Աստուած և հոգի ուղիղ նորոգեա 'ի փորի իմում.

*Մի ընկենուր զիս Տէր յերեսաց քոց և զՀոգի քո սուրբ մի հաներ յինէն։*

*Տուր ինձ ցնծութիւն փրկութեան քոյ և հոգ-ւով պետութեան քոյ հաստատեա զիս։*

*Ուսուցից անօրինաց զճանապարհս քո և ամ-բարիշտք առ քեզ դարձցին։*

*Փրկեա զիս յարենէ Աստուած Աստուած փըր-կութեան իմոյ. ցնծասցէ լեզու իմ յարդարու-թեան քում։*

*Տէր եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո։*

*Թէ կամեցեալ էիր պատարագս մատուցա-նէաք, բայց դու ընդ ողջակէզս իսկ ո՛չ հա-ճեցար։*

*Պատարագ Աստուծոյ հոգի խոնարհ. զսիրտ սուրբ և զհոգի խոնարհ Աստուած ոչ արհա-մարհէ։*

*Բարի արա Տէր կամօք քովք Սիօնի. և շի-նեսցին պարիսպքն Երուսաղէմի։*

*Յայնժամ հաճեսցիս ընդ պատարագս ար-դարութեան. յորժամ ուխտից պատարագս հան-ցեն 'ի սեղան քո զուարակս։*

*Գիրք Ե— ող— Սաղմոս։*

*Որպէս փափաքի եղջերու յաղբերս ջուրց, այն-պէս փափաքի անձն իմ առ քեզ Աստուած։*

*Ծարաւի է անձն իմ առ քեզ Աստուած հզօր և կենդանի. ե՞րբ եկից երեւեցայց երեսաց Աստուծոյ։*

Եղեն ինձ արտասուք իմ կերակուր 'ի տուէ և 'ի գիշերի, և այն զի ասէին ցիս զօրհանապազ թէ ո՞ւր է Աստուած քո։

Զայս որպէս յիշէի, տառապէր յիս անձն իմ, քաջալերէի զի մտից ընդ յարկաւ սքանչելեաց տանն Աստուծոյ։

'Ի ձայն ցնծութեան խոստովանութեան և 'ի ձայն բարեկենդանութեան։

Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա առ Աստուած, խոստովանեա նմա, փրկիչ երեսաց իմոց Աստուած է։

Անձն իմ յոյժ խռովեցաւ, վասն այնորիկ յիշեցի զքեզ յերկրէն Յորդանանու, 'ի Հերմոնէ լեռնէ փոքուէ։

Խորք խորոց կարդացին առ քեզ ի ձայն սահանաց քոց։

Ամենայն զբօսանք քո և ալիք քո անցին 'ի վերայ իմ։

'Ի տուէ պատուիրեաց Տէր զողորմութիւն իւր, 'ի գիշերի զօրհնութիւն նոր, և աղօթք իմ առ Աստուած վասն կենաց իմոց։

Ասացի Աստուծոյ ընդունող իմ ես, ընդէ՞ր մերժեցեր զիս, ընդէ՞ր տրտում գնամ ես, ի նեղել թշնամւոյ իմոյ։

Ի փշրել ոսկերաց իմոց նախատեցին զիս թշնամիք իմ, ասել ցիս զօրհանապազ թէ ո՞ւր է Աստուած քո։

Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ, կամ ըն-

դէ՞ր խռովես զիս . յուսա առ Աստուած, խոստովանեա նմա, փրկիչ երեսաց իմոց Աստուած է ։

Աւետարան. Ե– ատ– Քարոզ ։

Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց ամենակալ Տէր Աստուած մեր կեցո և ողորմեա ։

Աղօթք . ատ– Սաղմ. « Խոստովան եղե''. »
մինչեւ « Բացէք » Տե– երե– 185 ։

Շար . « Զողորմութեան քո . » Տե– երե– 189։

Փոխ . « Աղաղակեցէք առ Տէր'' ». Տե– երե– 97:
Աղօթք Ե– ատ– « Կեցո » ։

## ԿԱՐԳ

## ԿԻՍԱՒՈՒՐ ԺԱՄԵՐԳՈՒԹԵԱՆ ԵՒ Ս. ՊԱՏԱՐԱԳԻ

Նախ Ճաշու « Ողորմեայք » [illegible] ։
Խոնարհեցո ։ Ապրեցո ։

Մեսեդի . « Լուացից· Տէր սիրե''։ »
Գիրք Ե– ատ– « Սաղմոս ԾԳ .

Կց. կակուղ էին բանք նոցա քան զձէթ , և ինքեանք որպէս սլաք ։
Փխ. Ունկնդիր Աստուած աղօթից իմոց, և մի՛ անտես առներ զխնդրուածս իմ ։

Նայեա առ իս և լուր ինձ, զի տրտմեցայ ես 'ի ձանձրանալ իմում և խռովեցայ։

'Ի ձայնէ թշնամւոյն և ի նեղել մեղաւորին խոտորեցան յիս անիրաւութեամբ. բարկութեամբ ոխս պահէին ինձ։

Սիրտ իմ խռովեցաւ յիս. և երկիւղ մահու անկաւ 'ի վերայ իմ։

Ահ և դողումն եկն 'ի վերայ իմ և ծածկեաց զիս խաւար։

Ասէի տա՛յր ոք ինձ զթեւս որպէս զաղաւնւոյ. զի թռչէի վերանայի, և հեռացեալ դադարէի յանապատի։

Ակն ունէի Աստուծոյ, որ փրկէր զիս 'ի կարճմտութենէ, 'ի զայրանալոյ, և 'ի մրրկեալ նեղսրտութենէ։

Ընկլո՛ Տէր եւ բաժանեա զլեզուս նոցա. զի տեսի զանօրէնութիւն եւ զհակառակութիւն 'ի քաղաքի։

Ի տուէ եւ 'ի գիշերի շուրջ եղեն զպարսպօք նորա անօրէնութիւնք. չարիք եւ մեղք են 'ի մէջ նոցա. եւ ոչ պակասեաց 'ի հրապարակաց նոցա վաշխ եւ նենգութիւն։

Զի թէ թշնամւոյն նախատել էր, համբերէի արդեօք, կամ ատելւոյն մեծաբանեալ էր 'ի վերայ իմ, թաքչէի արդեօք ի նմանէ։

Իսկ դու մարդ հաւասար իմ առաջնորդ իմ եւ ծանօթ իմ։

Ապաքէն 'ի նոյն քաղցրացուցեր ինձ եւ քեզ

*կերակուր զի գնայաք միաբանութեամբ ՚ի տան Աստուծոյ։*

*Եկեսցէ մահ ՚ի վերայ նոցա, եւ կենդանւոյն իջցեն ՚ի դժոխս. զի չարութիւն է ՚ի բնակութեան նոցա եւ ՚ի մէջ նոցա։*

*Ես առ Աստուած կարդացի եւ նա լուաւ ինձ յերեկոյս, ՚ի վաղորդայն եւ ՚ի հասարակ աւուր։*

*Պատմեցի եւ ասացի. լուիցէ ձայնի իմում. փրկեսցէ խաղաղութեամբ զանձն իմ ՚ի մերձաւորաց իմոց. զի կարեօք հասին ՚ի վերայ իմ։*

*Լուիցէ Աստուած եւ խոնարհ արասցէ զնոսա, որ յառաջն է քան զյաւիտեանս։*

*Զի ոչ գոյր նոցա փոխանակ, և ո՛չ երկեան յԱստուծոյ։*

*Ձգեաց զձեռն իւր ՚ի հատուցանել նոցա եւ նոքա պղծեցին զօրէնս նորա։*

*Բաժանեցան ՚ի սրտմտութենէ երեսաց նորա. և եհաս ի սիրտս նոցա։*

*Կակուղ էին բանք նոցա քան զձէթ և ինքեանք որպէս սլաք։*

*Ընկեա ՚ի Տէր զհոգս քո, և նա կերակրէ զքեզ, և ոչ տայ յաւիտեան սասանութիւն արդարոյ։*

*Դու Աստուած իջուսցես զնոսա ՚ի գուբ ապականութեան. արք արիւնահեղք եւ նենգաւորք մի հասարակեսցեն զաւուրս իւրեանց. այլ ես ՚ի քեզ Տէր յուսացայ։*

Ալէ. ալէ. ալէ. որթի։ Աւետարան։ Աղօ

Ուղիղ եղիցին աղօթք իմ որպէս խունկ առա-
ջի քո Տէր։

Զերեկոյի աղօթս մեր ընկալ Տէր, և զտարա-
ծումն ձեռաց մերոց։

Քարոզ. « Աղաչեսցուք ։ » « Սուրբ Աստուած
որ եկիր և գալոց ես ։ »

Համբարձի. « Այսօր կանգնեցաւ. » Տե. երե. 198
Ձկնէ « Հայր գթած ։ «

Գիրք Ը. որդ. Սաղմոս։

Ալէ. Ալէ։ Պատրաստ արարեր առաջի իմ զսե-
ղան. ակն յանդիման նեղչաց իմոց։

Աւետարան. ապա Հաւատամք։ Տե. յեջ 76 ։

Սրբասացութիւն

Ո՛ր վերանը՛ստի՛ս 'ի կա՛ռըս հրա՛նիւ-
թըս քա՛ռա՛կե՛րպեա՛՛նս. անճա՛-
ռե՛՛լի բա՛նդ աստո՛ւա՛ծ. այսօր
իջեա՛լ 'ի՛ յերկնայնո՛ցըն վա՛սըն քո՛ ա՛-
րարածո՛ցս. յա՛նձն առե՛ր բա՛՛զ-
միլ ը՛նդ աշա՛՛կերտսն, և սերովբէ՛քն և քերովբէ՛քըն հիացեալ զա՛ր-

մանայի՛ն. և՛ պետութիւնք վերին
զօրա՛ցն սքանչացեա՛լ ա՛ղա՛ղա՛կէ՛ի՛ն
ասե՛լով, սո՛ւրբ, սո՛ւրբ, սո՛ւրբ
տէ՛ր զօրո՛ւթեա՛նց։

Աղօթք նախ քան զՀայր մերն։

Տաղ 'ի ժամ հաղորդութեան։

Եկայք մարդիկք ամենայն, մատիք առ Տէր սրբութեամբ,
Ճաշակեցէք և տեսէք, զի քաղցր է Տէր բարութեամբ.
Հացս այս մարմին Քրիստոսի, բաժակ արեան նոր ուխտի.
Ծածկեալ խորհուրդս այս յայտնի, Աստուած 'ի նմա երեւի։
Որք անմաքուր էք հոգւով, 'ի բաց կացէք դողալով,
Զի հուր կիզիչ է բոցով, զհոգին անարժան մարմնով։
Սա է որդին Աստուծոյ, որ ընդ աջմէ Հօր նըստի.
Եւ աստ միջտ պատարագի, բաշխի ընդմեզս աշխարհի։

## ԿԱՐԳ

## ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԵՐԳՈՒԹԵԱՆ ՈՏՆԱԼՈՒԱՑԻ

Նախ՝ Սաղմոս «Ցօղեա յիս» Փոխ «Ողորմեա.»
Տե՛ս Երե՛ս 205։

«Այսօր կանգնեցաւ աւազան.» Տե՛ս Երե՛ս 198։

Աղ․ Աղօթք․ Գիրք դարձեալ Աղօթք։

Աղ․ Սաղմոս «Պատրաստ արա։» Տե․ երե․ 211։

Աւետարան․ Աղ․ Քարոզ յոյնե․։

Քրդ․ Աստուած մե՛ծ և սքանչելագործ զօրութիւն, անեղանելի բնութիւն, որ ողորմութեա՛մբ հաճեցար առնել զարարածս ամենայն յոչընչէ՛, աղաչեմք։

Լուր Տէր և ողորմեա։

Զգեցե՛ր զվերնայարկս երկնից որպէս խորան 'ի վերայ ջուրց․ մածուցեալ հաստատութեամբ 'ի բնակութիւն անպարագրելի Աստուածութեանդ քոյ, և զամենա՛յն հրաշակերտս 'ի գովեստ անուանդ քում սրբոյ․ աղաչեմք։

Արարե՛ր քեզ սրբասաց զսերովբէսն և զքերովբէսն, զհոգեղէն և զհրեղէն աննիւթական բնութիւնս․ ընդ նոսի՛ն և 'ի հողեղինացս հաճեցար ընդունիլ փառաբանիչս եւ երկրպագուս ամենազօր տէրութեանդ քո՛յ․ աղաչեմք։

Եղե՛ր մարդ ճշմարիտ անճառելի ծագումն, եւ ճառագայթ անհասանելի․ անխմանալի՛ հօր և եկիր 'ի փրկութիւն մեզ մարդասէր․ աղա։

Եղե՛ր լրումն օրինաց և մարգարէից, եւ եկիր կամաւ 'ի վերնատունն խորհրդոյ․ լուացե՛ր զոտս աշակերտաց քոց անճառելի խոնարհութեամբդ․ աղաչեմք։

Ընկալ Տէ՛ր և այժմ զլուացումնս զայս, զոր ա-

ւանդեցեր մեզ 'ի յօրինակ խոնարհութեան. բա-
րեխօսութեամբ սրբուհւոյ մօր քոյ և միշտ կուսի
Մարիամու Աստուածածնին. աղաչեմք։

Ընկա՛լ Տէր և ողորմեա։

Աղաչանօք երջանիկ և նախընթաց կարապետի
քոյ Մկրտչին Յովհաննու ճգնաւորական հանդի-
սի. հեղմամբ արեան սրբոյն Ստեփաննոսի նա-
խասարկաւագին քոյ եւ առաջին վկային, մաղ-
թանօ՛ք ընտրելոց քոց առաքելոց և ամենայն
մաքրելոց անձանց, և մարտիրոսաց պսակաւորե-
լոցն 'ի քէն. խնդրեմք։

Յիշեա՛ Տէր և ողորմեա։

Եւ եւս առաւե՛լ գյորդորումն սիրոյ եւ զգործս
բարեաց պարգեւել մեզ խնդրեմք։

Տուր մեզ Տէր Աստուած։

Զանձինս մեր։ Ողորմեաց մեզ Տէր։

## ԳԱՆՁ

Այս խորհուրդ լցաւ, անդ գուշակեցաւ, աստ
կատարեցաւ։

Աստուած մարդացաւ, 'նդ օրինօք մտաւ, քա-
հանայացաւ։

Նոր խորհուրդ բացաւ, որ 'ի ծունկս անկաւ,
ղենջակ սփածաւ։

Եւ լուաց կարգաւ, զոտս նոցա կոնքաւ, մեզ
օրինակաւ։

Տէր քոյին շնորհաւ, լուա՛ զմեզ բաղկաւ, արբո՛ բաժակաւ։

Ահա ազատեա՛ զմեզ ՚ի մեղաց, քա՛ւիչ յանցանաց, աղաչեմք։

Լուր Տէր եւ ողորմեա։

---

Սիրտ իմ սասանի, սարսափ զիս ունի, վասըն Յուդայի։

Նա ո՛չ ամաչէ, և ոչ զարհուրի, սիրողն արծաթի։

Նոր սեղան դընի, և հաց բաղարջի, ՚ւ անապակ գինի։

Փրկիչըն բազմի, դասուք երջանկի ՚ի յերեկոյի։

Ջհացն ՚ի տիպ մարմնի, օրհնեալ ճաշակի, եւ տայ ամենի։

Զգինին արիւնի, նոր նըշան ուխտի և տայ ամենի։

Տէր իմ արժանի՛ արա զմեզ հացի, քո սուրբ սեղանի։

Ահա ազատեա՛ զմեզ ՚ի մեղաց, քաւիչ յանցանաց․ աղաչեմք։

Լուր Տէր և ողորմեա։

Որք որ փափաքին, ուտել զայն մարմին, որով սրբեսցին։

Խոնարհիլ պարտին, իւր յանցաւորքն ՚ստ օրինաց Փրկչին․

Թողուլ կամովին, զյանցանս 'ի սրտին զեօթա-
նասնեկին։
Իսկ որք ստամբակին, եդեալ օրինին, որ աստ-
ուածային։
Յետ աւազանին, թէ խոստովանին, կէս յախ-
տից քաւին։
Բայց թէ հաղորդին, 'ի հընդէն մէկին թողու-
թիւնք լինին։
Իսկ աստուածայի՞ն բնաւ ոչ սահմանին մեր բազ-
մօղորմին։
Ահա աղաւեա՛ զմեզ'ի մեղաց, քաւիչ յանցանաց.
աղաչեմք։

Լուր Տէր եւ ողորմեա։

Աստուածն ամենի՝ Միածին որդի. կամաւ Հօր
Հոգւոյն ճշմարտի. յերկիր խոնարհի։
Տէր Յիսուս խօսէր. Պետրոսի ձայնէր. դու այժմ
ոչ գիտես զայս խորհուրդ իմոյս՝ թէ վասն է՞ր։
Ընծայեցուք հոգւով. զնոյն ճաշակելով, փառք
Հօրըն տացուք և Հոգւոյն, Միածնի մարմնով։

Աղ՟ Աղօթք, Ե՟ աղ՟ Տեառնագրութիւն

«Օրհնեսցի եւ սրբեսցի ջուրս եւ իւղս այս։»

Ի ժամ լուացման ոտից, Շար. Վերաձգողն. Տե՟ յէջ 191։

Այսօր անճառ լուսոյն ծագ։ Տե՟ յէջ 221։
Զկնի Լուացման՝ Որթի. Աւետարան։ Աղ՟ Կեցո։

# ԿԱՆՈՆ

## ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹՈՒ ԳԻՇԵՐԻ

---

Տէր զի բազում եւայլն. Տե. յէջ 1—50։

Կանոնագլուխ դձ. « Օրհնեա անձն իմ զՏէր »։
Տե. յէջ 24։

Հետեւակ Տաղական դՅ։

Այսօր 'ի կատարումն աստուածային
ընթրեաց նոր ուխտի ճշմարտու-
թեան քո 'ի վերնատունն խոր-
հրդոյ տարամերժեալ յուդաս 'ի
հօտէն փրքու. ուստի և դու գառն
աստուծոյ դիմեալ կամաւ 'ի մահ
խաչին առ 'ի բառնալ ըզմեղս աշ-
խարհի. վասն որոյ խնայեա 'ի
մեզ քրիստոս կամաւոր քո չարչա-
րանօք։ Այսօր որ 'ի հրեղէն զօ-
րաց երկնից միշտ փառաբանեալ
երկրպագիս բանդ. աղօթէիր առ

Հայր մարմնով ընկալեալ ընդ հօր
ըզքո վասն իմ զպարզամտանս. ուս-
տի կամաւ կրելով զերկիւղ ՚ի հը-
րեշտակաց զօրանայիր զօրացուցիչդ
երկնաւորաց եւ երկրաւորաց.
վասն որոյ։ Այսօր յառաջ նըշա-
նակեալ հրամանըն քո կատարիւր
յաշակերտաց դաս. քանզի զհո-
վիւըդ քաջ հարեալ ցրուեցան հօտն
ըստ մարգարէին. որ եւ կապեցար
անկապելիդ ՚ի յաննայէ եւ ՚ի կայի-
ափայ դատապարտեալ. ՚ի ծառայէ
ապտակեցար եւ նախատանաց թուք
կերպարանըդ հօր ընկալար. վասն
որոյ։ Այսօր ըզվէմըն հաւատոյ շար-
ժեալ փորձողին խաբէութեան
մարտ. առ ՚ի քէն թողացուցեալ ըզ
մարդկային տըկարութիւնս յանդի-
մանելով. եւ առ յոյս դարձի
մեղաւորաց. որ դառնապէս ար-
տասուելովն ընկալաւ ՚ի քէն երիւք

Հարցմամբ սիրոյն զերկից ուրախացու-
թեանցն ըզբժըշկութիւն. ընդ նը-
միւն բժշկեալ ըզմեզ քրիստոս եւ
շնորհեամ մեզ արտասուս ապաշխա-
րութեան։

Այսօր զօր յերկնային. լուսեղինացն
ահիւ պատուեալ բանդ աստուած.
նսեմացեալ դամբ եբրայեցւոցն. զի-
մանալի լոյս ՚ի գիշերին ջահիւք և
սուսերօք եկեալ ըմբռնել զանըմ-
բռնելիդ. վասն որոյ երկրպա-
գեմք անճառելի քո խոնարհու-
թեանդ։ Այսօր զօր սերովբէքըն
ծածկէին ըզդէմս յահէ փառաց աս-
տուածութեանդ, իսկ կորստեան
որդին յուդաս ՚ի համբոյր մերձ-
եալ նենգութեամբ, նըշանակ ետ
առիթ մահու անմահիդ. վասն ո։
Այսօր ընդ գերագոյն տնօրէնու-
թիւնըդ քո որդի աստուծոյ. հոյլք

անմարմնոցըն հրամբուն սերոբից պսակուցեալ զարմանալին տեսանելով զանտեսանելին մատնեալ կամաւ ի ձեռըս մեղաւորաց. վասն ո։ Այսօր բարեկամք և մերձաւորք քո հեռի եղեն ի քէն քրիստոս. օտարացան եւ եղբարք քո. եւ ցուլք գէրք պաշարեցին, որք ի դպրանց և ի փարիսեցւոց. և շուրջ եղեն շունք բազումք զինուորք պիղատոսի և հերովդէի. վասն որոյ։

Այս Սաղմոսերգութիւն.

| | | |
|---|---|---|
| Ընդէր խռովեցան. | Գլ. | Բ. |
| Տէր զի բազում եղեն. | » | Գ. |
| Ի կարդալ իմում. | » | Դ. |

Իշխանք ժողովրդոց ժողովեցան ի միասին. վասն տեառն և վասն օծելոյ նորա։

Երիցս կրկնութիւն:

Այսօր անճա՛ռ լուսոյն ծագմամբ 'ի փրկութեան
մեր կատարումըն. խոնարհի 'ի վերնատունն ըստ-
ուերական տօնից լրումն. Նախ քան զընթրի՞սըն
խորհրդոյ սփածաւ զենջակ արկողն լուսոյ. և ջուր
առեալ ծառայաբար զոտըս լուանայր զաշակեր-
տացն։

Բանին Հօ՛ր փառաց լուսոյ Պետրոս մերժիլ յոտս
ոչ Ներէր. այնմ ձեռաց՝ որոյ են գործք երկնից
երկինք և երկրաւորք. որով կուրա՞ց աչըք բա-
ցան. խուլք և համերք արձակեցան. որ վերած-
եաց զինքն 'ի ծովին, սաստեաց ալեացն և լռեցին։
Գլխոյն ընտրեա՛լ հօտին փոքու սաստէր զխոր-
հուրդն ոչ գիտելոյ. որով դառնայր և հնազան-
դէր, զոտս և զգլուխս մաքրել մաղթէր. գլխոյս՝
ասէ՞, չէ ինչ պիտոյ լուացումըն ջրոյ զի լուացեալ
է. ոտիցըդ պէտք են մաքրութեան յօդիլ 'ի զը-
լուխըս սրբութեամբ։

Դասուց իւրո՛ց աշակերտաց՝ զոր Նախ բանիւ
վարդապետեաց. այսօր գործով ըզծայրագոյնն ե-
ցոյց յինքեան զխոնարհութիւն. սպասաւորեա՞լ
հողեղինաց այն՝ որ անտեսն է հրեղինաց. տար-
եալ պաշտօն իւր ծառայիցն, այն՝ որ պաշտին 'ի
սրովբէից։

Եթէ տէ՛րս ասէ էից և վարդապետըս բոլորից.
զաշակերտացդ և զծառայից զոտըս լուացի 'ի հնոյ
աղտից. միմեանց և դո՞ւք համաբնութեամբ ցու-
ցէք զնոյն խոնարհութիւն, բարձրացելոյն 'ի կոր-
ծանմամբ և անկելոյ բնութեանդ կանգնմամբ։

Զոր մաքրեցե՛ր յաւազանին մաքուր ձեռօք զոտըս նոցին. և ուսուցեր խոնարհութեամբ յաղթող լինել չար հպարտին. և զիմ լուա՞ զտիղմըն մեղաց աղաչանօք սրբոյ գնդին և զգնացս ուղղեա զոտին խոնարհութեամբ ելիւք յերկինս։

Ձ՚նէ Որթի, Աւետարան։

---

Երանի որ խորհի զաղ''. Գլ. Խ.
Որպէս փափաքի եղջերու''. » ԽԱ.
Դատ արա ինձ Աստուած''. » ԽԲ.

## Բան անօրէ՛նութեա՛ն եդին 'ի վե՛րա՛յ ի՛մ. տէ՛ր տէ՛ր մի թո՛ղո՛ւր զի՛ս։

Ելից զօրէ՛նսըն Մովսիսի զոր խօսեցաւ ի Սինայի. եկեր ըզգառն օրինակին և ըզբաղարջն ընդ եղէգին. ըզհինն 'ի նո՞րըս փոխելով զըստուերն 'ի լոյս ճշմարտելով. փոխան գառինն ինքըն գոլով գառըն Աստուծոյ նուիրելով։

Ընդ բաղարջի՛ն հաց անխմոր ետ ըզմարմին իւր զերկնաւոր. ըզկուսածինն անսերմնաւոր զանապականն և զհոգևոր. ընդ ոչխարի՞ն արեան ուխտին ետ մեզ զարիւն իւր ուխտ կրկին. և եղեգան դառնագունին փոխան ըզվարս աստուածային։

Թագաւո՛րն արարածոց զհացըն կենաց ետ քաղ-
ցելոց. և ըղբաժակն ուրախարար որք յԱդամայ
տրտմեցելոց. այս նոր ուխտ է՞ իմոյ արեան փո-
խան հընոյ ուխտին արեանց, զոր յիշատակ իմ
առնիցէք մինչև եկից ես միւսանգամ։

ժողովեա՛լքս 'ի քէն հայցեմք ընդ ժողովեալ մե-
տասանին, որ զկենարարըդ քո մարմին բաշխեալ
ետուր ընդ բաժակին. շնորհեա և մե՞զ Տէր ընդ
նոսին հաղորդ լինել քում սեղանին. կենաց հա-
ցիդ՝ յոր փափաքիմք և ըմպելւոյդ՝ ում ծարա-
ւիմք։

Ի յընտրելո՛ց աշակերտացն Յուդաս մեկնեալ 'ի
սուրբ դառանց, զբարձող մեղայ զգառն Աստու-
ծոյ մատնէր 'ի մահ ընդ արծաթոյ. 'ի յընթրի՞սըն
հոգևոր մերձի ժպիրհն և նենգաւորն, ուտելով
ընդ վարդապետըն յաճախէ զխաբէութիւն։
Լոյսըն խօսէ՛ր աղերսալի խաւարելոյն վասըն դար-
ձի. մի ոմն 'ի ձէնջ՝ ասէ, եղբա՛րք, զիս մատնե-
լոց է առ 'ի մահ. Պետրոս լռեա՞լ զայն զարհու-
րէր, և ակնարկէր առ Յովհաննէս հարցանել թէ
ո՞վ իցէ դաւաճանող վարդապետին։

Որթի. Աւետարան։

---

Փրկեա զիս 'ի թշնամեաց". Գլ. ԾԸ.
Աստուած մերժեցեր և". » ԾԹ.
Լուր Աստուած աղօթից". » Կ.

Փրկեա՛ զիս ՚ի Թշնամեաց իմո՛ց ա՞ս-տը՛ւա՛ծ, եւ ՚ի հալածչաց իմո՛ց ա՛պ-րեցո՛ զի՛ս։

Խնամով սիրո՜յն յիւր սիրելեացն ըզտըրրամութիւ-նըն փարատեաց. Թացեալ պատառ տայ Ցուդա-յի Նշաւակեալ զգողըն մատնիչ. զոր առեա՞լ և մերկացաւ յԱստուածային հոգւոյն շնորհաց, մատ-նեցաւ Նախաչարին ընդ մատնութեան վարդապե-տին։

Ծայրագո՜յն լուսոյն զրկեալ խաւարասէրն արտա-քըս ելեա՛լ. Տէրըն յայտնէր լոյս եղելոցն ըզգայ-Թակղիլն ՚ի գիշերի. Պետրոս խօսէ՞ր խրախուսելի և կշտամբիւր հաւախօսի. զիւրն յաշխարհէ զփո-խիլն ասէր և ըզգալուստ հոգւոյն պատմէր։

Կեդրոնեան յայնկոյս ձորոյ ՚ի վերնատունն ել խոր-հըրդոյ. եմուտ պարտէզ ընդ պարտիզի. եմոյծ զԱդամ յադին դրախտին. մուծցես և զմե՞զ Տէր ընդ Նըմին ուստի հաներ նախ զառաջինն. զի ժառանգել ըզհայրենին արժանասցուք մեք վե-րըստին։

Հոգայր ըզկրի՛ցըն տրտմաքար երիւքն եղեալ ա-ռանձնաբար. փրկել զաշխարհս հոգիս յօժար բայց է բնութիւն մարմնոյս տըկար. ոչ ոմն ու-ժե՛ղ և զօրաւոր և ոմն անզօր վտանգաւոր, այլ մի և նոյն գոլ միաւոր կըրէր ըզկիրսըն կամաւոր։ Զայնիւ մաղԹէ՛ր աղօԹական վասն իմ. առ Հայր

իւր էական. ծունր դնէր խոնարհական որում
կրկնի ծունր ամենայն. եթէ փրկե՞լ մարդկան
հնար է առանց մահու իմ որ գրեալ է. բաժակ
մահուս յինէն անցցէ, ոչ իմ կամաւ այլ քոյդ-
տեսցէ՛։

Ղօղեալ յերկի՛ւղ քրտանց հոսման ոլոռնաձև կայ-
լակ վիժման. 'ի զօրանալ հրեշտակ մերձեալ զօ-
րինական գիրըն լցեալ. զի կատարեա՞լ էառ
զբնութիւն Աստուածըն բան ըզմարդկութիւն.
պարտ էր զերկիւղ և զտըրտմութիւն յիւրումըն
կրել տնօրէնութի՛ւն։

Որթի. Աւետարան։

---

Աստուած մտին հեթա՛՛։ Գլ. ՀԸ.
Որ հովուեսդ Իսրայէլի. » ՀԹ.
Ցնծացէք առ Աստուած. » Ձ.

## Նոքա՛ 'ի ձեռանէ՛ քումմէ՛ մե՛րժե-ցա՛ն. մեք ժողո՛վուրդք և խա՛շն ա-րօտի՛ քո՛յ։

Ճառագա՛յթ փառաց էին որ ըստ բնութեանըս
մարդկային տագնապեցար 'ի գիշերին աղօթեցեր
առ Հայր յերկին. ծագեա 'ի մե՞զ զլոյսդ երկնա-
յին և փարատեա զերկիւղ չարին. մասունք հոգ-
ւոց մեր և մարմին յերկիւղ քո սուրբ բեւեռե-
ցի՛ն։

Մերձեալ Յուդա՛ս որ մատնելոց, հանդերձ դա-
սուն փարիսեցւոց. անկան նըման ստորանկելոցն
որ յաւիտեան չեն կանգնելոց. Յուդաս նենգա՞ւ
համբուրելով առիթ մահու նըշան տալով. փո-
խան սիրոյ զնա մատնելով չար ընդ բարւոյ վը-
ճարելո՛վ։

Յայնժամ առ գո՛ւթ սիրոյն Պետրոս ըզծառային
անուն Մաղքոս եհատ սուսերբ զականջն աջոյ որ
ոչ լուաւ Տեառըն իւրոյ. իսկ Տէրըն մե՞ր արա-
գապէս յունկըն մերձեալ բժշկապէս առողջացոյց
Աստուածապէս, զոր ոչ տեսին կուրացն հանդէ՛ս։
Նոր հօտի՛ն փոքու ցրուեալ քանզի զհովիւըն քաջ
հարեալ. Պետրոս միայն ըզհետ երթեալ 'ի յաղջ-
կանէ վիմին չարժեալ. Նշանակեա՞լ հաւըն խօ-
սէր առ 'ի Պետրոս Տէրն ակնարկէր, զբանըն յի-
շէր դառն արտասուէր, 'ի գլորմանէն դարձեալ
կանգնէ՛ր։

Շնորհեալ վիմի՛ն եկեղեցւոյ զոր պահեցեր 'ի հօ-
սելոյ և կանգնեցեր 'ի գլորելոյ՝ վասըն սրտիւն ար-
տասուելոյ. կանգնեա և զի՞ս Տէր ընդ նըմին 'ի
գլորմանէ սայթաքողին տալով, աչացս յորդ ար-
տասուս և ջուր նըման ծովու գլխո՛յս։

Ո՛վ կամա՛ւ զանկապելին կապեալ ըզձեռսն արձա-
կողին. 'ի յապարանսըն տանէին Կայիափայ և Ան-
նային. ծառայն զերե՞սն այն ապտակէր. յորմէ
սրովբէն Թևաքօղէր. Թուք արձակեալ պիղծ բե-
րանով այնմ՝ որ կուրին լոյս ծագեաց Թքո՜վ։
Որթի. Աւետարան։

Աստուած օրհնութեան". Գլ. ԾԸ.
Ասաց Տէր ցՏէր իմ. » ԾԹ.
Խոստովան եղէց քեզ. . » ԾԺ.

## Խօսեցա՛ն զինէն լեզուա՛ւ նենգաւո՜րա՛ւ. և բանի՛ւ ատելութեա՛ն զիս պա՛շարեցի՛ն։

Զար կապանա՛ց մարդկան լուծիչ՝ որ կապեցար ընդ կապելոյն, զիս արձակեա 'յինքնակապէս մեղաց կապից դժոխայնոյն. որ ընդ մեղօ՞ք պարտաւորին կացեր անմեղդ 'ի յատենին. 'յորժամ փառօք գաս հայրենին, մի՛ դատեսցես զիս ընդ նոսի՛ն։

Պատկառանօ՛ք հինն Ադամայ որ ձաղեցար վասն նորա, ջնջեա զամօթ մեղաց լրբին. որով զերեսս իմ ծածկեցին. որ ներեցե՞ր չար ծառային ածել ձեռօք քեզ ապտակին. հար ուժգնակի զդէմըս չարին, որպէս և զիս եհար ուժգի՛ն։

Ջահըն լուսո՛յ յառաւօտին 'ի յուրբաթու հընոյ զատկին կայր առաջի դատաւորին, ծառայն նըստէր 'ի յատենին. 'ի հարցանե՞լ Պիղատոսի Տէրն ոչ առնէր պատասխանի. զի կանխասաց գիրըն լցցի. եղէ ես մարդ որ ոչ խօսի՛։

Ռամկակա՜ն դաս զինուորացն արկին հանդերձ նախատանաց. այնմ որոյ զգեստն է լոյս փառաց իբրեւ զօթոց զինքեամբ արկած. 'ի ծունր իջեա՞լ կատակէին, զգլուխն եղեգամբ հարկանէին, պը-

սակ 'ի փշոց բոլորէին ըզփուշ մեղացըն բարձողի՛ն ։ Սոսկալի՛ն սերովբէից բառնայր ինքեամբ ըզփայտ խաչին մինչ 'ի տեղի Գողգոթային՝ յորում եդեալ մարդն առաջին . ետուն ըմպե՛լ գինի զմըռսեալ և կերակուր լեղեաւ խառնեալ . որով զպտղոյն դառըն ճաշակ փոխեաց մեզ քաղցր և ախորժա՛կ ։ Վերնակա՛նքըն զարհուրեալ տեսին ըզՏէրըն մերկացեալ , և ըզհանդերձսըն բաժանեալ պատմուճանին վիճակ արկեալ . ըզձեռսն և զո՞տսըն թակեցին ըստ յայտնապէս Դաւթեան ձայնին . ընդ փայտ խաչին բեւեռեցին զմատունսն որ գըրեաց 'ի տախտակի՛ն ։

Որթի . Աւետարան ։

---

Խոստովան եղերուք . Գլ. ՃԺԷ ։

Խոստովա՛ն եղերո՛ւք տեա՛ռն զի բա՛րի՜ է՛ . զի յաւիտեա՛ն է ո՛ղորմութիւն նորա՛ ։

Տարածեա՛լ ձեռք ընդ ձեռաց ոտք ընդ ոտից ընթանալեաց . փայտ ընդ փայտի դառըն պտղոյ կեանք ընդ մահու փոխարկելով . 'ի մէջ երկո՞ւց անօրինաց կայր մերկացեալ տուողն օրինաց . զոր

ոչ տեսին ազգըն կուրաց բաց 'ի միոյն յաւազա-
կա՛ց:

Րոպէ՛ից արեգականն ըզտիւն արար գիշերան-
ման. զըստուերըն քօղ արկ մերկութեան զի մի
տեսցէ ակն անարժան. 'ի միջօրեա՞յն նըսեմա-
ցաւ, յորժամ Ադամ մեղօք մեռաւ: 'ի յիններ-
որդն 'ի լոյս դարձաւ, յորժամ մահուամբ մա-
հըն լուծա՛ւ:

Ցօղէր արտօ՛սըր ցաւագին մայր Տեառն որ կայր
մերձ առ խաչին, յորժամ լըսէր ըզծարաւին
բարբառելոյ իւր միածնին. ետուն քացա՞խ խառ-
նեալ լեղի այնմ՝ որ բղխեաց գետ յադենի. եւ
'ի վիմէն վըտակ բարի արբոյց տոհմին դառնա-
ցողի՛:

Իւծեալ յերրո՞րդ ժամու օձին զմիտըս նախնւոյ
մօրն Եւայի. 'ի վեցն անկեալ մարդն առաջին
հաւանական բանիւ նորին. 'ի սոյն ժամո՞ւ Տէրըն
'ի խաչին, զի քաւեսցէ զմեղըս նոցին. և յոր-
ժամ եւ Ադամըն հին, եդ զաւազակն 'ի մէջ
դրախտի՛ն:

Փարելի՛ բարբառ ընդ իմ էլի էլի առ Հայր դո-
չէր. զհոգին կամաւ Հօր աւանդէր, զհոգիս
մարդկան նոյն ընծայէր, երկիր հիմա՞մբք սասա-
նեցաւ և վարագոյրն ընդ մէջ հերձաւ, վէմք 'ի
յինքեանց պատառեցան, և գերեզմանք մահու
բացա՛ն:

Քարոզի՛ 'ի ոգանչելեացս Աստուած մարմնով վասն
իմ խաչեալ, մերով բնութեամբըս մեռանի Աստ-

ուած անմահ խոստովանի․ կրկնավըտա՞կ կողին աղբերըբք եկեղեցի իւր հաստատի․ ջրովըն մաքրի, զարիւնն ըմպէ, զՈրդի ընդ Հօր փառաւորէ՞ ։

Որթի։ Աւետարան։ Հոգւոց։

Աղ․ Կանոնագլուխ ։

Իշխանք հալածեցին զիս 'ի նանիր, ալէլուիա, և 'ի բանից քոց երկեաւ սիրտ իմ․ ալէ․ ալէ։
Ցնծացայ ես 'ի բանս քո, որպէս այն որ գտանէ աւար բազում, ալէ․ ալէ։
Զմեղս ատեցի և անարգեցի․ և զօրէնս քո սիրեցի, ալէ․ ալէ։
Եօթն անգամ յաւուր օրհնեցից զքեզ, վասն իրաւանց և արդարութեան քո, ալէ․ ալէ։
Խաղաղութիւն բազում է այնոցիկ, ոյք սիրեն զօրէնս քո, եւ ոչ գոյ 'ի նոսա գայթակղութիւն․ ալէլուիա․ ալէլուիա։
Սպասեցի փրկութեան քում Տէր, և զպատուիրանս քո սիրեցի, ալէ․ ալէ։
Պահեաց անձն իմ զվկայութիւնս քո․ և սիրեաց զնոսա յոյժ․ ալէ․ ալէ։
Պահեցից զպատուիրանս և զվկայութիւնս քո․ զի ամենայն ճանապարհք իմ առաջի քո են․ ալէ։
է․ Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո Տէր, ըստ բանի քում իմաստուն արա զիս, ալէլուիա, ալէլուիա, ալէլուիա։
Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր․ և բանիւ քով փրկեա զիս․ ալէ․ ալէ․ ալէ։

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո, յոր-
ժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո. ալէ։
Խօսեսցի լեզու իմ զբանս քո, զի ամենայն պատ-
ուիրանք քո արդարութեամբ են. ալէ. ալէ։
Եղիցի ձեռն քո 'ի կեցուցանել զիս, զի զպատ-
ուիրանս քո ընտրեցի. ալէ. ալէ. ալէ։
Ցանկացայ փրկութեան քում Տէր, և օրէնք քո
խօսք իմ էին. ալէ. ալէ. ալէ։
Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ. և իրաւունք
քո օգնեսցեն ինձ. ալէ. ալէ. ալէ։
Մոլորեցայ ես որպէս ոչխար կորուսեալ. խնդ-
րեա զծառայս քո, զի զպատուիրանս քո ես ոչ
մոռացայ. ալէ. ալէ. ալէ։
Փառք Հօր։ Այժմ և։ Ալէ. ալէ. ալէ։

Եւ եւս խաղաղութեան։ Օրհնութիւն։

Օրհ. Բյ. Արծաթսիրութեամբն մոլ-
եալ յուդա, զիւր ըզմեծ ըզվարդա-
պետն ընդ երեսուն արծաթոյ հըր-
բէիցըն մատնէր։ Ընդ որում եւ համ-
բուրեցից ասէ՝ ըզնա կալարուք. ով
համբոյր նենգութեան նըշան եւ
առիթ մահու։ Մերկացաւ յինքենէ
զաստուածային սուրբ հոգին, եւ ըզ

գեցյա՛ւ ըզսատա՛նայ. որպէ՛ս հան-
դե՞րձ մ՛րկաւ զիւրեա՛ւ։

Ի՛ գիշերին յորո՛ւմ մատնէ՛ր փրը-
կիչըն մեր 'ի մա՛հ խա՛չի, եւ 'ի յեա՛-
ւըն ձիթենեաց, մ՛ղօթելո՛վ զայս ա-
սէ՛ր, հա՛յր անցո՛՞ յինէ՛ն զբաժա՛կս։
Ի՛սկ անօրէն աշակե՛րտին թողեալ ըզ-
գո՛ւթ սիրոյ նորա՛, և փութա՛յր ա՞ռ
քահա՛նայսն. ասէր ի՛նձ զի՛նչ կա-
մի՛ք տալ, զի մա՛տնեցի՞ց ըզ վա՛րդա-
պե՛տն։ Ժո՛ղովեա՛լ հըրէ՛իցըն կըշ-
ռեցի՛ն արծաթ բազում. առեալ
տարա՛ն առ պիղատոս, ասե՛ն 'ի՛ խա՛չ
հա՛ն 'ի խաչ, զի հա՛յհոյի՞շէ՛ օրինա՛ց։

Քարոզ. Վասն գտանելոյ. Տէ. յէլ 54.

Ալէլուիա, ալէլուիա, ալէլուիա։

Զարթեա՛ւ աղեղն քո, զնետըս կապարճից
քոց արբեցուցեր, զգեստս ցրուեցեր, զերկիր դո-
ղացուցեր, 'ի սաստկութենէ անձրեւի, որք ան-
ցանե՞ն ընդ սա՛։ Անդո՛ւնդք աղաղակեցին մե-

ծապէս. լոյս փայլման արեգական արգելաւ,
և ծագումն լուսնին դադարեցաւ։

Ալէ։ Մատնեցայ և ոչ ելանէի, աչք իմ տըկարացան յաղքատութենէ։ Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ և համբարձի առ քեզ զձեռըս իմ։

Փառք եւ երկըր։ Այժմ և միշտ։ Ալէ, ալէ.

Հրց. Գյ. Իջեր յերկնից անըսկիզբն որդի. 'ի հողեղէն 'ի բնութենէ մարդկան զչարչարանըս յանձն առեր. օրհնեմք ըզքեզ որ էիր յառաջ քան զամենայն յաւիտեան։ Որ ասացեր բանիւ լինել ամենայն երկրի. 'ի յերկրի յատենի կացեալ տեսանէին արարածք. օրհ։ Յորմէ դողան զըւարթունք երկնից, այսօր եկիր կամաւ 'ի խաչ գեղարդեամբըն խոցեցար. օրհ։

է. Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք յաւիտեան։

Եւ զինաւորըն գեղարդեամբըն յար-

ձակեալ, խոցեալ ըզկող կենա-
րարին. բարձր: Ուստի աղբիւր կեն-
դանաբար բըղխեալ, լըւաց զմեղ-
զերս ՚ի մեղաց, բարձր ա:

Մեծ. Լոյս լուսոյ մայր, և կենա-
րար բանին բնակարան. քեզ երա-
նիցեն ազգ եւ ազինք ամենայն:
Ստեղծողին մայր, և Հընութեան
կերպի նորոգողին. քեզ երա: Լոյս
ծագեցաւ ՚ի քէն, նըստելոցս ՚ի խա-
ւարի. քեզ երա:

Ող. Եկեալ ՚ի փրկութիւն ազգի
մարդկան. ՚ի ծառայէ յանձն առնու
մատնիլ ՚ի դատաստան. Համբերելով
վասն ըզմեզ կեցուցանել: Մատն-
եալ պիղատոսի որպէս մահապարտ.
՚ի յաննայէ և ՚ի կայիափայ դատա-
պարտեալ. Համբե: Կացեալ ՚ի յա-
տենի երկրորդ ադամ վասն առա-

ջի՛նն ա՛դամայ պարտեացը՛ն Թողու-
Թեան. համբե՛։

Տէր. Ո՛վ ըսքա՛նչելի՞ և տեսի՛լ ա-
հաւոր, զարարի՛չն երկնի և երկրի՛
այսօ՜ր տեսա՛ք 'ի խաչի՛։ Տե՛սեա՛լ ըզ
տէ՛րն 'ի խաչին խաւարեցա՛ւ արեգա-
կըն. և վարագո՛յր տաճարի՛ն ցե-
լո՜յր վերուստ մի՛նչ 'ի վա՛յր։ Ա՛նար-
գաքա՛ր խաչեցաւ տէ՛րն 'ի մէ՛ջ 'ի
յա՛նօրինաց. զի լցցի՛ գիրն որ ասէ՛,
Թէ ընդ ա՛նօրէնս համարեցա՛ւ։

Փառք 'ի բարձունս Աստուծոյ. Տե՛ս. յէջ 58։

Առաւօտու երգ։

Մատնեցա՛յ և ո՛չ ելանէի, աչք իմ տկարացան
յաղքատութենէ։
Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ, և համբարձի
առ քեզ զձեռս իմ։

Քարոզ. Փառաւորեսցուք։ Սբ. Աճ. որ մատնեցար։

Մկ. Բյ. Ո՛ր Թագաւորդ ես Թագա՛-

ուրաց քրիստոս, 'ի ծառայէ դատա-
պարտեալ համբերելով վասըն մեր.
երկայնամիտ տէր քեզ փառք։
Որ պատուական խաչիւըդ քո քրիս-
տոս և սուրբ արեամբըդ քո հեղմամբ
կեցուցանել ըզմեզ կամեցար. եր։
Որ մարդասիրապէս վասն ամենե-
ցուն ամենայնի համբերեցեր եւ 'ի
մահու ըզմահ կոխեցեր. երկայնա-
միտ։

Քարոզ. Վասն խաղաղութեան։ Աղօթք. Սբ. ես Տէր։

Աղօ Սաղմոս ԾԸ. ողբաձայն։

Կց. փոխանակ սիրոյ իմոյ մատնէին զիս. այլ ես
յաղօթս կայի։

Փոխ. Ասացուած օրհնութեան իմոյ մի լռեր. զի բե-
րան մեղաւորի, բերան նենգաւորի բացաւ 'ի
վերայ իմ։

Խօսեցան զինէն լեզուաւ նենգաւորաւ, և բանիւ
ատելութեան պաշարեցին զիս։

Մարտեան ընդ իս 'ի տարապարտուց. փոխանակ
սիրոյ իմոյ մատնէին զիս, այլ ես յաղօթս կայի։

Հատուցին ինձ չար փոխանակ ընդ բարւոյ. ատելութիւն փոխանակ սիրոյ իմոյ։

Կացո՛ 'ի վերայ նորա մեղաւոր. սատանայ կացցէ ընդ աջմէ նորա։

'Ի դատաստանէ իւրմէ ելցէ դատապարտեալ, և աղօթք նորա 'ի մեղս դարձցին։

Եղիցին աւուրք նորա նուազ. և զայցելութիւն նորա զայն այլ տարցէ։

Եղիցին որդիք նորա որբ. և կին նորա այրի. սահեսցին փոփոխեսցին, որդիք նորա մուրողք եղիցին. և ելցեն 'ի բնակութենէ իւրեանց։

Քննեսցէ փոխատու զամենայն ինչս նորա, և յափշտակեսցեն օտարք զվաստակս նորա։

Մի գտցի օգնական նմա, և մի ոք ողորմեսցի 'ի վերայ որբոց նորա։

Եղիցին որդիք նորա 'ի սատակումն, և յազգէ ջընջեսցի անուն նորա։

Յիշեսցին մեղք հօր նորա առաջի Տեառն, և մեղք մօր նորա մի ջնջեսցին, և եղիցին առաջի Տեառն յամենայն ժամ։

Սատակեսցի յերկրէ յիշատակ նորա, փոխանակ զի ոչ յիշեաց առնել զողորմութիւն։

Հալածեաց զայր աղքատ եւ զտնանկ. սպանանել զայն՝ որ խոնարհ է սրտիւ։

Սիրեաց զանէծս եւ եկեսցէ նմա. ոչ կամեցաւ զօրհնութիւն, հեռի եղիցի 'ի նմանէ։

Զգեցաւ զանէծս որպէս հանդերձ. մտցէ որպէս

Ջուր 'ի փոր նորա, և որպէս ձէթ ընդ ոսկերս նորա։

Եղիցի նմա որպէս հանդերձ՝ զի ագանի. որպէս գօտի, որ ածի հանապազ ընդ մէջ։

Այս գործ է այնոցիկ, ոյք չարախօս կային զինէն առ Տէր, և ոյք խօսէին չար զանձնէ իմմէ։

Այլ դու Տէր Տէր՝ արա ընդ իս ըստ անուան քում. զի քաղցր է ողորմութիւն քո. և փրկեա զիս, զի աղքատ և տնանկ եմ ես։

Սիրտ իմ խռովեցաւ 'ի փորի իմում. և ես որպէս ստուեր 'ի խուսափել իմում պակասեցայ. և թօթափեցայ որպէս մարախ։

Ծունկք իմ տկարացան 'ի պահոց, եւ մարմին իմ այլագունեցաւ յիւղոյ։

Եղէ ես նախատ նոցա, տեսին զիս և շարժեցին զգլուխս իւրեանց։

Օգնեա ինձ Տէր Աստուած իմ, եւ փրկեա զիս ըստ ողորմութեան քում։

Ծանիցեն զի ձեռն քո այս է. եւ դու Տէր արարեր զայս։

Նոքա անիծանեն և դու Տէր օրհնեսցես. ոյք յարուցեալ են 'ի վերայ իմ, զամօթ կրեսցեն. այլ ծառայ քո ուրախ եղիցի 'ի քեզ։

Զգեցցին զամօթ, ոյք չարախօս կային զանձնէ իմմէ, եւ արկցեն որպէս կրկնոց զամօթ իւրեանց զիւրեամբք։

Այլ ես խոստովան եղէց առ Տէր յոյժ բերանով իմով, և 'ի մէջ բազմաց օրհնեցից զքեզ։

Զի եկաց նա ընդ աջմէ տնանկին, 'ի փրկել զիս յայնցանէ, որք հալածեն զանձն իմ։

Ալէլուիա, ալէլուիա, ալէլուիա, Որթի։

Աւետ. Զկնի Զհանգուրժեալ ։ Տե. յեղ 68։

Ապա կեցո։

Բկ. Խաչի քո Քրիստոս երկրպա-գանեմք և ըզսուրբ մատնութիւ-նըդ քո մեծացուցանեմք և ըզ սուրբ չարչարանըդ քո փառաւո-րեմք։

Եկայք հաւատացեալք երկրպագես-ցուք Քրիստոսի աստուծոյ մերոյ. վա-սըն զի եկն 'ի ձեռըն խաչին իւրոյ շնորհեաց պարգեւս աշխարհի, սուրբ աստըւած, սուրբ և հըզօր, սուրբ և անմահ որ մատնեցար վասըն մեր ողորմեա մեզ։ Երէց.

Փառք սուրբ խաչին ալէլուիա. սուրբ մատնութեանդ ալէլուիա.

չարչարանացդ ալէլուիա :
Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտից մերոց :
Ի պտղոյ ցորենոյ, գինւոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր ըզնոսա :

Փառք սուրբ խաչիդ ալէլուիա : Կրկնէ :

Փառք եւ երկրպագութիւն Հօր եւ որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն :

Փառք սուրբ խաչիդ ալէլուիա : Կրկնէ :

Խաչն կենարար որ եղեւ մեզ փըր֊կութիւն. սովաւ ամենեքեան ըզ քեզ բարեբանեմք :

Աղ. Սուրբ խաչիւս : Աղօթ : Պահպանիչ :

# ԿԱՐԳ

## ԿԻՍԱՒՈՒՐ ԺԱՄԵՐԳՈՒԹԵԱՆ ՄԵԾԻ ՈՒՐԲԱԹՈՒ Ի ԽԱՉԵԼՈՒԹԻՒՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ

*Նախ՝ ճաշու երեք ողորմեայք հանդերձ մեծ քարոզիւք և աղօթիւք ։*

*Ապա՝ կ՚ընթեռնուն կարգաւ ութ փոխ Սաղմոս, վեշտասան Ընթերցուածք և չորս գլ. Աւետ. ըստ ճաշոցի։*

*Երգ Նախ քան զառաջին Աւետարանն ։*

*Նորոգո՛ղ տիեզերաց որ զգեցուցեր մեզ լոյս փառաց, արկար ըզքեւ 'ի զինուորաց քղամիթ կարմիր նախատանաց. մերկեա յինէ՞ն ըզքուրձ մեղաց ըզտրտմագինն արեամբ ներկած, և ըզգեցո զուրախալին ըզպատմուճանն իմ զառաջին։ Երկնաւո՛ր Թագաւորիդ 'ի ծունր իջեալ խաղ առնէին, ծածկեալ ըզգլուխըդ կռփէին, և եղեգամբ հարկանէին. և զիմ անկեա՞լ մինչ 'ի գետին 'ի հնազանդել կամաց չարին. մի՛ թողուցուս խաղալ սովին, այլ կանգնեսցես զիս վերըստին։ Բամեալ բոլո՛րըդ քո մարմին յետ վըճըռոյ դատաւորին, սաստիկ էառ զհարուած գանին վասըն գանից նախաստեղծին. զիս որ յոտի՞ց մինչեւ ցըգլուխ ցաւօք նեղիմ անհընարին, ա-*

*ռողջացո՛ դարձեալ կրկին որպէս շնորհօք ՛ յա-
ւազանին ։ Սրբափա՛յլ պճնեալ զարթուն զոր
զգեցուցեր Ահարոնին, փոխան պըսակ 'ի փշոց
եդին մըշակք այգւոյն Իսրայէլին . ըզփուշ մե-
ղա՞ց հանցես յինէն զոր յիս եհար իմ թշնամին.
և ողջացո՛ զխայթուած վիրին, զի սպիք մեղա-
ցըն ջընջեսցին ։*

*Որթի ։ Աւետարան ըստ Մատթ ։*

---

*Սաղմոս . Գիրք եւ տող Երգ ։*

*Եսուն ըմպե՛լ քեզ ըզլեղին և ըզքացախն 'ի
ծարաւին, արբեր կամաւ զի քաղցրասցին ճա-
շակք պըտղոյն դառնագունին . ըզդառնութի՞ւն
թունաւորին զոր 'ի մասունս հողւոյս արկին,
հերքեա 'ի բաց հանդերձ սովին և քաղցրասցէ
սէր քո 'ի սմին ։ Ստեղնեա՛լ ծառո՛յ մահաբերին
այնմ որ բուսաւ 'ի մէջ դըրախտին, փոխան բար-
ձեր ըզփայտ խաչին 'ի գողգոթա հաներ տեղին .
զիմ առ 'ի մե՞զս անկեալ զոգի և ծանրագոյն
բարձող բեռին, բարձ 'ի յուսըդ ըստ ոչխարին,
հան 'ի յերկինս յուխտեալ տեղին ։ 'Ի յուրբա-
թու՛ ժամ երրորդին բեւեռեցար` Տէր` 'ի խաչին,
լուծեր զկապանս նախաստեղծին և կապեցեր ըզ
թշնամին . զիս ամրացո՞ ընդ հովանեաւ կենդա-
նատար քո նըշանին . և 'ի ծագելն յարեւելից լու-*

սաւորեա լուսով Նորին։ Էրանեա՛լ աւազակին
բացեր ըզդուռն Ադին դրախտին. ըստ հաւատոյ
սրրտի Նորին կատարեցեր ըզխնդրելին. տուր և
ի՞նձ Տէր ընդ Նըմին լըսել ըզնոյն պատասխանին.
այսօր ընդ իս իցես յԱդին, 'ի հայրենիս քո ա-
ռաջին։

Որթի. Աւետարան ըստ Մարկ.։

---

Սաղմոս. Գիրք և ող Երգ։

Բարբառելո՛վ զէլի էլին հիմունք երկրի տա-
տանէին. և վարագոյր հին օրինին վերուստ 'ի
վայր պատառէին. արդ ընդ վիմա՞ցն որ շարժէին՝
շարժեա զանշարժ սիրտս 'ի բարին. ընդ պատա-
ռել վարագուրին զիմ պատառեա ըզգիր պար-
տին։ Արեգակա՛ն լոյս քող արկեալ խաւարանայր
միջօրէին. և գերեզմանըք բանային, մարմինք
սըրբոցըն յառնէին, ընդ խաւարի՞լ լուսաւորացն
մաքրեա յինէն զգործ խաւարին, ընդ մեռելոցն
որք յառնէին. կանգնեա զմեղօք մեռեալ հոգիս։
Նոր սիրո՛յ պատուիրանին գործով լըցող եղեր
բանին, աղօթելով առ Հայր յերկին. Թողուլ ըզ
մեղս որ 'ի խաչին, ինձ որ հոգւո՞վս հաւատաց-
եալ երկըրպագեմ քեզ միածին, Թող ըզլուծու-
մըն հրամանին, մի' յիշեսցին մեղքն առաջին։
Սարսեցի՛ն սանդարամետք 'ի յաւանդելն առ
Հայր զհոգին, որ 'ի դըժոխս իջեր ներքին 'ի

բանտ մահու և խաւարին. կապեալ զիշխա՞նըն մահածին հաներ զհոգիսն որ 'ի բանտին. եւ զիս հանցես Տէ՛ր ընդ նոսին բանտէ մեղաց աղջամըղջին։

Որթի. Աւետարան ըստ Ղուկ.

---

Սաղմոս. Գիրք և տղ Երգ

Աղբերա՛ցն անապական որ յետ մահուն անմահարար, բղխեալ 'ի քէն վըտա՛կ կրկին 'ի նորոգումըն կողածնին. բաց ըզբերա՞ն իմ յարբուցումըն քո արեան կենարարին. լըւա դարձեալ յաւազանին թէ ոչ շնորհօք՝ այլ արտասուօք։ Ցանմահի՛դ մեռանելոյ զմեռեալ հոգիս կենդանացո՛. Թաղմամբ 'ի նոր գերեզմանի զթաղեալս 'ի մեղըս վերածեա. 'ի գբի ներքնո՞ւմն իջանելով 'ի գբոյ մեղաց վերաբերեա, 'ի ստուեր մահու քո բնակելով լուսաւորեա և զիս հոգւով։ Սիրտ իմ առ քե՛զ աղաղակէ Բանդ որ ընդ Հօր 'ի սկըզբանէ. որ կամաւոր վասըն մարդկան կրեցեր մարմնով զայս ամենայն. ինձ լըսելի՞ արա ըզձայն յարքայութեանըդ քո կոչման, ընդ ժողովոց անդ անդրանկացն օրհնել ըզքեզ մինչ յաւիտեան։

Որթի. Աւետարան ըստ Յովհ։

*Խաչի քո Քրիստոս երկիր․ և զսուրբ չարչարանսդ քո մեծա․ և զսուրբ խաչելութիւնդ քո փառաւոր։ Փառք սուրբ խաչիդ․ ալէ․ չարչարանացդ ալէ․ խաչելութեանդ․ ալէ․ և այլն։* Տե․ յէջ 238։

## կց. Ելե՛ր տէ՛ր բեւեռեցա՛ր 'ի խաչին, ըզմեռանի՛լ յանձն առե՛ր կե՛նդա՛նատու մեռելո՛ց։

### Տաղ

Տիրամայրն հանդէպ որդւոյն առ խաչին կայր
տրտմագին․
Եւ լսելով ըզծարաւին հառաչմամբ լայր ցաւագին․
Ի փուշ պըսակըն դիտելով, ողբ, կոծ, վայ տայր
իւր անձին․
Աչացըս լոյս, որդեակ Յիսուս, ես ընդ քեզ մեռանիմ, ո՛հ մեռանիմ։

# ԿԱՐԳ

## ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԵՐԳՈՒԹԵԱՆ ՄԵԾԻ ՈՒՐԲԱԹՈՒ Ի ԹԱՂՈՒՄՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ

*Խոնարհեցո։ Ապրեցո։ Լոյս զուարթ։ Տէ՛ յեղ 130։*

*Մեսեդի*

*Ետուն 'ի կերակուր ինձ լեղի, և 'ի ծարաւ իմ արբուցին ինձ քացախ։*
*Եղիցին սեղանք նոցա առաջի նոցա յորոգայթ, 'ի հատուցումն և 'ի գայթակղութիւն։*

*Գիրք եւ ողս Սաղմոս ՃԽ. ԻԱ։ Կց. Բաժանեցին ըզ հան ։ Փոխ. Աստուած Աստուած իմ ըն. ամբողջ։*

*Ուղիղ եղիցին աղաչանք մեր, որպէս խունկ առաջի քո Տէր, համբարձումն ձեռաց մերոց, պատարագ երեկոյի։*

*Քարոզ, Աղաչեսցուք։ Սուրբ Ած. որ խաչեցար, ասանց փառաւորեալ։*

Հմբ. Դկ. Սող. Եկա՛յք համաստամբեալք երկրպագեսցուք սուրբ երրորդութեանն, լոյսն որ ընդ հօր

է յէութեան, 'ի քահանայից դա-
տապարտեալ եկեալ 'ի խաչ ելա-
նել, անըմահ թագաւորն ։ Զոր
երկինք ոչ բաւէին տանել, ըզ
փայտ պատուհասի ուսով բար-
ձեալ և եկեալ 'ի տեղի կառափր-
ման 'ի խաչ ելանել, անըմահ ։
Հիացեալ Յպետութեանց երկնից
ընդ թաղումն տեառն 'ի նոր գե-
րեզմանի, քանզի որ անմահն
է յէութեան վասն արարածոց
փրկութեան ըզմահ ճաշակեաց,
անըմահ թագաւորն ։

Զկնի Հայր գթածին, Գիրք. Ե– ող– Սաղմոս ։
Ալէ. ալէ ։ Ընդ երեկոյս հանգիցեն լալիք յառա-
ւօտու եղիցի ուրախութիւն ։

Աւետարան, Ե– ող–

Սուրբ Աստուած որ թաղեցար. և Փառաւորեալ ։
Մաղթանք. Փրկեա զմեզ ։ Քարոզ, Վասն լսելի ։

Այդ– Նախատօնակ Պարգեւատուն է–ջ ...։ Տես յէջ 249

Խաչի քո Քրիստոս երկիր · և զսուրբ խաչելութիւնդ
քո մեծա". և զսուրբ թաղումնդ քո փառա ։
Փառք սուրբ խաչիդ · խաչելութեանդ, սրբոյ թաղ-
մանդ, եւլն. Տե՛ս յէջ 238 ։

կզ. Եղա՛ր տէ՛ր ՚ի՛ նո՛րափո՛ր ՚ի վի-
մի · և մատանեա՛ւ կընքե՛ցա՛ր գան-
ձը՛դ կենաց ա՛շխարհի՛ ։

ՏԱՂ

Աստուածածին կոյսն Մարիամ կայր առ խաչին
իւրոյ միածնին · հեղոյր արտօսր կսկծմամբ սրտին,
և զայս ասէր ձայնս ողորմելի, այ ոհ, այ ոհ, գքեզ
ի խաչ տեսողիս հազար եղուկ մօրդ այրած սրտիս ։

# ԿԱՆՈՆ

## ՄԵԾԻ ՇԱԲԱԹՈՒ ԱՌԱՒՕՏԵԱՆ

Կանոնագլուխ ։ «Սիրեցից զքեզ Տէր զօր․ Տե․ յեղ 25 ։

Ցառաջ ձան « զՕրհնութիւնն »

Դատեա Տէր զայնոսիկ, որք դատեն զիս։ ալէ․ մարտիր ընդ այնոսիկ որք մարտնչին ընդ իս։ ալէլուիա, ալէլուիա․ եայլն ։

Ճ․ Տէր յերկինս է ողորմութիւն քո, ճշմարտութիւն քո մինչև յամպս․ ալէլ․ ալէլ ալէլ․ եւլն ։

Այբուղբը տե․ յեղ 16 ։

Օրհ․ Բյ․ Պարգեւատուն ամենեցուն այսօր խնդրի պարգեւս ՚ի պիղատոսէ, և արկողն ըզլոյս որպէս զօթոց հաւանի պատիլ ՚ի յովսէփայ։ Կենդանատուն ամենեցուն այսօր դընի ՚ի նոր գերեզմանի․ և գանձն անմահութեան կընքի մատանեաւ քահանայիցն ։ Արարածոց փրկու-

թիւն քրիստոս, այսօր եղաւ 'ի նո-
րափոր վիմի. զոր օրհնեն զօրք
երկնից երգով պահպանի 'ի զին-
ուորացն :

Կենդանին յարութենից քրիստոս
այսօր խնդրի որպէս մեռեալ 'ի պի-
ղատոսէ. և մերկութեան ծածկոյթն
ադամայ յանձն առնու պատիլ 'ի
յովսեփայ: Անմահութեանց տուող
քրիստոս այսօր 'ի հող մահու խո-
նարհեցաւ. և բնակեալն 'ի լոյս
անմատոյց թաղեցաւ մարմնով 'ի
սիրտ երկրի: Արեգական արդարու-
թեան քրիստոս այսօր եղաւ 'ի գբի
ստուերականի. և փառայլն հօր
ճառագայթ ծածկեցաւ մարմնով 'ի
մէջ երկրի:

Կուսածին մարմնով քրիստոս այսօր
դընի 'ի կոյս գերեզմանի. և լուծիչն
երկանց դըժոխոց մատնեաւ կնքի

քահանայի՛ցն։ Արթուն բնութեամբ արարիչն ամենեցուն այսօ՛ր ննջէ ՚ի մէջ մահացելոց. որ պահէ՛ն զԻս-րայէլ անքուն, պահպանի ՚ի զին-ւորա՛ցն։ Ցնծութիւն արարածոց քրիստոս այսօր արտասուի որպէս մեռեալ ՚ի տրտմազգեցիցն. և բու-րումն անմահութեան խնկի՛ ՚ի զգ-գաստիցն իւղաբերի՛ց։

Քարոզ. Վասն ՚ի վերուստ. Տես. յէջ 52։

Ալէլուիա. ալէ. ալէ։
Եղի՛ն զիս ՚ի գբի ներքնումն, ՚ի խաւարի և ՚ի ստուերըս մահու։ Յի՛ս հաստատեցաւ սրտմը-տութիւն քո. զամենայն զբօսանս քո ածեր ՚ի վերայ իմ.
Ալէ։ Եղէ՛ ես որպէս մարդ առանց օգնականի, և ՚ի մեռեալս ազատ։ Որպէ՛ս զվիրաւորս, որք ննջեն ՚ի գերեզմանի.
Փառք եւ եր. Այժմ և միշտ։

Հրդ. Գդ. Զքե՛զ օրհնեմք Թագա-ւոր յաւիտենից անմահ, աստուած

հարցըն մերոց։ Զոր ոչ բնութիւն արարածոց զաստուած տանիւր. մահուամբ սահմանեալ դընի ՚ի նոր գերեզմանի. նոր զիս ընդունելով մարդ, գովեմք ըզքեզ տէր հարցըն մերոց։ Որ անփակ գրով հաստատեալ քարտէս, կընքի մատանեաւ անկորուստ պահելով ըզ մեզ հաւատով երրորդութեանդ.

գովեմք։

Է. Օրհնեցէք ամենայն գործըք տեառն ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Տիւք եւ գիշերք ըզտէր օրհնեցէք։ Զքրիստոս Թագաւորն յիմանալի զօրացն անհիւ պատուեալ. եւ բարձր արարէք։ Իսրայէլ զտէր օրհնեսցէ։ Զանյաղթելի զԹագաւորն, որ պահի ՚ի զինուորաց գանձն անմահութեան. եւ բարձր արա։

Մեծ. Աստուածածին Երկնային
դուռն աստուածային ձայնին ա-
ւետարանէր հրեշտակն. ուրախ
լեր բերկրեալդ տէր ընդ քեզ։ Ի
քերովբէս բազմեալ ընդ հօր անա-
պականաբար բնակի, հաճեցաւ ՚ի
քում յորովայնի. ուրախ լեր։ Որ
բոցեղէն սրովբէիւք շրջափակեալ
պահիւր. այսօր ՚ի մէջ մարդկան ՚ի
գիրկս հողեղինի յայտնեալ. ուրախ։

Ող. Որ բաշխող ես բարութեանց,
և պարգևատու արարածոց քոց.
այսօր հաճեցար խոնարհիլ ՚ի պար-
գևել մասին ՚ի պիղատոսէ. զի և-
մեզ շնորհեսցես զպարգևս ողոր-
մութեան քոյ։ Որ զանձամբ ըզլոյս
փառաց իբրև զօթոց ըզքեւ արկար.
այսօր անձամբ խոնարհութեամբ պա-
տեցար ՚ի յովսէփայ ՚ի գերեզմա-
նի տքնեալ. զի ըզհնութիւն մեղաց

մերոց նորոգեսցես 'ի կեանս անմահ ։
Որ յեւթեանդ ես ընդ հօր անպա-
րագրելի բանդ. այսօր մատանեան
քահանայքըն պարագրել 'ի յանձն
առեր, անկողոպտելի գանձ, զի ըզ
մեզ փրկեսցես 'ի յանցանաց մեղաց
մերոց ։

Տէր. Յովսէփ ճշմարիտ և ար-
դար հայցէր 'ի պիղատոսէ զհասա-
րակաց ըղպարգեւատուն, որ տուաւ
մեզ գանձ անկողոպտելի ։ Պատ-
եալ սուրբ կըտաւովք զմարմինըն
տէրունական զարկողըն ըզլոյս որպէս
զօթոց, որ ըզգեցոյց մեզ ըզգեստ
անկողոպտելի ։ Եդաւ 'ի նորափոր
'ի վիմի, և մատանեաւ կընքեցաւ. որ
զնախաստեղծըն կենդանացոյց եւ
զմարդկան կապանըս մահու ե-
լոյծ ։

*Առաւօտու երգ. « Եդին զիս 'ի դբի. » որդեւ 'ի Լերոյ:*

*Սուրբ Աստուած որ Թաղեցար.*

Մկ. Դկ. Սռ. Յովսէ 'ի քեզ համա-տացեալ պիղատոսի ատեանն էր, շը-նորհել զտէրունեան մարմինն։ Զա-նապական զաստուածացեալ մարմինդ պատեալ սուրբ կտաւովք. և եդ 'ի գերեզմանի։ Որ արարիչդ ես ա-րարածոց. հանգուցեալդ 'ի քերով-բէս. վիմով կնքեցար յերկրի։

*Քարոզ, Վասն խաղաղ. Աղօթք. Սուրբ ես Տէր.*

*Սաղմոս ՁԷ.*

*Կց. Եդին զիս 'ի գբի ներքնումն, 'ի խաւարի և 'ի ստուերս մահու.*

*Փոխ. Տէր Աստուած փրկութեան իմոյ, 'ի տուէ կարդացի, և 'ի գիշերի առաջի քո.*

*Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր, խոնար-հեսցի ունկն քո 'ի խնդրուածս իմ։*

*Զի լցաւ չարչարանօք անձն իմ, և կեանք իմ 'ի դժոխս մերձեցաւ, և համարեցայ ես ընդ այնո-սիկ, որք իջանեն 'ի գուբ։*

Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի, և 'ի
մեռեալս ազատ։
Որպէս զվիրաւորս, որք ննջեն 'ի գերեզմանս։
Զորս դու ոչ յիշեցեր, նոքա 'ի ձեռանէ քումմէ
մերժեցան։
Եդին զիս 'ի գբի ներքնումն, 'ի խաւարի և 'ի
ստուերս մահու։
Ցիս հաստատեցաւ սրտմտութիւն քո. զամենայն
զբօսանս քո ածեր 'ի վերայ իմ։
Հեռի արարեր յինէն զծանօթս իմ, և եդին զիս
նշաւակ իւրեանց։
Մատնեցայ և ոչ ելանէի, աչք իմ տկարացան
յաղքատութենէ։
Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ, և համբարձի
առ քեզ զձեռս իմ։
Միթէ՞ մեռելոց առնիցես զսքանչելիս քո, կամ
բժիշկք յարուցեալ խոստովան առնիցին առ քեզ։
Միթէ՞ պատմեսցէ ոք երբէք 'ի գերեզմանի զո-
ղորմութիւնս քո. կամ զճշմարտութիւնս քո
'ի կորստեան։
Միթէ՞ ճանաչիցին 'ի խաւարի սքանչելիք քո կամ
արդարութիւն քո յերկիր մոռացեալ։
Ես առ քեզ Տէր աղաղակեցի, առաւօտու աղօթք
իմ ժամանեսցեն առ քեզ։
Ընդէ՞ր Տէր մերժես զանձն իմ կամ դարձուցա-
նես զերեսս քո յինէն։
Տնանկ և վաստակաւոր եմ ես 'ի մանկութենէ
իմմէ, 'ի ըարձրութենէ խոնարհեցայ և ապշեցայ։

Ցիս հաստատեցաւ բարկութիւն քո. արհաւիրք քո խռովեցուցին զիս։
Շրջեցան զինեւ որպէս ջուր, զօր ամենայն պաշարեցին զիս 'ի միասին։
Հեռի արարեր յինէն զբարեկամս իմ և զծանօթս իմ' վասն թշուառութեան իմոյ։

Ալէլուիա. ալէ. ալէ. Որթի։ Աւետարան։

Ձայնէ « Տէրն յետ ստեղծման ». Տես յէջ 69։

Քարոզ. Խնդրեսցուք. Կեցո։ Եւ այլն

« Խաչի քո Քրիստոս. ըստ երեկոյեան կանոնին. »
Տես յէջ 239։

# ԿԱՐԳ

## ՄԵԾԻ ՇԱԲԱԹՈՒ ԵՐԵԿՈՅԵԱՆ ԾՐԱԳԱԼՈՒՑԻ Ս. ՁԱՏԿԻՆ

Նախ՝ Ճաշու « Ողորմեայք »ն. և յաւուրքէն

Զսաղմոսերգութիւն. և այլ Սաղմոս յայնէ։

Եղիցի անուն Տեառն օրհնեալ յայսմհետէ մինչեւ յաւիտեան։

Օրհնեցէք մանկունք զՏէր, և օրհնեցէք զանունն Տեառն։
Եղիցի անուն Տեառն օրհնեալ յայսմհետէ մինչև յաւիտեան։
Ցարևելից մինչ 'ի մուտս ,յարևու, օրհնեալ է անունն Տեառն։
Բարձր է 'ի վերայ ամենայն ազգաց Տէր, և յերկինս են փառք նորա։
Ո՞վ է որպէս Տէր Աստուած մեր 'ի բարձունս բնակեալ, և զխոնարհս տեսանէ յերկինս եւ յերկրի։
Ցարուցանէ զաղքատս յերկրէ, և բարձր առնէ զտառապեալս յաղբեւաց։
Նստուցանէ զնոսա իշխանս ընդ իշխանս ժողովրդեան իւրոյ։
Բնակեցուցանէ զամուլն 'ի տան ուրախամիտ, որպէս մայր որդւովք բերկրեալ։

Գ.Յ. Այսօր աստուածութի՛ւնըն զըւարճանա՛յ նո՛ր հաստատե՛լով զերկիր. պա՛րըք սո՛ւրբ փառաբանե՛ն զըւարթնոց. եւ մե՛ք ձայնիւ օրհնո՛ւթեամբ զարդա՛րեսցո՛ւք սո՛ւրբ ըզտօ՛նս։ Այսօր և մե՛ք ցնծա՛մք տօնի՛ւս ընդհանո՛ւր հնչմամբ. մեծապէ՛ս փայլմա՛մբ

երեւեցաւ յաշխարհի. առ աստ-
ուած գոհութիւնք ընթանան,
պատմեն անդադար ըզքան կենդա-
նի։ Խնդա և զուարճացիր եկեղե-
ցի. կոյս սուրբ և հայրն երկնաւոր
փեսային, ահա տեսանեմք զծնեալն
ըզ-քրիստոս, գովով առ քեզ լոյսն
հեթանոսաց։

Ընթերցուածք Գրոց սրբոց

Եւ յաւարտ ընթերցման չորրորդին

Տաղ. Գյ. Լուսաւորեա՛ երուսաղէմ
զի հասեալ է լոյս քո, զարդարեա
զամուրըս քո և փառք տեառն
'ի վերայ քո ծագեցի։ Օրհներգու-
թեամբ սաղմոսիւք քեզ վայելէ աստ-
ուած օրհնութիւն 'ի սիոնէ, եւ
քեզ մատուսցին աղօթք յերու-
սաղէմ։ Գովեա երուսաղէմ զտէր,
և օրհնեա զաստուած քո, նոր

Ժողովուրդ դշխոյ դուստր սիօնի։

Ձկնի. Աղօթք հանդերձ։

Ապա շարունակութիւն մնացեալ եօթն ընթերցուածոց.

Եւ մինչ ընթեռնուն « Օրհնեցէք ամենայն գործք Տեառն », Դպիրք կը նուագեն։

Օրհնեցէ՛ք գո՛վեցէք և բարձր արա-րէ՛ք ըզնա յաւիտեան։

Ժամամուտ

Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց, մահուամբ զմահ կոխեաց և յարութեամբն իւրով մեզ զկեանս պարգեւեաց, նմա փառք յաւիտեանս ամէն։

Ձայն Տարական. այ.

Գովեա՛ երուսա՛ղէմ զտէ՛ր։
Յարեա՛ւ քրիստոսն 'ի մեռելոց,
ալէլուիա՛։
Եկայք ժողովուրդք երգեցէ՛ք
տեառն. ալէ։
Յարուցելոյն 'ի մեռելոց, ալէ-
լուիա. որ զաշխարհս լուսաւորեաց,
ալէլուիա։

*Սուրբ Աստուած, որ յարեար 'ի մեռելոց։*

*Գիրք եւ այլ Սաղմոս։*

*Ալէ․ ալէ․ Յարեաւ Աստուած և ցրուեցան ամենայն թշնամիք նորա, փախեան ատելիք նորա յերեսաց նորա։*

*Սրբասացութիւն*

*Ո՞վ է որպէս Տէր Աստուած մեր, խաչեցաւ վասն մեր, թաղեցաւ և յարեաւ, հաւատարիմ եղեւ յաշխարհի և համբարձաւ փառօք․ եկայք ժողովուրդք զօրհնութիւն ընդ հրեշտակս երգեսցուք նմա ասելով․ սուրբ, սուրբ, սուրբ ես Տէր Աստուած մեր։*

*Իսկ յաւարտման սուրբ Պատարագին Նախատօնակ*

*« Այսօր յարեաւ 'ի մեռելոց » երգ տօնին։*
*Տես ի յաւելուածի էջ 262։*

*Քարոզ․ Խնդրեսցուք․ Կեցո։*

# ԿԱՆՈՆ

## Ա. ԱՒՈՒՐ ՍՐԲՈՅ ԶԱՏԿԻ

*Տէր զի բազում էր սուրբն.* Տես յեղ 1—50

*Կանոնագլուխ ած. « Դատեա Տէր »:* Տես յեղ 16:

Օրհ. Այ. Այսօր յարեաւ 'ի մեռելոց փեսայն անմահ եւ երկնաւոր, քեզ աւետիք խընդութեան հարսն 'ի յերկրէ եկեղեցի. օրհնեա 'ի ձայն ցընծութեան զաստըւած քո սիոն: Այսօր անձառ լոյսն 'ի լուսոյ լուսաւորեաց զմանկունս քո, լուսաւորեալ երուսաղէմ. քանզի յարեաւ լոյս քո քրիստոս. օրհնեա 'ի ձայն ցընծութեան զաստըւած քո սիոն: Այսօր խաւարն անգիտութեան հալածեցաւ

եռորեակ լուսովն. եւ քեզ ծագեալց լոյս գիտութեան յարուցեալն ՚ի մեռելոց քրիստոս. օրհնեա ՚ի ձայն ցնծութեան զաստուած։

Այսօր զատիկ մեր զենմամբ քրիստոսի, արասցուք տօն ցնծութեան, նորոգեալքս ՚ի հնութենէ մեղաց ասելով. քրիստոս յարեաւ ՚ի մեռելոց։ Այսօր հրեշտակըն լուսափայլ ՚ի յերկնից իջեալ. զարհուրեցոյց ըզ պահապանսն. և սուրբ կանանցըն քարոզէր ասելով. քրիստոս յարեաւ ՚ի մեռելոց։ Այսօր նոր իսրայէլ կոչեցեալք ՚ի քրիստոս, ազատեալք արեամբ գառինն աստուծոյ, պարեսցուք ընդ երկնայնոցն ասելով, քրիստոս յարեաւ ՚ի մեռելոց։

Ընդ լուսանալ միաշաբաթին կանխեցին կանայքն 'ի գերեզմանն, 'ի խնկել զանապական մարմինն։ Եւ գտին ըզվէմըն բարձեալ 'ի դրանց գերեզմանին, և լուեալ բարբառ 'ի հրեշտակէն. եթէ յարեաւ քրիստոս և խափանեաց ըզմահ։ Եւ հանդիպեալ քո Տէր առաքելոցն. եւ տուեալ ողջոյն կենդանարար. առաքեցեր զնոսա 'ի փրկութիւն տիեզերաց։

Փառք յարութեան քո Տէր։

Պատրանօք նախաստեղծին մերկացաք'ի լուսոյն. իսկ յարութեամբ միածնիդ ըզգեցաք զանմահութիւն. փառք յարութեան քո Տէր։ Խաբանօք փայտին ճաշակեցաք ըզմահ.

Իսկ 'ի փայտէն կենաց նորոգե-
ցաք ամենեքեան. փառք յա։

Ընդ կանայսն իւղաբերսն առ քեզ
առաւօտեմբք կենդանիդ յարութենից
Քրիստոս. ընկալ և ըզմերս փոխանակ
խընկոցըն զօրհնաբանութիւն։ Փո-
խանակ սուրբ աւետաւոր զըւարթ-
նոյն զըթութիւն քո մեզ հանդի-
պեցի յուսով գիտութեան. մըխի-
թարել ըզ հոգիս և լուսաւորել։
Ընդ նոյսին աւետարանութեամբ
քարոզէսցուք ըզքո միայն ըս-
քանչելիսդ. որ յարեարդ 'ի մե-
ռելոց ամենազօր թագաւոր անմահ։

Որ անճառ էութեամբ հօրդ ես
փառակից. չարչարիլ մարմնով յանձն
առեր վասըն մեր. մըշտնջենաւոր
օրհնութեամբ 'ի հրեշտակաց օրհ-
նեալ ես տէր։ Որ էակդ ես ընդ
հօր և սուրբ հոգւոյն, խաչեցար եւ

Թաղեցա՛ր կամաւ հօ՛ր վասն մեր․ մը՛շտնջե։ Որ միւսանգա՛մ գալոց ես հայրե՛նի փառօք շնորհելով աստուա-ծայե՛ս յա՛րութիւն տիե՛զերաց․ յա-մենայն արա՛րա՜ծոց յաւի՛տենից օրհ։

Հէ․ Ո՛ր 'ի քրովբէական կա՛ռսըղ հա՜նգչիս, այսօր իջե՛ր յերկնից 'ի դա՛ս առաքե՛լոցըն սուրբ հո՛գի․ օ՛րհ-նեա՚լ ե՛ս թագա՛ւո՞ր անմա՛հ։ Ո՛ր գըննա՜ս 'ի վերայ թե՛ւոց հո՜ղմոց․ ա՛յսօր 'ի հրեղէ՛ն լեզո՛ւս բաժանեա՛լ հանգեա՛ր յա՛ռաքեալըն սուրբ հո՛գի․ օ՛րհնեալ։ Որ խնամե՜ս տեսչութեա՛մբ զ․քո զա՛րա՜րածս․ ա՛յսօր եկիր 'ի հա՛ս-տատել զեկե՛ղեցի քո սուրբ հո՛գի․ օ՛րհնեա՚լ։

Հւ․ Զհոգի՜ս ծառայից քոց քրի՜ս-տոս, ը՛նկալ 'ի դա՚ս անդրանկա՛ց գրելոց 'ի յե՜րկի՛նս։ Ընկա՛լ վասըն սոցա՛ ըզքանսուոր պատա՛րագս 'ի՜ մէ՛նջ,

և շնորհեա՛ նոցա ըղձողութիւն գը-
տանել յաւուրն յետնում։ Հաշտեա՛
՚ի ձեռըն սուրբ մարմնոյ և արեան
քո՛ տէր և պարգեւեա՛ նոցա դասիլ
յաջակողմեանըն քո։

Աճ. Ցարուցելոյն ՚ի մեռելոց բը-
նակարան մայր և կոյս, որ ըղնըն-
ջեցեալըն յադամայ կենագործէ ա-
նապական. զքեզ մեծացուցանեմք
որ օրհնեալդ ես ՚ի կանայս։ Արա-
րողին երկնի և երկրի. եղեր տա-
ճար և առագաստ, որ ըղննջեցեալ-
ըն մեր հրեղէն նորոգէ. զքեզ։
Կերակրողին տիեզերաց արբուցեր
ըղքո սուրբ ըղկաթն, որ ըղննջեց-
եալըն մեր վերստին նորոգէ. զքեզ։

Խւ. Որ զանարատ բազուկըս քո ՚ի
խաչին տարածեցեր քրիստոս աս-
տըւած, և նըշան յաղթութեան ե-
տուր մեզ. սոլաւ ըղկեանըս մեր

պահեա։ Որ զաշխարհակեցոյց բազ-
կատարածութիւն խաչի քո քրիստոս
աստուած, զաւազան զօրութեան ե-
տուր մեզ. սովաւ։ Որ ըզմեռեալն
'ի ճաշակմանէ փայտին յանցուանաց,
կենաց փայտիւըն կենագործեցեր.
սովաւ ըզկեանըս մեր պահեա։

Փառք Հօր և Որդ. Այսօր հրեշտակն

Այժմ և միշտ և յա։ Այսօր՝ նոր Իսրայէլ. Տե՛ս յէջ 263։

Քարոզ. «Վասն 'ի գիշերի»։ Տե՛ս յէջ 53։

ոյ. Ալէ. ալէ. ալէ։ Ողորմութեամբ Տեառն լի
եղեւ երկիր. և բանիւ Տեառն երկինք հաստա-
տեցան։ Եւ հոգւով բերանոյ նորա ամենայն զօ-
րութիւնք նոցա։

Ալէ։ Յարեաւ Աստուած և ցրուեցան ամենայն
թշնամիք նորա։ Փախեան ատելիք նորա յերե-
սաց նորա։

Փառք և եր. Այժմ և միշտ.

Դասք հրեշտակաց օրհնեն զքեզ Քրիստոս ալէ-
լուիա. մարդկան ազգ սաղմոսեն քեզ։
Ալէլուիա, ալէլուիա, ալէլուիա։

Հրց. Դկ. Այսօր մեծ աւետիք ա-
դամայ նախաստեղծին տուաւ. արի
որ ննջես, լուսատու եղեւ քեզ
յարութեամբն քրիստոս, աստուած
հարցն մերոց։ Այսօր ձայն աւետ-
եաց յեւայի գոչեն լսելիս դստերքն
իւղաբերք, տեսաք յարուցեալ զյա-
րութիւնն քո քրիստոս. աստուած։
Այսօր հրեշտակք. յերկնից իջեալ
տան զաւետիս մարդկան, յարեաւ
խաչեալն և յարոյց ըղձեալ ընդ
ինքեան. աստուած հար։

Գ. Ըզտէր օրհնեցէք և բարձր արարէք
ըզնա յաւիտեան։

Այսօր տէրն մեր յարեաւ, եկայք
պարեսցուք ընդ հրեշտակս յաղթա-
կան երգով. օրհնե։ Այսօր սիւն
լուսոյ ծագեաց սուրբ եկեղեցւոյ
յարութեամբն ի մեռելոց քրիստոս
օրհնե։

Մեծ. Աստուածածի՛ն տաճա՛ր լո՛ւսոյ, որ մարմնո՛վ պայծառագրեալ անճառաբար ծնար ըզբանն աստուած, զքե՛զ բարեբանեա՛լ մեծացուցանե՛մք։ Ուրախ լեր և բերկրեա մայր և՛ կոյս, քանզի ծննեալն 'ի կուսէդ ամայսօր վերըստին յարութեամբ ծընաւ 'ի կոյս գերեզմանէն. զքեզ։ Ցընծա և զուարճացի՛ր հարսն 'ի յերկրէ երկնից, քանզի այսօր երկնայնոցն իջեալ տայիր քեզ զաւետիս յարութեան միածնի որդւոյ քոյ. ըզ քե՛զ բարեբա՛նեա՛լ մե։

Իւղաբերից Աւետարանի Երգք

Ող. Ա՛յսօր ըզպատե՛ք չարչարանացն ելի՛ց իսրա՛յէլի փոխեցեր 'ի փրկութիւ՛ն հոգւոց զա՛տի՛կ, սուրբ յարութեամբ քո քրիստոս։ Ա՛յսօր ընդ արեա՛նցն օրինակի՛ն անբա՛ն

գառանցըն զենմանց, պարգեւեցեր մեզ գառն աստուծոյ զմարմինըդ քո փըրկական։ Այսօր ընդ անդրանկայն ազատութեան ազատեցեր ըզգերեալսն. պըտուղ կենաց ննջե-ցելոց եւ անդրանիկ մեռելոց։

Տէր. Այսօր հրեշտակք 'ի բար-ձունս ուրախանան ընդ մարդկան. որք իջեալ 'ի յերկնից տան զաւե-տիս աշխարհի. ցընծացէք այսօր քրիստոս յարեաւ 'ի մեռելոց։ Այսօր զուարթունն 'ի վիմին խըրնկաբերից սուրբ կանանցն. փողէր ձայնիւ ցըն-ծութեամբ պատմել աշակերտացն ասելով. ցընծացէք։ Այսօր վիմին հաւատոյ եւ յովհաննու սիրելւոյ ընդ հակառակս ընթացեալ 'ի գե-րեզման յարուցելոյն. զոր տեսեալ պատմէին քրիստ։ Այսօր եւ մեք զուարճացեալք պայծառացուք տօ-

նիւս, ընդ հաշտութեա՛ն աստու-
ծոյ միմեա՛նց արկցո՛ւք գիրկըս սիրով.
եւ միաբա՜ն գոչե՛սցուք քրիստոս
յարեա՛ւ ՚ի մեռելո՜ց:

Փառք ՚ի բարձունս Աստուծոյ. Տես յէջ 58

Առաւօտու Երգ

աձ. Զյարութիւն փըրկչին օրհնեսցուք, զՓըրկչին
ակ. մերոյ օրհնեսցուք զյարութիւն: Յարեաւ
Աստուած և ցրուեցան ամենայն թշնամիք նորա:
բձ. Զյարութիւն փրկչին օրհ:
բկ. Զյարուցեալն ըզՔրիստոս օրհնեսցուք և զյա-
րութիւն նորա փառաւորեսցուք:
գձ. Զյարութիւն փրկչին օրհ:
գկ. Որ ելն ՚ի բարձունս և գերեաց ըզգերութիւն,
էառ աւար, բաշխեաց պարգևս և ետ որդւոց
մարդկան:
դձ. Զյարութիւն փրկչին օրհնես:
դկ. Որ համբերեաց խաչի և եղաւ ՚ի նորափոր
վիմի, և աստուածային յարութեամբն ըզմահա-
ցեալսըն վերաբերեաց ՚ի կեանս:

Քարոզ Ասասցուք Սր. Աստուած, որ յարեար ՚ի մեռելոց:

Ճաշ. Այսօր յարեաւ ՚ի մե. Տե՛ս յէջ :

Գիրք

Ալէ . ալէ . Հասեալ կային ոտք մեր առ դրունս
քո Երուսաղէմ։
Ալէլուիա Որթի։

Աւետարան. ըստ Շարականի Թափորի

Այ. «Ընդ լուսանալ միա»։ Տե՛ս յէջ 264։
Որթի . Աւետարան։

Ա՛կ. Առաքեցար 'ի հօրէ բանդ ան-
տըլած 'ի փրկութիւն ազգի մարդկան.
օրհնեմք ըզքեզ տէր աստուած։
Ի գերեզման իջեր թագաւոր անմահ,
և 'ի հօրէ ոչ մեկնեցար. օրհ։ Ի յե-
րորդ աւուր յարեար աստուածապէս
և 'ի յերկինս համբարձար, փառք
յարութեան քո տէր. օրհնեմք։

Որթի. Աւետարան։

Բյ. Ի գերեզման քո կանխեցին
կանայքն զիւղս և զխունկս բերին.
'ի ծ պատիւ թաղման քո, զի զմեղօք
ըղձողացեալքս վերածեր 'ի կեանս։
Փոխանակ իւղոյն զհաւատս ամբիծս

և զաղաչա՛նըս մե՛ր ընդ առաւօտեան
կա՛նանցն ընկալ. որք զաղջոյն կե՛նաց
լըւա՛ն եւայի ունկա՛մբըն։ Ե՛տուն ա-
ւետի՜ս առաքելոցն յա՛րեա՛ւ յարու-
ցիչըն մե՛ր աւերեա՛ց ըզդըժոխս, և
զթը՛շնամին կապեա՛ց ՚ի յա՛նլոյծ կա-
պա՛նս։

Որթի. Աւետարան։

Բկ. Քո՛ յարո՜ւթեանըդ փա՛ռըք վա-
յելէ՛ երկա՜յնա՛միտ տէ՛ր։ Օ՛րհնեալ
է քո յա՛րութիւնդ աստը՜ւա՛ծ, որ ըզ
մա՛հ մահո՛ւ ծանուցեր քո՛յի՛ն կա-
մաւո՛ր մահուամբդ. քո՛ յարո՜ւթեա-
նըդ։ Գո՛չումն ա՛հեղ հրեշտա՛կին ՚ի
վի՜մին, որ քարոզէ՛ր առ սուրբ կա-
նայսն, յա՛րեա՛ւ տէրն ՚ի մեռելոց.
քո՛ յա՛րո՜ւթեանդ։

Որթի. Աւետարան։

« Որ զանարատ բազուկս քո ։ » Տե․ յեղ 267
Սաղմոս « Նշանեցաւ » ։ Փոխ․ « Ի կարդալ » ։
Տե․ յեղ 183 ։

Աւետարան․ և այլ Անդաստան

Ժամամուտ

Քանզի յարեաւ 'ի մեռելոց, Քրիստոս Աստուած յաւիտենից արարիչ և յարութիւն ազգի մարդկան․ զոր օրհնեն անդադար զինուորութիւնք հրեշտակաց և ամենայն զուարթունք երկնից։ Ընդ որս և մեք գոչելով ասեմք․ փառք սոսկալի յարութեան քո տէր։

Տաղ․ Հանգստ․ գլ․ « Ցիսուս միածինն » Տե․ յեղ 177 ։
Սաղմոս « Ի խորոց կարդացի » Տե․ յեղ 179 ։
Աւետարան․ եւ այլ « Նորաստեղծեալ »
Տե․ յեղ 62․

Խնդրեսցուք « Կեցո »․ և այլ

Խաչի քո Քրիստոս երկիրպագանեմք․ և զսուրբ թաղումնդ քո մեծացու․ և զսուրբ յարութիւնդ քո փառաւորեմք․ եկայք հաւատացեալք։ Փառք սուրբ խաչիդ․ սրբոյ թաղմանդ․ սուրբ յարութեանդ․ Եայլն․ Տե․ յեղ 239

Նշ․ Յարեար տէ՜ր աւե՜րեցեր ըզ

դըժոխս, 'ի յերկինըս համբարձար և
ընդ աջմէ հօր նըստար։

Ի Պատարագին Մեղեդի Յարութեան

Տօնեմք ըզ քո սուրբ զյարութիւնդ. Քրէյ րէյ
րէյ րէյ րի րէյ րի րէյ (եւայլն) րիստոս։
Այսօր ողբային առ գերեզմանին Քրէյ րի րէ
րէյ. րէյ րէյ րի րէյ (եւայլն) րիստոսի։
Ի կոյս վիմէն յարեաւ այսօր, և զգերեալսն 'ի
գերողէն ազատեաց Քրի րէյ րի (ևլն) րիստոս։
Այսօր մեռեալք ընդ կենդանեացս ձայնեն ա-
ւետիս. Քրէյ րէյ րի (ևլն) րիստոս։
Հաւուն հաւուն արթնացեալ դիտելով զհեթա-
նոսս ձայնէր ձայնէր տաարակին սիրանունդ սի-
րելոյն։

ՇԱՐԱԿԱՆՔ ԹԱՓ ՐԻ

Դյ. Փառս աթոռակից Հօր որդի, որ
վասն մեր խոնարհեցար. զդըժոխս ա-
ւերեալ յարեար յաւուր երրորդի.
փառք յարութեան քո տէր։ Հը-
րեշտակապետին իջումն որ ըզպա-
հապանն երկիւղիւ զարհուրեցոյց

առ դրանըն գերեզմանին. փա՜ռք յարութեան: Եւ ըսքանչելի սուրբ կանանցն աւետարանէր ասելով. յարեաւ. քրիստոս յարուցիչըն մեռելոց. փա՜ռք:

Կանանցըն կանխելով ի թաղումըն կենդանւոյն. տեսին ըզմեծ ի դըրանցն ի բաց մերժեալ: Թափուր ըզ գերեզմանն և ունայն տեսանէին, և տրտմութեամբ լային յուսահատեալք: Մայր խաչեցելոյն զի՞ լաս յուսահատեալ, քանզի քրիստոս փառօք մեծաւ յարեաւ:

Ահագին ձայնիւըն քո քրիստոս ի մերայ, խաչին դողացուցեր զարարածս ամենայն զերկնայինս և զերկրաւորս բնութիւնս: Ահագին երևումըն հրեշտակին զարհուրեցոյց ըզկանայսն ասելով. զի՞ խընդրէք ըզկենդանին ընդ մեռեալս: Եւ յահէ զօրութեան

ա՛ստուածորդւոյն զա՛րհուրեցմա՜ն կա՛-
րապետըք դը՛ժոխո՞ցն ասե՛լով․ համ-
բարձե՛ք իշխանք ըզդրօ՛ւնըս ձե՛ր ՚ի՛
վե՛ր ։

---

### ԵՐԳ ԹԱՓՈՐԻ

Միաշաբաթ օր հանգստեան
Կանայքն եկին ՚ի գերեզման․
Եւ ողբային արտասուական
Խնդրել զՅիսուս անապական ։
Ձայնեաց հրեշտակն ուրախական
Զայն որ եդին ՚ի գերեզման․
Ձեզ աւետիս յարեաւ փեսայն,
Դրունք դժոխոց խորտակեցան ։
Մարիամեանքն ուրախացան
Եւ յԱստուծոյ միշտ գոհացան․
Առ աշակերտսն անդրէն դարձան
Տալ աւետիս վասն յարութեան ։

Զ՛քո՛ յարութի՛ւնդ օ՛րհնեմըք մարդա-
սէր․ աղաղա՛կելով տէ՛ր փառըք քե՛զ ։

Ժամամ․ւա․ « Քրիստոս յարեաւ ՚ի մե ։ » Տե․ յէջ 260 ։

Ճաշու « Յարեաւ Քրիստոս » Տե․ յէջ 260 ։

Սբ. Ած. որ յարեար 'ի մեռելոց։

Գիրք Ե. աղ. Սաղմոս։

Գովեա Երուսաղէմ զՏէր։
Եւ օրհնեա զԱստուած քո Սիոն։
Զի զօրացոյց զնիգս դրանց քոց և օրհնեաց զոր-
դիս քո 'ի քեզ։
Ո եդ զսահմանս քո 'ի խաղաղութիւն, պարար-
տութեամբ ցորենոյ լցոյց զքեզ։
Առաքէ զբան իւր յերկիր, վաղվաղ ընթանան
պատգամք Նորա։
Դնէ զձիւն որպէս զասր. և զմէգ որպէս փոշի
ցանեաց։
Արկանէ զսառն որպէս պատառս, առաջի ցրտոյ
Նորա ո՞ կարէ կեալ։
Առաքէ զբան իւր և հալէ զնոսա, շնչեսցէ հողմք
և գնասցեն ջուրք։
Պատմէ զբան իւր Յակոբայ, զարդարութիւն եւ
զիրաւունս Իսրայէլի։
Ոչ այսպէս արար ամենայն ազգաց Տէր, եւ ըզ
դատաստանս իւր ոչ յայտնեաց նոցա։

Սրբասացութիւն. «Ո՞վ է որպէս»։ Տե. յէջ 261.

## ՏԱՂ

Յարեաւ Քրիստոս այսօր աւետիս, որդիք Սիոնի.
ընդ իւր յարոյց մեզ Նախահայրն զանկեալն 'ի
դրախտէն. նաև յարոյց զհոգիս սուրբ հարանց

զզերեալսըն 'ի բանտէն. էառ աւար և գերեաց զհզօրն 'ի պատերազմէն. ցնծացուք, ցնծացուք ո՛վ ազատեալք արեամբ գառինն. քանզի եբաց մեզ ճանապարհ իւրով խաչիւն. և շնորհեաց զայն զոր կորոյս հայր մեր նախկին, և զուարթունք երկնից ընդ մեզ երգակցեալ գոչեն. օրհնեալ է սուրբ յարութիւնդ. գովեալ է սուրբ յարութիւնդ։

---

### ԵՐԳ ԻՒՂԱԲԵՐԻՑ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ

Եղիցի անուն տեառն օրհնեալ 'ի յայսմհետէ մինչեւ 'ի յաւիտեան։

Օրհնեցէք մանկունք զտէր, եւ օրհնեցէք զանուն տեառն։ Եղիցի անուն տեառն օրհնեալ յայսմհետէ մինչեւ 'ի յաւիտեան։ Յարեւելից մինչ 'ի մուտս արեւու օրհնեալ է անուն տեառն, 'ի յայսմհետէ մինչեւ 'ի յաւիտեան։

Փառք եւ երկրպագութիւն հօր եւ որդւոյ եւ սրբոյ հոգւոյն, եւ

այժմ և միշտ և յաւիտեանս յաւի-
տենից ամէն: Ի յայսըմհետէ
մինչեւ ի յաւիտեան:

Արի տէր օգնեա մեզ, եւ
փրկեա ըզմեզ, վասն անըւ-
ւան քո:

Արի և մի մերժեր ըզմեզ իս-
պառ. վասն անըւան քոյ:

Թագաւորեսցէ տէր յաւիտեան
աստըւած քո սիոն ազգէ յազգ:
Օրհնեա անձն իմ ըզտէր, օրհ-
նեցից ըզտէր ի կենդանութեան
իմոյ:

Որթիւ: Աւետարան:

---

ԵՐԳ ՁԿՆԻ ԻՒՂԱԲԵՐԻՑ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ

Փառք յարութեան քո տէր, ոչ
դադարեսցայց բերանս օրհնել ըզքեզ
զամենայն աւուրս կենդանութեան
իմոյ:

Փառք յարութեան քո տէր ողջա-
դարեցայց յիսուս գովել ընդ քեզ զա-
մենայն աւուրս կենդանութեան ի-
մոյ ։

Ես ոչ դադարեցայց փրկիչ փառ-
աւորել ընդ քեզ զամենայն աւուրս
կենդանութեան իմոյ ։
Ի գիշերի համբարձէք ըզձեռս
ձեր 'ի սրբութիւն, և օրհնեցէք
ըզտէր ։

Ահա օրհնեցէք ամենայն ծառայք
տեառն ըզտէր 'ի սրբութիւն, և
օրհնեցէք ըզտէր ։

Լուսապայծառ հրեշտակն
նստելով 'ի կենսատուն. գերեզմա-
նին. և աւետէր կանանցն յարեա-
աստուած ։

## ԱԼԷԼՈՒՔ ՅԱՐՈՒԹԵԱՆ

*Ալէլուիա, Ալէլուիա, Ալէլուիա.*

*Այ. Ողորմութեամբ Տեառն. Տե՛ս յէջ 268։*

*Աւ. Ծա՛փս հարէք ամենայն հեթանոսք, աղաղակեցէք առ Աստուած 'ի ձայն ցը՞նծութեա՛ն։ Տէ՛ր բարձրեալ եւ ահարկու. թագաւոր մեծ 'ի վերայ ամենա՞յն երկրի՛։*

*Ալէ։ Հաճեցա՛ր Տէր ընդ երկիր քո, և դարձուցեր զգերութիւն Յա՞կոբա՛յ։ Թողե՛ր զանիրաւութիւն ժողովրդեան քոյ, և ծածկեցեր զամենայն մեղը՞ս նոցա՛։*

*Փա՛ռք և երկր. Ա՛յժմ եւ միշտ. Ալէ։*

*Բյ. Յարեա՛ւ Աստուած, և ցրուեցան ամենայն թշնամի՞ք նորա՛։ Փախեա՛ն ատելիք նորա յերեսա՞ց նորա՛։*

*Ալէ. Տէ՛ր թագաւորեաց զվայելչութիւն ը՞զգեցա՛ւ։ Զգեցա՛ւ Տէր զօրութիւն ընդ մէջ ի՞ւր էա՛ծ։*

*Փա՛ռք և երկր. Ա՛յժմ և միշտ։ Ալէ։*

*Բւ. Հաճեցա՛ր Տէր ընդ երկիր քո, և դարձուցեր զգերութիւն Յա՞կոբա՛յ։ Թողե՛ր զանիրաւութիւն ժողովրդեան քոյ և ծածկեցեր զամենայն մեղը՞ս նոցա՛։*

*Ալէ։ Օրհնեցէ՛ք մանկունք զՏէր, և օրհնեցէք*

զանո՛ւնըն Տեա՛ռն։ Եղիցի՛ անուն Տեառն օրհ-
նեալ յայսմ հետէ մինչեւ յա՛ւիտեա՛ն։
Փա՛ռք եւ երկր։ Այժմ և միշտ։ Ալէ։

Գյ. Տէ՛ր թագաւորեաց զվայելչութիւն զգե-
ցա՛ւ։ Զգեցա՛ւ Տէր զօրութիւն ընդ մէջ ի՛ւր էա՛ծ։
Ալէ։ Գովեա՛ Երուսաղէմ զՏէր, և օրհնեա
զԱստուած քո՛ Սիոն։ Զի զօրացո՛յց զնիգս դրանց
քոց, եւ օրհնեաց զորդիս քո՛ 'ի քե՛զ։
Փա՛ռք և երկր։ Այժմ և միշտ։ Ալէ։

Գկ. Օրհնեցէ՛ք մանկունք զՏէր, և օրհնեցէք
զանո՛ւնըն Տեա՛ռն։ Եղիցի՛ անուն Տեառն օրհ-
նեալ, յայսմ հետէ մինչեւ յա՛ւիտեա՛ն։
Ալէ։ կենդանի՛ է Տէր, և օրհնեալ է Աստ-
ուած, և բարձր եղիցի Աստուած փրկութեա՛ն
իմո՛յ։ Աստուա՛ծ է որ խնդրէ զվրէժ իմ. և հը-
նազանդ առնէ զժողովուրդս ը՛նդ ինե՛ւ։
Փա՛ռք և երկր։ Այժմ և միշտ։ Ալէ։

Դյ. Գովեա՛ Երուսաղէմ զՏէր. և օրհնեա
զԱստուած քո՛ Սիօ՛ն։ Զի զօրացո՛յց զնիգըս դը-
րանց քոց, և օրհնեաց զորդիս քո՛ 'ի քե՛զ։
Ալէ։ Ողորմութեա՛մբ Տեառըն լի եղեւ երկիր,
և բանիւ Տեառն երկինք հաստատա՛եցա՛ն։ Եւ
հոգւո՛վ բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա։
Փա՛ռք և երկր։ Այժմ և միշտ։ Ալէ։

Դւ. Կենդանի՛ է Տէր և օրհնեալ է Աստուած,
և բարձր եղիցի Աստուած փրկութեա՛ն իմո՛յ։
Աստուա՛ծ է որ խնդրէ զվրէժ իմ, և հնազանդ-
առնէ զժողովուրդս ը՛նդ ինե՛ւ։

Ալէ։ Ծա՛փս հարէք ամենայն հեթանոսք, ա-
ղաղակեցէք առ Աստուած 'ի ձայն ցը՛նծութեա՛ն։
Տէ՛ր բարձրեալ և ահարկու, թագաւոր մեծ 'ի
վերայ ամենա՛յն երկրի՛։

Փա՛ռք և երկր։ Ա՛յժմ և միշտ։ Ալէ։

---

## ԲՇԻ. Բ. ՕՐ ԶԱՏԿԻ. ՄԵՌԵԼՈՑ

Սաղմոս Դլ. ԿԴ. Առաւօտեան Աւետարանի.

Քեզ վայելէ օրհնութիւն Աստուած 'ի Սիօն, եւ
քեզ տացին աղօթք յԵրուսաղէմ։
Լուր աղօթից իմոց, զի առ քեզ ամենայն մար-
մին եկեսցէ։
Բանք անօրինաց զօրացան 'ի վերայ մեր, և զամ-
բարշտութիւնս մեր դու քաւեսցես։
Երանի զոր ընտրեցեր և ընկալար, և բնակեսցին
'ի գաւիթս քո։
Լցցուք մեք 'ի բարութենէ տան քո, սուրբ է
տաճար քո աքանչելի արդարութեամբ։
Լուր մեզ Աստուած փրկիչ մեր, յոյս ամենայն
ծագաց երկրի եւ որ 'ի ծով հեռի։

Որ պատրաստէ զլերինս զօրութեամբ իւրով, եւ զգեցեալ է զօրութիւն։

Որ խռովեցուցանէ զմեծութիւն ծովու, եւ ըզ ձայն ալեաց նորա ցածուցանէ։

Խռովեսցին հեթանոսք, եւ երկիցեն բնակիչք երկրի ՚ի նշանաց քոց։

Ելս առաւօտու ընդ երեկոյս զուարճացցին, հա-յեցար յերկիր արբեցուցեր զնա, և բազում ա-րարեր զմեծութիւն նորա։

Գետն Աստուծոյ լի եղեւ ջուրբ, պատրաստ ա-րարեր զկերակուր նորա, զի այսպէս է պատրաս-տութիւն։

Զակօս նորա արբեցուցեր, և բազում արարեր զարմտիս նորա։

Ի ցօղել նորա զուարթ եղիցի բոյս նորա, օրհ-նեսցի պսակ տարւոյ քաղցրութեան քոյ։

Դաշտք քո լցցին պարարտութեամբ, պարարտաս-ցին գեղեցկութիւնք անապատի։

Բլուրք զցնծութիւն զգեցցին, եւ զգեցցին խոյք մաքեաց։

Հովիտք բազում արասցեն զցորեան, աղաղա-կեսցեն եւ օրհնեսցեն։

Ալէ. Որթի։

Ճաշու Աւետարանի Սաղմոս Գլ. ՃԽԹ։
Գովեա՝ Երուսաղէմ զՏէր. Տե. յէջ 279.

## ԳՃԻ. Գ. ՕՐ ԶԱՏԿԻ

*Սաղմոս Գլ. Ե. Առաւօտեան Աւետարանի.*

*Կց. Տէր որպէս զինու հաճութեամբ քով պըսակեցեր զնոսա։*

*Փ-խ. Բանից իմոց ունկնդիր Տէր, և 'ի միտ առ զաղաղակ իմ։*

*Նայեա՛ 'ի ձայն աղօթից իմոց թագաւոր իմ եւ Աստուած իմ։*

*Ես զքեզ աղաչեմ Տէր, ընդ առաւօտս լուիցես ձայնի իմում, ընդ առաւօտս պատրաստ եղէց յանդիման լինել առ քեզ.*

*Ո՛չ թէ դու Աստուած կամիս զանօրէնութիւն, և ո՛չ բնակին առ քեզ չարք, և անօրէնք մի՛ բընակեսցին առաջի աչաց քոց։*

*Ատեցեր զայնոսիկ, ոյք գործեն զանօրէնութիւն, կորուսանես զամենեսեան ոյք խօսին զսուտ.*

*Զայր արիւնահեղ և զնենգաւոր պիղծ առնես դու Տէր, այլ ես ըստ բազում ողորմութեան քում մտից 'ի տուն քո և երկիրպագից 'ի տաճար սուրբ քո երկիւղիւ քո։*

*Տէր առաջնորդեա ինձ յարդարութեան քում. վասն թշնամեաց իմոց ուղիղ արա առաջի իմ ըզ ճանապարհս քո։*

*Զի ո՛չ գոյ 'ի բերանս նոցա ճշմարտութիւն, եւ սիրտք նոցա նանրեալք են։*

*Որպէս գերեզմանք բաց են կոկորդք նոցա, եւ լեզուօք իւրեանց նենգաւորք եղեն.*

Դատեա զնոսա Աստուած զի անկցին 'ի խորհրդոց սրտից իւրեանց, ըստ բազում ամբարշտութեան նոցա մերժեա զնոսա, զի դառնացուցին զքեզ·

Ուրախ լիցին ամենեքեան՝ ոյք յուսացեալ են 'ի քեզ, յաւիտեան ցնծասցեն, և բնակեսցիս դու 'ի նոսա․

Պարծեսցին 'ի քեզ սիրելիք անուան քո, զի օրհնեսցես դու զարդարն, Տէ՛ր, որպէս զինու հաճութեամբ քով պսակեցեր զնոսա։

Ալէ․ Որթի․

Ճաշու Աւետարանի Սաղմոս Գլ. Ի.

Տէր 'ի զօրութեան քում ուրախ եղիցի թագաւորն, 'ի փրկութեան քում ցնծասցէ յոյժ։

Զցանկութիւն սրտի նորա ետուր նմա, և զկամս շրթանց նորա ո՛չ արգելեր 'ի նմանէ։

Ժաման արարեր զնա յօրհնութիւն քաղցրութեան քո, եւ եդեր 'ի գլուխ նորա պսակ 'ի քարէ պատուականէ։

Կեանս խնդրեաց 'ի քէն և ետուր նմա ընդ երկայն աւուրս յաւիտեանս յաւիտենից։

Մեծ են փառք նորա 'ի փրկութեան քում․ ըզփառս մեծվայելչութեան քո դիցես ի վերայ նորա․

Տացես զնա յօրհնութիւն յաւիտեանս յաւիտենից, և ուրախ արասցես զնա յուրախութիւն երեսաց քոց։

Թագաւոր յուսացաւ 'ի Տէր, յողորմութենէ բարձրելոյն նա մի՛ սասանեսցի։

Գտցի ձեռն քո 'ի վերայ թշնամեաց քոց, և աջ քո գտցէ զամենայն ատելիս քո։

Դիցես զնոսա որպէս հնոց 'ի հուր, 'ի ժամանակի երեսաց քոց։

Տէր բարկութեամբ իւրով խռովեցուսցէ զնոսա, և հուր կերիցէ զնոսա։

Պտուղ նոցա յերկրէ կորիցէ, և զաւակ նոցա յորդւոց 'ի մարդկանէ։

Խոտորեցան 'ի քէն չարութեամբ, խորհեցան ըղ խորհուրդ զոր ոչ կարասցեն հաստատել։

Արասցես զնոսա հալածեալս 'ի մնացուածս քո, պատրաստեսցես զերեսս նոցա։

Բարձր լեր Տէր 'ի զօրութեան քում. օրհնեսցուք և սաղմոս ասասցուք 'ի զօրութեան քում։

# ԿԱՐԳ

## ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅԻՑ ՅԻՆԱՆՑ

Հայր մեր։ Ես առ Ած. կարդ։ Աղօ Սաղմոս. Գլ. ԿԶ.

Աստուած ողորմեա մեզ և օրհնեա զմեզ. երեւեցո զերեսս քո 'ի մեզ և ողորմեա մեզ։

Ծանաչել յերկրի զճանապարհս քո յազինս յամենայն զփրկութիւնս քո։

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք Աստուած, խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ամենայն։

Ուրախ եղիցին և ցնծասցեն ազինք զի դու դատես զժողովուրդս ուղղութեամբ, և ազգաց երկրի դու առաջնորդես։

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք Աստուած, գոհասցին զքեն ժողովուրդք ամենայն։

Երկիր ետ զպտուղ իւր և օրհնեաց զմեզ Աստուած Աստուած մեր։

Աստուած մեր օրհնեսցէ զմեզ, և 'ի նմանէ երկիցեն ամենայն ծագք երկրի։

Աւետարան և այլ

Խոնարհեցո։ Ապրեցո։ Լոյս զուարթ։

Մեսեդի, Օրհնեալ որ գաս յան։

Քարոզ. Ասասցուք։ Սբ. Ած. որ եկիր և գալոց ես։

Համբարձի շարականն են « Որ վերօրհնիս » կամ « Թագաւոր գոլով » Տես յէջ 169 կամ 171։

Աղ. Սաղմոս Գլ. Զ.

Ցնծացէք առ Աստուած օգնական է մեր, աղա-
ղակեցէք առ Աստուած Յակոբայ։
Առէք սաղմոս և տուք օրհնութիւն, սաղմոս ա-
սացէք նմա 'ի ձայն քաղցրութեան։
Փող հարէք 'ի գլուխս ամսոց, յաւուր նշանաւորի
տարեկանաց մերոց։
Հրաման է այս Իսրայէլի, և իրաւունք են Աս-
տուծոյ Յակոբայ։
Վկայութիւնն Յովսէփու, զոր եդ ընդ նմա, որ-
պէս ելանէր նա յերկրէն եգիպտացւոց, լեզու
զոր ոչ գիտէր՝ լուաւ։
Ի բաց արար 'ի բեռանց զթիկունս նորա, եւ
զձեռս նորա յորթ և 'ի թի ծառայելոյ։
Ի նեղութեան կարդացեր առ իս և փրկեցի ըզ
քեզ, լուայ քեզ 'ի գաղտնութենէ մրրկին, և փոր-
ձեցի զքեզ 'ի վերայ Ջուրցն հակառակութեան։
Լուր ժողովուրդ իմ և վկայեմ քեզ, և Իսրայէլ՝
թէ լուիցես ինձ։
Մի՛ ևս եղիցին քեզ աստուածք առժամայնք, եւ
մի՛ երկիրպագանիցես դու Աստուծոյ օտարի։
Ես եմ Տէր Աստուած քո որ հանի զքեզ յերկրէն
Եգիպտացւոց. բաց զբերան քո և լցից զդա։
Ժողովուրդ իմ ոչ լուաւ ձայնի իմում, և Իսրա-
յէլ յիս ինչ ո՛չ նայեցաւ։
Բարձի թողի զնոսա երթալ զհետ կամաց սըր-

տից իւրեանց, զի գնացին նոքա ըստ կամս ան-
ձանց իւրեանց։

Զի թէ ժողովրդեան իմոյ լուեալ էր ինձ, կամ
Իսրայէլի զճանապարհս իմ գնացեալ էր։

Որպէս զոչինչ խոնարհ արարեալ էր իմ զթշնա-
միս նորա, և 'ի վերայ նեղչաց նորա արկեալ էր
զձեռն իմ։

Թշնամիք Տեառն ստեցին նմա. և եղիցին ժա-
մանակք նոցա յաշխարհի։

Կերակրեաց զնոսա 'ի պարարտութենէ ցորենոյ,
եւ 'ի վիմէ մեղր յագեցոյց նոցա.

Աւետարան. տղա կեցո։

(Ցինանց Կիւրակէից առաւօտեան Աւետարանի Սաղ-
մոսն է Կց. « Ցոյց մեզ Տէր. » Փոխ. « Հաճեցար Տէր
ընդ եր: » Տե. յէջ 30։)

## ԿԱՐԳ

## ՏՕՆԻ ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ՏԵԱՌՆ

Հետեւակ Շար. « Մեծահրաշ այս խոր: »

Օրհ. տյ. Համբարձման տէրըն մեր յեր-
կինս ասելով աշակերտացն նստարուք
'ի քաղաքիդ Երուսաղէմ. մինչև
զգենուցուք զօրութիւն 'ի բարձանց։

Միաբանեալ սուրբ առաքեալքն միախորհ և միակրօն. միաբան նստէին 'ի սուրբ վերնատանն. և ակն ունէին գալստեան սուրբ Հոգւոյն: Յանկարծակի եհաս 'ի նը-մանութիւն լուսոյ փայլման. և եկ-եալ բնակեցաւ 'ի սուրբ առաքեալ-սըն. մինչդեռ նըստէին 'ի սուրբ վերնատանն:

Համբարձման տէրըն մեր քրիստոս օրհնութեամբ ընդ ամպս երկնից. և առաքելոցն երկրպագեալ դար-ձան յԵրուսաղէմ. միաբանու-թեամբ վերառաքէին զաղօթս. Մըտ-եալ 'ի յերկինըս բերկրաւոր զօրք բազմութեամբ հրեշտակաց. որք ա-ղաղակէին և ասէին. օրհնեալ եկեալ 'ի յանունըն տեառն: Նըստ-եալ ընդ աջմէ ծընողին. կատարե-լով զխոստացեալ պարգևսն. մըխի-

Ժամուն սուրբ Հոգին գայ առ ձեզ. աղբերացուցանել զմեծ զողորմութիւն։

Քարոզ դկ. « Վասն ՚ի վերուստ »։—Տե. յէջ 52։

Ալէլուիա, ալէլուիա, ալէլուիա։
Խոնարհեցոյց զերկինս եւ էջ. և մէգ ՚ի ներքոյ ոտից նորա։ Ել ՚ի քրովբէս և թռեաւ, սլացաւ նա ՚ի թեւըս հողմոց։
Ալէ։ Համբարձաւ Աստուած օրհնութեամբ եւ Տէր մեր ձայնիւ փողոյ։ Սաղմոս ասացէք Աստուծոյ մերում. սաղմոս ասացէք թագաւորին մերում, սաղմոս ասացէք։
Փառք եւ եր։ Այժմ և։ Ալէլուիա։

Հարց Դկ. « Օրհնեցի պսակ »․ Խաղ ողբոյն։
Աստուածոյ Եղէ

Զյարութիւն Փրկչին օրհնեսցուք, զՓրկչին մերոյ օրհնեսցուք զյարութիւն։
Համբարձաւ Աստուած օրհնութեամբ եւ Տէր մեր ձայնիւ փողոյ։

Սր. Ած. որ համբարձար փառօք առ Հայր։

Շար. « Համբարձաւ Տէրն մեր » ։ Տե. յէջ 292։

Գիրք և այլ Սաղմոս. Ալէ. ալէ.։ Համբարձաւ Աստուած օրհնութեամբ և Տէր մեր ձայնիւ փողոյ։

Աւետարան. ապ.

Դուշնաւ Շարական. «Համբարձաւ Տէրն մեր Քրիստոս»։
Տե. յէջ 293։

Աւետարան և ապ. Անդաստան։

Ապ. Սաղմոս ձայնիւ Գղ. ԻԳ.

Կց. Համբարձէք իշխանք զդրունս ձեր 'ի վեր, համբարձցին դրունք յաւիտենից և մտցէ Թագաւոր փառաց։
Փխ. Տեառն է երկիր լրիւ իւրով, աշխարհ և ամենայն բնակիչք նորա։
Նա ինքն 'ի վերայ ծովու հիմունս էարկ նմա, 'ի վերայ գետոց պատրաստեաց զնա։
Ո՞վ ելցէ 'ի լեառն Տեառն, կամ ո՞վ կայցէ 'ի տեղւոջ սրբութեան նորա։
Որ սուրբ է ձեռօք և անբիծ սրտիւ, որ ոչ էառ զնանրութիւն յանձն իւր և ոչ երդուաւ ընդ ընկերի իւրում նենգութեամբ։
Սա առցէ զօգնութիւն 'ի Տեառնէ զողորմութիւն, յԱստուծոյ փրկչէ իւրմէ։
Այս ազգ է որ խնդրէ զՏէր, խնդրէ տեսանել զերեսս Աստուծոյ Յակոբայ։
Համբարձէք իշխանք զդրունս ձեր 'ի վեր, համբարձցին դրունք յաւիտենից և մտցէ Թագաւոր փառաց։
Ո՞վ է սա Թագաւոր փառաց Տէր հզօր զօրու-

Թեամբ իւրով, Տէր կարող 'ի պատերազմի։
Համբարձէք իշխանք զդրունս ձեր 'ի վեր, համբարձին դրունք յաւիտենից, և մտցէ Թագաւոր փառաց։

Ո՞վ է սա Թագաւոր փառաց։ Տէր զօրութեանց՝ սա ինքն է Թագաւոր փառաց։

Աւետարան և այլ Կեցո։

Ի ժամ Ս. պատարագին Ժամամուտ

Հիացան վերնական բազմութիւնքն տեսանելով զքեզ 'ի հրեղէն կառս բազմեալ, սարսեալ ասէին, ո՞վ է սա որ դիմեալ գայ յեդովմայ, եւ եկեալ մտանէ փառօք 'ի փառս, Տէր փառք քեզ։ Որ յանպատում աթոռ նստիս և յանմարմնոցըն վերօրհնիս, անհասանելի բանդ. Աստուած 'ի յերկրի երևեցար ճշմարիտ մարդ, զանօրէնութեանն կատարեալ զխորհուրդ, խաչի և մահու համբերեցեր և զհրաշալի յարութիւնդ քո ցուցեր հզօր զօրութեամբ. այսօր համբարձար փառօք 'ի յերկինս և զկուսածին մարմինդ քո հրաշափառապէս լուսազարդեցեր, զոր տեսեալ Եսայիաս՝ նախաձայնեալ ասէր, ո՞վ է սա որ դիմեալ գայ յերկրէ։ Հիացեալ պետութեանց երկնից գոչէին առ միմեանս. համբարձէք իշխանք զդրունս ձեր 'ի վեր և մտցէ Թագաւոր փառաց։ Արդ՝ որ յամենայնի կարողդ ես եւ հզօր, շնորհեա եւ մեզ հանդիպել քեզ ամպովք 'ի միւսանգամ քո գալըստեանդ, որ միայնդ ես մարդասէր։

Ճաշու ած. « Գովեա Երուսաղէմ զՏէր : »

Որ համբարձան այսօր աստուածային իշխանութեամբ 'ի հայրական 'ի կառս, սպասաւորելով 'ի հրեշտակական դասուցն. որք նըւագէին անսելով, համբարձէք իշխանք ըզդրունս ձեր 'ի վեր, եւ մտցէ թագաւոր փառաց : Հիացան վերնական իշխանութիւնքն եւ սոսկալի ձայնիւ աղաղակէին առ միմեանս. ով է սա թագաւոր փառաց, եկեալ մարմնով և սքանչելի զօրութեամբ. համ: Եղանակէին վերնական պետութիւնքըն հրաշալի ձայնիւ. երգէին երգ նոր մտելով. սա ինքն է թագաւոր փառաց, փրկիչ աշխարհի և ազատիչ ազգի մարդկան. համբարձէք իշ :

Ճաշու Սաղմ. « Համբարձէք » Տես յէջ 295 :

Սրբասացութիւն. « Ով է որպէս » : Տես յէջ 261 :

Բ. Ծաղկազարդէ նախընթաց շաբաթ երեկոյեան առաջին Անտաստանի Սաղմ. Գլ. ԽԶ.

Կց. Համբարձաւ Աստուած օրհնութեամբ եւ Տէր մեր ձայնիւ փողոյ։

Փխ. Ծափս հարէք ամենայն հեթանոսք, աղաղակեցէք առ Աստուած 'ի ձայն ցնծութեան. Տէր բարձրեալ եւ ահարկու, թագաւոր մեծ 'ի վերայ ամենայն երկրի։

Հնազանդ արար զժողովուրդս մեզ, եւ զհեթանոսս 'ի ներքոյ ոտից մերոց։

Ընտրեաց զմեզ իւր 'ի ժառանգութիւն, զգեղեցկութիւն Յակոբայ զոր եւ սիրեաց։

Համբարձաւ Աստուած օրհնութեամբ, եւ Տէր մեր ձայնիւ փողոյ։

Սաղմոս ասացէք Աստուծոյ մերում, սաղմոս ասացէք թագաւորին մերում սաղմոս ասացէք։

Թագաւոր մեծ 'ի վերայ ամենայն երկրի Աստուած է, սաղմոս ասացէք նմա իմաստութեամբ։

Թագաւորեաց Աստուած 'ի վերայ հեթանոսաց, Աստուած նստաւ յաթոռ սրբութեան իւրոյ։

Իշխանք ժողովրդոց ժողովեցան առ Աստուած Աբրահամու, զի Աստուծոյ զօրութիւնք յերկրէ յոյժ ամբարձան։

Արձակման Աւետարանի Սաղմոս կց. Համբարձէ՛ք։

Փխ. Տեառն է երկիր. Տե. յէջ 295։

# ԿԱՆՈՆ

## ՆԱԽՈՐԴ ԵՐԵԿՈՅԻ ՀՈԳԵԳԱԼՍՏԵԱՆ

*Սաղմոս առաջին Աւետարանի կը. « Համբարձաւ »։*

*քխ. Դ« Ծափս հարէք »։ Տե. յէջ 298։*

*Աւետարան. Խոնարհեցո, Ապրեցո. Լոյս զուարթ։*

*Մեսեդի. « Օրհնեալ եկեալդ »։ « Տէր Աստուած մեր »։*

*« Սուրբ Ած. որ եկիր և գալոց ես »։*

Հք. Դյ. Առաքելոյ աղաւնւոյ իջանելով մեծաձայն հնչմամբ 'ի բարձանց 'ի նմանութիւն լուսոյ փայլման հրազինեաց անկիզելի զաշակերտսն. մինչդեռ նստէին 'ի սուրբ վերնատանն։ Աննիւթական աղաւնի անքննելի որ քննէ զխորս աստուծոյ, զոր առեալ 'ի հօրէ պատմէ զահաւոր և զմիւսանգամ գալուստն. զոր քարոզեցին համա-

գոյական։ Օրհնութիւն 'ի բարձունս Երրորդին 'ի հօրէ հոգւոյն սրբոյ. որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն. և հրաւիրեցին զերկիրս 'ի յերկինս։

Կենդանարար աստուածային մարդասէր հոգի ըզժողովեալըն միաբանական սիրով լուսաւորեցեր հրեղինօք լեզուօք. վասն որոյ և մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո սուրբ։ Զուարճացան քո գալըստեամբըն սուրբ առաքեալքըն գոչելով 'ի միասին. ըզցնծութիւն 'ի միմեանց բազմաձայն լեզուօք վասն որոյ և մեք այսօր տօնեմք ըզգալուստ քո սուրբ։ Հոգևորական սուրբ մըկըրտութեամբ զարդարեցեր նոքօք ըզտիեզերս 'ի ըզգեստըս լուսափայլս և նորափետուրս. վասն որոյ և մեք։

## Արձակման Սաղմոս Գլ. ՃԽԲ.

Կց. Հոգի քո սուրբ և բարի առաջնորդեսցէ ինձ 'ի յերկիր ուղիղ։

Փխ. Տէր լուր աղօթից իմոց, ունկնդիր խնդրուածաց իմոց ճշմարտութեամբ քով։

Լուր ինձ արդարութեամբ քով, եւ մի մտաներ 'ի դատաստան ընդ ծառայի քում, զի ոչ արդարանայ առաջի քո ամենայն կենդանի։

Հալածեաց թշնամին զանձն իմ, խոնարհ արար յերկիր զկեանս իմ, և նստոյց զիս 'ի խաւարի որպէս մեռեալ յաւիտենից։

Ձանձրացաւ յիս հոգի իմ, և սիրտ իմ խռովեցաւ յիս։

Յիշեցի զաւուրսն զառաջինս, խորհեցայ յամենայն գործս քո, յարարածս ձեռաց քոց խորհեցայ, եւ համբարձի առ քեզ զձեռս իմ։

Անձն իմ որպէս երկիր ծարաւի է առ քեզ, վաղվաղակի լուր ինձ Տէր, զի նուաղեցաւ յինէն հոգի իմ։

Մի դարձուցաներ զերեսս քո յինէն, նմանիցիմ այնոցիկ որք իջանեն 'ի գուբ։

Լսելի արա ինձ առաւօտու զողորմութիւնս քո, զի ես 'ի քեզ Տէր յուսացայ։

Ցոյց ինձ ճանապարհ՝ յոր եւ գնացից. զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ։

Փրկեա զիս 'ի թշնամեաց իմոց Տէր, զի զքեզ ապաւէն ինձ արարի։

Ուսո՛ ինձ առնել զկամս քո, զի դու ես Աստուած իմ։

Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ 'ի յերկիր ուղիղ։

Վասն անուան քոյ Տէր կեցուսցես զիս, արդարութեամբ քով հանցես 'ի նեղութենէ զանձն իմ։

Ողորմութեամբ քով սատակեսս զթշնամիս իմ եւ կորո՛ զամենայն նեղիչս անձին իմոյ, զի ես ծառայ քո եմ։

Ալէ. Որթի. Աւետարան. ապա Քարոզ «Գոհաբանելով»։ կեցո։

# ԿԱՐԳ

## ԱՌԱՒՕՏՈՒ ՀՈԳԵԳԱԼՍՏԵԱՆ

Տէր զի բազում, խոր. սուրբն, Տես յետ 1—50։

Կանոնագլուխ Ակ. «Ասաց անզգամն» Տես յետ 17։
Հետեւակ շար. «Համբարձաւ Տէրն մեր» » » 292։
Օրհնութիւն. «Առաքելոյ աղաւնւոյ» » » 299։
Քարոզ Ակ. «Վասն ուղղելոյ» » » 53։

Ալէլուիա, ալէլուիա, ալէլուիա։

Սի՛րտ սուրբ հաստատեա յիս Աստուած, և հոգի

ուղիղ նորոգեա 'ի փորի՞ իմո՛ւմ։ Մի՛ ընկենուր զիս Տէրյերեսաց քոց. և զհոգի քո սուրբ մի հա-
նե՞ր յինէ՛ն։
Ալէ։ Թե՛ւք աղաւնւոյ արծաթապատ և թիկնա-
մէջ նորա 'ի գո՞յն ոսկւո՛յ։ Ի գումարե՛լ երկնա-
ւորին զթագաւորս 'ի վերայ նորա, ձիւնասցին 'ի՞
Սաղմո՛ն։
Փա՜ռք եւ երկր։ Ա՛յժմ և միշտ։

Հարց ած. « Զհոգւոյն զգալուստն » է–ր ստրօէ.

ԵՐԳ ԶԿՆԻ ԻՒՂԱԲԵՐԻՑ ԱՒԵՑԱՐԱՆԻՆ

Իջեալ Հոգին յառաքեալսն. եւ հրազինեաց զընտրեալսն անկէզ 'ի սուրբ վերնատանն. եւ հանգեաւ նոքօք յազգս մարդկան զանազան լեզուաց բաժանմամբ։

ԱՌԱՒՕՏՈՒ ԵՐԳ

Զգալուստ հոգւոյն օրհնեսցուք, զհոգւոյն սրբոյ
օրհնեսցուք ըզգալուստ։
Ցեկեղեցիս բարեբանեցէք զԱստուած, եւ զՏէր
յաղբերաց Իսրայէլի։

« Սբ. Ած. որ եկիր եւ հանգեար յառաքեալսն։ »

է Թափօրէն

Շար. դշ. « Առաքելոյ աղաւ. » Տե՛ս յէջ 299։

Գիրք Ե տաղ Սաղմոս։

Ալէ. ալէ. Հոգւո քո սուրբ և բարի առաջնոր-
դեսցէ ինձ 'ի յերկիր ուղիղ.

Աւետարան. Ն — ողո Անդաստան

ողո Շարական հանգստեան։

Ա. Արարիչ աստուած եւ ըստեղ-
ծիչ ազգի մարդկան, մի անտես
առնէր ըզննջեցեալսըն մեր, այլ
հանգո պհոգիս նոցա ընդ սուրբըս
քո։ Որդիդ միածին յարութիւն
տիեզերաց, մի ան։ Հոգիդ ճըշ-
մարիտ մըխիթարիչ սըգաւորաց,
մի ան։

Ուրախ լեր աստուածածին տա-
ճար անխախտելի զքեզ մեծացու-
ցանեմք։ Յղացար անարատաբար և
զաստուած վայելչապէս ծընար. ու-
րախ։ Երգէ մարգարէն սուրբ է տա-
ճար քո սքանչելի արդարութեամբ,
և դուռն երկնային. ուրախ լեր։

Սեղան քո տէր զօրութեանց հա-ւատով կանգնեցաւ 'ի խորանի քում. եկայք ժողովուրդք երկրպագես-ցուք ։ Վէմ պատուական 'ի խորա-նի քում հիմնեցաւ այսօր, եկայք ժողո ։

Փառք Հօր և Որդւոյ։

Ի սմա մատուցանէ ճշմարիտ պատա-րագ և զենումն անապական. եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։

Այժմ եւ միշտ եւ ։

Եւ նորոգող սուրբ Հոգի, յորժամ նորոգես զապականեալսն. յայնժամ շնորհեա և մեր ննջեցելոցն արժա-նաւորել հանգստեան օթեւանին սր-բոցն ։

Սաղմ. կդ. Եղիցին ականջք։ Փ.խ. Ի խորոց կարդացի ։
Տես յէջ 179.

Աւետարան. Հոգւոց և այլ Շարական։

Բկ. Երրորդութիւն անքննելի

և զօրութիւն երկնային. լոյս ծագ-
եալ յաշխարհ. Նըմա: Հան-
ցուք զօրհնութիւնս երգով. Որ
էջըն յերկնից այսօր եւ հանգեաւ
յառաքեալըն ճշմարիտ սուրբ հո-
գին. Նը. Որ 'ի խորհուրդըս փըր-
կանս, այսօր ընդ ի ջանել յա-
ռաքելոյն ծանուցան մարգարէին.
Նըմա:

Նորաստեղծեալ. Տես յէջ. 62:

---

Ի Պատարագին «Մեղեդի»

Այսօր Հոգին սուրբ եկեալ
Երկնից կամաւ Հօր իջեալ
Լեզուք հրեղէնք բաժանեալ
Ի յառաքեալըն հանգեալ:

Ժամանակ

Աստուած զքեզ խոստովանիմք զսուրբ Հոգիդ և երկրպագանեմք, որ ես պատճառ կենդանութեան եղելոց և խաղաղարար աշխարհի. որ ընդ-տգիտութիւն աշակերտացն բաղում գիտութեամբ

ցեր, և 'ի Հրեղէն լեզուս բաժանեալ անճառ-
ռելեօք ցուցար նոցա. աղաղակեմք Տէր խնայեա
և կեցո զմեզ։

Ձայն Տաղական

Բյ. Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ:

Որ 'ի Հարաշարժ 'ի յաղբերէն յառաջ բղխեալ անհատաբար 'ի յորդւոյ տիրապէս սուրբ Հոգին, այսօր 'ի յերկնից սաստիկ Հեղեալ 'ի դասս առաքելոցն լցուցիչ բոլորից. ըզնա օրհնեսցուք երկրպագելով։ Որ յանըսկիզբն և ի միշտ 'ի յէէն նոյնագոյ բընութեամբ անորիշ բաժանմամբ 'ի յորդւոյ. արարչակից սուրբ Հոգին. այսօր Հրով բաժանեալ լեզուս քարոզիցն, 'ի լոյս ածեալ զազգըս մարդկան բաժանմամբ պէսպէս շընորհաց. ըզնա։ Որ 'ի վերայ ջուրցն գոլով գոյացոյց զարարածս, անանջրպետն

՚ի Հօրէ և յո՛րդւոյ իշխանակի՛ց սուրբ Հոգի՛ն. ա՛յսօր վէ՛րա՛ծնեա՛ց զազգս ամենայն ջրո՛յ կենդանւոյ բղխեա՛լ յերուսաղէ՛մ. ընդնա՛ ծրհնեա։

Գիրք Ն ողջ Սաղմոս։

Այլ. ալէ։ Ողորմութեամբ Տեառն լի եղեւ երկիր, և բանիւ Տեառն երկինք հաստատեցան, և հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա։

Սրբասացութիւն. «Հրեշտակային»։ Տե. յէջ 182։

Շարականք նախ քան զԱղօթս սրբոյ Պատարագին։

Բյ. Սա՛րսափելի հողմոյ նը՛ման ա-հեղագո՛չ սաստիկ հնչմամբ, ե՛րեւե-ցա՛ր ՚ի վե՛րնա՛տանն հոգի՛դ դասուն ե՛րկոտասան. ո՛րք առ ՚ի քէն մըկըր-տեցան որպէս զոսկի՛ հրով մաքրեցան մա՛քրեա՛ ՚ի մէ՛նջ ըզմէ՛գ մե՛ղաց և ը՛զգեցո՛ ը՛զլոյս փառա՛ց։ Ե՛կիր յերկիր աստուածաբար դատել զաշխա՛րհս ե՛շխանաբար. ը՛նդ արդա՛րութեա՛ն և

ընդ մեղաց և ընդ չարին 'դատաս-
տանաց. բացեր ըզգանձ անհիւ-
թական պարգևս ետուր որդւոց
մարդկան. մաքբրեա ի մէնջ ըզմէգ
մե։ Սէրն 'ի սիրոյ զսէրդ առաքեաց
յինքըն զանդամս իւր քեւ յօդեաց. զե-
կեղեցի իւր զօր չինեաց, եօթըն
սեամբ քո հաստատեաց. տընտես 'ի
նմա եդ զառաքեալսն, եօթնեակ
շնորհօք քո զարդարեաց. մաքբրեա։

Աղօթք և տաղ Հայր երկնաւոր։

Բկ. Այսօր երկնայինքն ուրախա-
ցան ընդ երկրաւորացս նորոգումն.
քանզի նորոգողն էից հոգին էջ 'ի
սուրբ վերնատունն, որով նորոգե-
ցան դասք առաքելոցն։ Այսօր հո-
ղանիւթեայ բնութիւնս ցընծայ ընդ
հօր հաշտութեան. քանզի որ եբարձ
զհոգին 'ի մարդկանէ մարմին եղե-

լոց. դարձեալ վերըստին ըղնոյն
պարգեւէ: Այսօր մանկունք եկե-
ղեցւոյ տօնեն ցնծութեամբ զգա-
լուստ սուրբ Հոգւոյն. որով զարդա-
րեցան 'ի զգեստըս լուսափայլս և գե-
րապայծառս. երգեն ընդ սրովբէին
զերեքսըրբենին:

Աղօթք և այլ Որդի Աստուծոյ.

Որ 'ի վերայ բղխեալ գաւազանին
յեսսեայ Հանգեալ եօթնարփեան
շնորհօք, Հոգի աստուծոյ և խոր-
Հըրդոյ, Հոգի Հեզութեան և զօրու-
թեան, Հոգի իմաստութեան և գի-
տութեան, Հոգի երկիւղի աստուած-
պաշտութեան. աղաչեմք շնորհեա
և մեզ ողորմութեամբ 'ի քոց պար-
գեւացդ: Որ զգուշակեալըն քո ե-
սայեաւ ելից օծեալըն 'ի քէն մարմ-
նով. ասէ Հոգի տեառն 'ի վերայ

իմ. զոր 'ի տնօրէնութեաննըն խո-
նարհութեամբ ընթերցեալ որ վասն
ի՛ւր զբան մարգարէին. աղաչեմք
շնորհեա: Որ զառաքումն առ 'ի հօրէ
և 'ի հոգւոյդ բանին յաշխարհ.
մարգարէիւքըն ծանուցեր, զոր
'ի դիմաց մարդացելոյն բարբառէր
առ մարդկութիւնս տէր տէր առա-
քեաց զիս և հոգի նորա. աղ:

Աղօթք և աղօ Հոգի Աստուծոյ.

ՏԱՂ

Ներհիւսեսցուք գքաղցր եղանակ վայելչահիւս
երից անձանց. ծնողին և ծնեցելոյն և բղխեցե-
լոյ Սրբոյ Հոգւոյն:

# ԿԱՐԳ

## ՇԲ. ԵՐԵԿՈՑԻ Է. ԱԻՈՒՐ ՀՈԳԵԳԱԼՍՏԵԱՆ

*Սաղմոս ԳԼ. ԻԲ. ձայնիւ.*

*Տէր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ո՛չ պակասեսցի։*
*Ի վայրի դալարւոջ անդ բնակեցոյց զիս, եւ առ*
*ջուրս հանգստեան սընոյց զիս։*
*Դարձոյց եզանձն իմ առ իս, և առաջնորդեաց*
*ինձ 'ի ճանապարհս արդարութեան վասն անուան*
*իւրոյ։*
*Թէպէտ եւ գնացից ես 'ի մէջ ստուերաց մահու,*
*ո՛չ երկեայց 'ի չարէ, զի դու Տէր ընդ իս ես։*
*Ցուպ քո և գաւազան, նոքա մխիթարեսցեն զիս։*
*Պատրաստ արարեր առաջի իմ զսեղան, ակն*
*յանդիման նեղչաց իմոց։*
*Օծեր իւղով զգլուխ իմ, բաժակ քո որպէս ա-*
*նապակ արբեցոյց զիս։*
*Ողորմութիւն քո Տէր զհետ Նիմ եկեսցէ զամե-*
*նայն աւուրս կենաց իմոց, բնակել ինձ 'ի տան*
*Տեառն ընդ երկայն աւուրս։*

*Աւետարան. Խոնարհեցո, Ապրեցո. Լոյս՛զուարթ։*
*Մեսեդի. «Աստուած Աստու։» «Ցեկիցն արեգական»։*
*Քարոզ. Ասասցուք։*
*« Սուրբ Ած. որ եկիր և հանգեար յառաքեալսն »։*

Հմբ. Դյ. Հո՛գին սուրբ է՛ր միշտ և՛ է
և ե՛ղիցի. ո՛չ ըսկըսեալ եւ ո՛չդադար.

եալ. այլ միշտ ընդ հօր և ընդ որ-
դւոյ կարգեալ եւ թըւեալ, և միշտ
օրհնեալ է ի յաւիտեան։ Էր միշտ
ընդունող սըրբող, և լըցուցիչ աստ-
ուածացուցիչ. և միշտ ընդ հօր և
ընդ որդւոյ կարգեալ և թըւեալ
և միշտ օրհ։ Մշտաշարժ ինքնաշարժ
ինքնիշխան ինքնազօր ամենազօր.
վասըն զի շընչէ ուր կամի, յորքան
ախորժէ յորժամ և որքան. և միշտ
օրհ։ Ինքըն քննեան նոյն միշտ
ընդ որըս դասեցաւ աներեւոյթ ան-
ժամանակ, անայլայլելի անփոփո-
խելի. և միշտ օրհ։ Առանց որ-
քանութեան, առանց որպիսութեան
առանց տեսութեան անչօշափելի.
և միշտ օրհ։ Տէր առաքիչ որոշիչ,
տաճար առնէ ինքըն ինքեան, ա-
ռաջնորդէ, զօրացուցանէ, որպէս և
կամի բաժանէ ըզշնորհս. և միշտ

որհ։ Կեանք եւ կենդանարար, լոյս
և գոյացուցիչ լուսոյ, ինքըն բարի
աղբիւր բարութեան, հոգի ուղիղ
առաջնորդական, եւ միշտ որհ։
Հոգի զօրութեան եւ երկիւղի, ո-
րով հայր ճանաչի և որդի փառա-
ւորի. որոց մի կարգ, մի պատիւ,
մի երկրպագութիւն, կատարելու-
թիւն սրբութեան, եւ միշտ որհ։

Արձակման Սաղմոս Գլ. ՂԲ։

Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ,
զգեցաւ Տէր զօրութիւն ընդ մէջ իւր էած։
Հաստատեաց զաշխարհ զի մի սասանեսցի, պատ-
րաստ է աթոռ քո 'ի սկզբանէ յաւիտենից դու ես։
Ամբարձան գետք Տէր, և ամբարձին գետք ըղ-
ձայնս իւրեանց, և յարիցեն գետք 'ի գնացս
իւրեանց։
Ի ձայնէ ջուրց բազմաց սքանչելի եղեն զբօսանք
ծովու։
Սքանչելի ես դու Տէր 'ի բարձունս, վկայութեանց
քոց մեք յոյժ հաւատացաք։
Տան քում վայելէ սրբութիւն, Տէր ընդ երկայն
աւուրս։

Աւետարան. տես Խնդրեսցուք. կեցո։

# ԿԱՆՈՆ

## ՆԱԽՈՐԴ ԵՐԵԿՈՑԻ ՏՕՆԻ ԿԱԹՈՂԻԿԷ ԵԿԵՂԵՑՒՈՅ

*Խոնարհեցո։ Ապրեցո։ Լոյս զուարթ։*

*Մեսեդի, «Աստ օրհնեցէք»։ «Ո կայք 'ի տուն»։*

*Սբ. Աձ. որ խաչեցար վասն մեր*

Հմբ. Գյ. Ուրախ լեր սուրբ եկեղեցի, քանզի քրիստոս արքայն երկնից այսօր պըսակեաց ըզքեզ խաչիւն իւրով. և զարդարեաց զամուրըս քո սքանչելի փառօքն իւրովք։ Խընդա յոյժ դուստըր սիօնի. քանզի երկիրս երկինք եղեն այսօր վերստին քո նորոգմամբ, և թագաւորն երկնաւոր հաճեցաւ բընակիլ 'ի քեզ։ Ընդ դասս երկնաւոր զօրացըն վեր-

առեալ մծ՛նե՛մըք քեզ ա՛յսօր զա՞ն-
դադա՛ր փառաւորութիւնս, ուրա՛խ
լե՛ր հա՛րսն անարա՛տ ա՛նքըննին քո
խո՛րհրդո՛վ:

Խորա՛ն սը՛րբութեա՛ն կանգնե-
ցաւ սուրբ ե՛կե՛ղեցի, և քրիստո՛ս
թա՛գաւորն 'ի սմա՛ պա՛տարագեալ.
Ե՛կա՛յք հաւատացեալք ե՛րգեսցո՛ւք
քրի՛ստոսի երգ նո՛ր: Դա՛սք հրե՛շտա-
կացըն վայր ի՛ջեալ յերկնի՛ց երգե՛ն
ա՛սելով, հրաշալի՛ ձա՛յնիւն ե՛ղա՛նա-
կելով, ե՛րգեն զերգս օ՛րհնութեան
ե՛րրե՛ակ սրբասաց ձայնի՛ւ: Ուրա՛խ
լե՛ր բերկրեա՛ց հարսնա՛ցեալ սուրբ
ե՛կեղեցի. պա՛յծառացո՛ զմանկո՛ւնըս
քո յօ՛րհնա՛բանութիւն. ծագողին ըզ
շո՛ղ լուսոյ 'ի քե՞զ մայր եկե՛ղեցի:

Քարոզ Խնդրեսցուք. Կեցո:

# ԿԱՐԳ

## ԱՌԱՒՕՏԵԱՆ

Օրհն․ « Ուրախ լեր սուրբ եկեղեցի » Տե․ յեշ 315 ։

Բարող « Վասն 'ի վերուստ » » » 52 ։

Ալէլուիա, ալէլուիա, ալէլուիա ։
Տէ՛ր ո՞վ կացցէ 'ի խորանի քում, կամ ո՞վ բնակեսցի 'ի լերառը՞ն սուրբ քո։ Որ գնա՛յ անբիծ, գործէ զարդարութիւն, խօսի զճշմարտութիւն 'ի սրտի՞ իւրո՛ւմ։
Ալէ''։ Մե՛ծ է Տէր և օրհնեալ է յոյժ, 'ի քաղաք Աստուծոյ մերոյ, 'ի լերառըն սո՞ւրբ նորա՞։ Հաստարմա՛տ ցնծութեամբ ընծացէ ամենայն երկիր․ լերինք Սիօնի, կողմանք հիւսիսոյ 'ի քաղաք Թագաւորի՞ն մեծի՛։
Փառք և եր։ Այժմ եւ։

Հարց․ Այսօր պայծառ, խոր տօրօն ։

Մեծ․ Անսկզբնական բանին հօր։ Տե․ յեշ 123 ։

### ԱՌԱՒՕՏՈՒ ԵՐԳ

Տան քում վայելէ սրբութիւն, Տէր ընդ երկայն աւուրս ։
Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ, զգեցաւ Տէր զօրութիւն ընդ մէջ իւր էած ։

*Սուրբ Ած. որ խաչեցար վասն մեր։*

*Շար. Դկ. է Թափօրէն*

Էջմիածինն 'ի հօրէ և լոյս փառաց ընդ նմա. ձայնք հնչեցին սանդարամետք անդնդոց։ Տեսեալ ընդոյս մեծ հայրապետին գրիգորի, պատմէր ցնծութեամբ հաւատացեալ արքային։ Եկայք շինեսցուք սուրբ ըզխորանըն լուսոյ, քանզի 'ի սմա ծագեաց մեզ լոյս 'ի հայաստան աշխարհի։

*Գիրք Ն. տող Սաղմոս։*

*Ալէ՛՛. ալէ՛՛։ Որպէս սիրելիք են յարկք քո Տէր զօրութեանց. ցանկայ և փափաքէ անձն իմ 'ի գաւիթս քո։*

*Աւետարան. Ն. տող Անդաստան։*

*Ցաւարտմանն՝ Շար. Հանգստեան*

Դկ. Թագաւոր փառաց քրիստոս անմահութեանց բաշխող, 'ի փառա-

ւորեալ գալստեանն քո արժանա-
ւորեա զննջեցեալսն մեր. դասակից
լինել սրբոց քոց. մարդասիրա-
պէս որ ես միշտ յաթոռ փառաց։
Զորս հաւասարեցեր ընդ սուրբս
քո, հաղորդիլ մարմնոյ և արեան
քոյ տէր, այսօր ընկալեալ հանգո
զհոգիս նոցա կենագործելով ՚ի
կեանսըդ յաւիտենից. մարդասէր։
Յորժամ առնես զհատուցումըն տէր
և սուրբըք քո պարծեսցին ՚ի քեզ,
յայնժամ խնայեա ՚ի դաւանողըս
քո, դասաւորելով յաջակողմեան դա-
սուն, մարդասիրապէս։

Աստուածածին սուրբ կոյս ան-
հարսնացեալ մարիամ, որ օրհնեալդ
ես ՚ի կանայս, զքեզ օրհնեմք միշտ
որ արժանիդ ես մեծացուցանեմք։
Անապական տաճար և առագաստ
լուսոյ, որ ՚ի քեզ փեսայացեալ բա-

նըն կենաց ընակեցաւ. զքեզ օրհ.
Հուրըն կենդանի որ ՚ի մորենին
վառեցաւ. զոր անմըխոս յարգանդի
քում կրեցեր և ծընար աստըւած և
մարդ. զքեզ օրհ:

Որ յանըսկիզբն էէն անյեղապէս
ծընեալ և սրովբէականըն ծածկէիր
թեւօք, այսօր ըզպարագրեալն մարմ-
նով ցուցեր զաստուածութեան քո
զփառս աշակերտաց քոց տէր, քո
ամենապայծառ ծագմամբ ողորմեա
մեզ աստըւած: Որ զըստուերական
օրէնս մովսիսական տառիցն. ՚ի
սինէականըն խօսէիր լերին, այսօր
ըզմովսէս և զհեղիաս ածեալ ՚ի մե-
ռելոց և կենդանեաց ՚ի տեսիլ փա-
ռաց քոց. քո ամե:

Փառք Հօր և:

Որ զօրինակ մեծի գալըստեան քո
տէր ՚ի թափօրականըն ծանուցեր լե-

րին. քա՜նզի տեսի՛ն դասք առաքե-
լո՜ցն ընդնախա՛հարսն եկեա՛լ փառօ՜ք
խօսէ՛ին զելս ցն յե՛րուսա՛ղեմ զխոր-
հուրդ. քո։

Այժմ եւ միշտ եւ.

Ո՞ր ըզդըժո՞խս աւերե՛ցեր և ըզգեր-
եա՛լսըն փրկեցեր եւ զարգելեա՛լսըն
վե՛րածեր 'ի յոյս կե՛նա՜ցըն յաւի-
տենից. ողորմե՛ա տէր հրաժարե-
լո՛յս զոր հրա՛ւիրեա՛լ առ քե՛զ կո՞չեցե՛ր։

Սաղմոս «Ի խորոց կարդացի.» Տե՛ս յէջ 33
Աւետարան. տե՛ս «Նորաստեղծեալ» » » 62

---

Մեղեդի է պատարագին

Ի յԵրուսաղէմ գնամք 'ի յայն աստուածաշէն
քաղաքն, 'ի յայն գեղեցկաշէն տաճարն, 'ի յայն
շուշանի սիրոյ։
Այսօր հարսն լուսոյ զգեցեալ ծիրանի՜ գեղեցիկ։

Խնդա յոյժ դո՛ւստր լուսոյ մայր
սո՛ւրբ կա՛թողի՛կէ մանկամբ քո սի-

օն. զարդարեալ պճնեա հա՛րսըն պան-
ծալի երկնանը՛մա՛ն լուսաձեմ խորան.
զի օծեալն ա՛ստուած է՛նն 'ի յէ՛ն
անծախա՛պէս. 'ի քե՛զ միշտ պատարա-
գի, հօր 'ի հաշտութիւն մեզ 'ի քա-
ւութի՛ւն բաշխէ զմա՛րմի՛ն և զարիւն
իւր սուրբ. վա՛սն ի՛ւր կատարմա՛ն
սուրբ տնօրէնութեան, շնորհէ զթո-
ղութիւն կա՛նգնողի տա՛ճարի՛ս։

Ժամամուտ

Զխաղաղութիւն շնորհեա եկեղեցւոյ քում
սրբոյ, զխաղաղութիւն եւ զանշարժութիւն 'ի
թշնամեաց պատերազմէ. և հաստատեա 'ի մի
հաւատ զկաթուղիկէ եկեղեցի, զքեզ խոստովա-
նիմք Տէր և Աստուած, կեցո զմեզ։

Ճաշու Շարական

Տէր թագաւորեաց զվայելչութիւն զգեցաւ։

Գյ. Այսօր ուրախա՛ցեալ ցնծա՛ն
ե՛րկնի՛՛ց բա՛զմո՛ւթիւնքն 'ի նաւա-

կատիս սուրբ եկեղեցւոյ, քանզի
շնորհեցաւ մեզ քահանայապետ յա֊
ւիտենից, ՚ի լուսաւորել զկաթուղի֊
կէ սուրբ զեկեղեցի, փառք գա֊
լստեան քո տէր։ Այսօր սիւն
լուսոյ հովանի եղեւ մեզ ՚ի բար֊
ձանց. քանզի թագաւորն երկնաւոր
եկաւորի ՚ի սուրբ եկեղեցի. եւ
զօրք հրեշտակաց ծաւալեալ տօ֊
նեն ընդ մարդկան. փառք գա։
Այսօր քահանայապետ ճշմարիտ աս֊
տուածային օրհնօքն պատուեալ.
կանգնէ զքառանկիւն սեղան խա֊
չին, արժանապէս պատարագեալ
բաշխէ զմարմին և զարիւնն տեա֊
ռըն, մաքրապէս մերձեցարուք փըր֊
կեալք նոր ժողովուրդք, և հայ֊
ցեցէք ՚ի քրիստոսէ, զի շնորհեսցէ
զսա մեզ ընդ երկայն աւուրս։

Սրբասացութիւն «Հրեշտակային» Տէ. յէՂ 182։

### ՏԱՂ

Եկեղեցի կանգնեալ խորան
Գմբէթըն բարձր երկնից նըման,
Խաչն 'ի վերայ տէրունական
Զորից ծագեան դատողական.
Անդ քաւութեան եդեալ սեղան
Մատչի խորհուրդ մարմնոյ 'ւ արեան.
Պահեա ըզսա Տէր անսասան
Այժըմ եւ միշտ և յաւիտեան։

---

## ԿԱՐԳ

### ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՑԻՑ ՍՈՎՈՐԱԿԱՆ ԱՒՈՒՐՑ

Խոնարհեցո։ Ապրեցո։ Լոյս զուարթ։

Մեսեդի. «Սիրեցի զի լուիցէ։» «Զի խոնարհեա։»

Քարոզ։ Ասասցուք։ Ս. Աստուած որ յարեար։

Հք. Այ. Սուրբ ես տէ՛ր զօրութեանց որ բնակեալդ ես 'ի յե՛րկինս և բա-րեբանի՛ս 'ի սրբո՛ց քո՛ց։ Երկնայի՛ն զօրութի՛նք, սե՛րովբէք եւ քերո՛վ-

բէք. ա՛նդադա՛ր օրհնե՛ն սուրբ զա՛-
նօ՛նըդ քո՛։ Քահանա՛յք ընդ նո՛սի՛ն
պաշտօնեայք և ժողո՛վուրդք. երկըր-
պագեսցո՛ւք տէրո՛ւթեա՛նըդ քո՛։
Լո՛յսդ որ յառաջ քա՛ն զյաւիտեա՛նս
՚ի հօրէ՛ առաքեցա՛ր, և լուսո՛վ խմա-
նալեա՛ւ լը՛ ցե՛ր զարարածս. օ՛րհնեա՛լ
ե՛ս թագաւոր յաւի՛տենի՛ց։ Որ ըզ
լո՛յսն ՚ի սկըզբանէ հաստա՛տեցե՛ր վե-
րըստի՛ն. և զխաւա՛րն անգիտութեա՛ն
յարութե՛ամբըդ քո՛վ հալածե՛ցեր.
օ՛րհնեա՛լ ես։ Ուստի և մե՛ք լուսա-
ւորեալքս ընդ լո՛ւսեղէ՛ն զըւարթ-
նո՛ցն. երգեսցո՛ւք ցնծութեամբ ՚ի
յա՛րութեան երեկո՛յիս, օ՛րհ։

Երկնաքաղա՛քացի՛ն յո՛վհա՛ննէ՛ս
մեծն ՚ի ծնո՛ւնդըս կանա՛նց, քա՛րո-
զէ՛ր յանա՛պատի ազդ արարո՛ղ թար-
թառո՛ւն ըզծագո՛ւմըն լուսոյ արեգա-
կանն ա՛րդա՛րութեա՛ն։ Ճշմարի՛տ

մարգարէ և ձեռնադրող որդւոյն աս-
տուծոյ, յառաջընթաց կարապետ և
պատմող աստուածային օրինացն,
հարթէր ճանապարհս թագաւորին
յաւիտենից: Յանօրէն գինարբուսն
մոլեգնեալ հերովդիադայ, 'ի պարգևս
մասին խնդրէր ըզգլուխ մարգարէին,
չիջուցանել զարուսեակն և զանա-
ղօտ լապտերն:

Փառք Հօր եւ.

Սրբուհւոյ աստուածածնին բարեխօ-
սութեամբ պարգևեա երկրպագ-
ուացս ամենասուրբ երրորդութեանդ
զյարութիւն յուսոյ կենացն յաւի-
տենից:

Այժմ եւ միշտ.

Զհաւատացեալ ժողովուրդս սուրբ
երրորդութեանդ, և զապաւին-
եալս 'ի խորան փառաց քոց. պահ-

եա անխըռով ՚ի խաղաղութեան ։

Կոմ. Որ ըղխորհուրդըս փըրկական սաստուածգիտութեան շնորհեցեր մեզ ՚ի ձեռըն քահանայապետին քո եւ վըկայի ։ Նորին աղաչանօք խընայեա ՚ի մեզ ։

Կցուրդ է ձոնի Առաքելոց

Ի քէն հայցեմըք բազումողորմ ՚ի ձեռըն սըրբոցքոց առաքելոցն. խընայեա տէր ՚ի յանձինըս մեր ։ Զորս ընտրեցեր յաստուածգիտութեամբ զարժանացելոցն անձինս. տըպաւորեալ ՚ի նոսա զհոգի շնորհաց քոց, որով վանեալ հերքեցին զապըստամբ զթըշնամին. բարեխօսութեամբ սոցա խընայեա ։ Որք ըղխաւարն անգիտութեան մերկացին յամենայն ազանց,

զգեստաւորեալ զհեթանոսս, ա-
ռաքելական կոչմամբ 'ի յոյս կենա-
ցըն յաւիտենից, բարեխօսութեամբ
սորա խընայեա։ Վասն որոյ և
մեք հաւատացեալքս կատարեսցուք
ըզ յիշատակ սըրբոց առաքելոցն.
աղաչեմք ըզքեզ որ միայն
գըթած ես. առատաձեռնեա 'ի
մեզ ըզմեծ քո ողորմութիւնդ.
տէր որ կեցուցանես զամենայն
արարածս։

« Երբեմն կցուրդէ եւ այս »։

Արդ աղաչեմ մայր աստուծոյ
ըզծնեալն 'ի քէն վասըն մեր, զի
ընդ նըմին պահելով սուրբ յա-
րութեամբ նորա նորոգեսցուք. առ
նա միշտ բարեխօսեա կեցուցա-
նել ըզմեզ։

Եւ համբարձեալ ըղձալինըն յու-
դա՛ յի խնդրելով 'ի տեառնէ ըզ-
տենչալին ամենեցուն սուրբ ըզ-
խաչն. և հաւատով գոչէր եկայք
երկրպագեսցուք աստուածային
ոտիցն նշանին. մեծացուցանելով
ըզծնեալն 'ի կուսէն։

## ԿԱՐԳ

## ՅԱՐՈՒԹԵԱՆ ԿԻՐԱԿԷԻՑ

### Ժամամուտ

Միածին որդի և բանդ Աստուած և անմահ էութիւն, որ յանձն առեր մարմնանալ 'ի սրբուհւոյ Աստուածածնէն և 'ի միշտ կուսէն, անփոփոխելիդ մարդ եղեալ խաչեցար Քրիստոս Աստուած մեր, մահուամբ զմահ կոխեցեր, միդ 'ի սրբոյ Երրորդութենէն, փառաւորակից ընդ Հօր և սըրբոյ Հոգւոյն, կեցո՛ զմեզ։

Ճաշու Շարական Յարութեան

Տէր թագաւորեաց զվայելչութիւն զգեցաւ.

Այ. Զթագաւորըն փառաց քրիս-տոս որ վասըն մեր մարմնացաւ 'ի սըրբոյ կուսէն և խաչի համբերելով, միաբանութեամբ երգով բարեբա-նեսցուք։ Որ ըզթաղումն երեքօրեայ յանձն էառ յարուցեալ 'ի մեռելոց իշխանութեամբ. միա։ Կարողապէս ըզդըրունըս դըժոխոց խորտակեաց. եկեղեցւոյ, իւրում զգեցոյց զմեծ վայելչութիւն. միաբանու։

Աէ. Թագաւորեաց աստուած 'ի վերայ հեթանոսաց, և լուսազարդ-եալ պայծառացոյց սուրբ զեկեղե-ցի. ժողովուրդք ըզքրիստոս բարե-բանեսցէք։ Զգեցաւ տէր զօրութիւն ընդ մէջ իւր անձաւ, քանզի չիջոց զխայթոց մահու խաչին իւրով

ժողո։ Յարեաւ աստուած եւ տիե-
զերք ամենայն նորափետուր զարդա-
րեցան. և մանկունքք հաղորդեցան
մարմնոյ և արեան կենարարին. ժո-
ղովուրդք ։

Բյ. Թագաւորին յաւիտենից մա-
տուցուք զօրհներգութիւն որ ՚ի կու-
սէն մարմնացաւ. հաստատեաց զաշ-
խարհս ՚ի հաւատս անսասանելի.
փառըք նըմա այժմ և յաւիտեան ։
Որ կամաւ համբեր մահու խաչի մա-
տըւած բանն. և եհեղ զարիւն իւր
սուրբ ՚ի փըրկութիւն տիեզերաց.
փառըք ։ Աստուածապէս յարուցեալ
՚ի նորափոր ՚ի վիմէն. լուսազարդեաց
զեկեղեցի իւր սուրբ, ՚ի փառս եւ
՚ի գովեստ անուան իւրոյ. փառ ։

Բկ. Օրհնութիւն ՚ի բարձունս տը-
նօրինեցելոյն ՚ի կուսէն Թագաւորին
մերոյ. ալէլուիա ալէլուիա։ Օրհ-

նութիւն ՚ի բարձունս անսասանելի և
հաստատուն յուսոյն մերոյ. ալէ:
Օրհնութիւն ՚ի բարձունս անբաժա-
նելի և միանձնական սուրբ երրորդու-
թեանն. ալէ:

Գյ. Զթագաւորըն քրիստոս օրհ-
նութեամբ երգով բարեբանեցէք ա-
մենայն երկիր: Արարողին երկնի եւ
երկրի մատուցէք երգով գոհաբա-
նութիւն ամենայն երկիր: Երրոր-
դութեանն և մի աստուածութեանն
մատուցէք պատիւ երկրպագու-
թիւն յաւիտեանս ամէն:

Գկ. Լուսով աստուածութեան քո
քրիստոս լուսաւորեցեր սուրբ զեկե-
ղեցի. պահեա ըզսա անշարժ յա-
ւիտեան: Տօնէ այսօր յերուսա-
ղէմ. հաւատացելոց բազմութեամբ
զնաւակատիս սուրբ եկեղեցւոյ.
պահ: Բացան դրունք հաւատոյ նոր

սիրովն ընդունել զանմահ փեսայդ յառագաստ. բաշխել զմարմին քո և զարիւն. պահ։

Դյ. Թագաւոր քրիստոս էակից հօր և հոգւոյն, որ վասն մեր մարմնացար ի սուրբ կուսէն. Թագաւոր փառաց քրիստոս քեզ փառք։ Որ կամաւոր մահուամբ ըզ մահ մեռուցեր, և անապական յարութեամբդ քո նորոգեցեր զաշխարհս. Թագաւ։ Որ կենդանարար արեամբըդ քո լուսաւորեցեր սուրբ զեկեղեցի, երգեմք քեզ ընդ հրեշտակս անելով. Թագաւ։

Դկ. Որ անքաւելի յաղթող զօրութեամբ թագաւոր ես երկնի և երկրի քրիստոս աստուած, օրհնաբանեմք ըզքեզ։ Որ փառակցութեամբ ընդ հօր վերօրհնիս յանմահից. եւ խոնարհեալ մարմին ըզգեցար փա֊

ռաց թագաւոր․ օրհ։ Որ կարողա-
պէս ըզմահ կոխեցեր․ և յարուցեալ
լուսաւորեցեր սուրբ զեկեղեցի
անմահ էութիւն․ օրհ։

Ալէլուիայ ճաշու ցորեկեան

Ա՛յ։ Դու յարուցեալ գթասցիս 'ի վերայ Սի-
օնի, ժամանակ գթալոյ նորա հասեալ է ժամ։
Ա՛կ․ Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն 'ի նոր, օրհ-
նութիւն նմա յեկեղեցիս սրբոց։
Բ՛յ․ Ծափս հարէք ամենայն հեթանոսք․ ա-
ղաղակեցէք առ Աստուած ի ձայն ցնծութեան։
Բ՛կ․ Արի Տէր Աստուած իմ 'ի հրամանս քո
զոր պատուիրեցեր, եւ ժողովք ժողովրդոց
շուրջ եղիցեն զքեւ։
Գ՛յ․ Ուրախ եղեւ Իսրայէլ յարարիչ իւր․ որ-
դիք Սիօնի ցնծասցեն 'ի թագաւորն իւրեանց։
Գ՛կ․ Եկայք և տեսէք զգործս Աստուծոյ, որ-
պէս զի ահեղ են խորհրդով քան զամենայն որ-
դիս մարդկան։
Դ՛յ․ Հաճեցար Տէր ընդ երկիր քո, և դար-
ձուցեր զգերութիւն Յակոբայ։
Դ՛կ․ Յարեաւ Աստուած և ցրուեցան ամե-
նայն թշնամիք նորա․ փախեան ատելիք նորա
յերեսաց նորա։

# ԿԱՆՈՆ

## ԳԻՒՏԻ ՆՇԽԱՐԱՑ Ս. ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ ՄԵՐՈՅ

*Տէր զի բազում է-ր ուրօքն.* Տե՛ս յէջ 1—10

*Աշխարհ ամենայն.* Տե՛ս յէջ 13։

*Կանոնագլուխ ըստ ձայնի.* Տե՛ս յէջ 16-25։

Օրհ. Գկ. Լերինք ամենայն այսօր ցընծացէք ընդ մեծապայծառ փառսըն սեպուհոյ գերամզանց լերինն. քանզի 'ի նմա բնակեցաւ սուրբըն գրիգորիոս սիւն լուսոյ հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ. որով ցնծամ, 'ի փառս վերնոյն սիոնի։ Որ առաւել խորին խորհրդով խնդայ քան զարարատեանըն բարձր մասիս. քանզի 'ի նմա հանգեաւ սուրբըն գրիգորիոս տապանն ապրեցուցիչ 'ի հոսանաց մեղաց հայաստան[illegible]ազանց. որով փըր-

կեմըք մինչ ՚ի ջուրց հոսանաց։ Գե-
ղապանծ լուսով բերկրեալ զուարճա-
նայ լեառըն սեպուհոյ հանգոյն սի-
նայի. յորում եկաց կամարն ամպե-
ղէն սուրբըն գրիգորիոս գերահրաշ
լուսով զարդարեալ նըման մովսի-
սի. որով փայլին երեսք շնորհօք
սուրբ հոգւոյն։ Զօրօք հրեղինաց
պարփակեալ պահի լեառըն հանգըս-
տեան սրբոյն գրիգորի տեսլեամբ
կարմեղայ. զորըս պարապեն կառքըն
կենդանի մաքրափայլ աղօթք սուրբ
լուսաւորչին հօրըն հոգեւոր, զոր
առ տէր ունիմըք մինչ բարեխօս։
Համանմանեալ ամովսածնին եսայեայ
կոյծակնամաքուր սուրբ մարգարէին
տէր գրիգորիոս, վեցթեւեան սրով-
բէից կիզիչ կենդանեաց եղեւ տե-
սանող հոգւով կենդանին. զան-
դընդախոր ըզձորն երկնից կամար

յօրինեա՛լ։ Շնորհաբաշխն աջո՛վն յի-
սուսի պատուեցաւ լեառըն սեպուհոյ
'ի տիպ սանիրա՛յ, և ա՛հերմոնի. յորմէ
բղխեաց աղբիւրըն լուսոյ ջուրըս բա-
րեհամս և վը՛տակս յո՛րդախա՛ղա՛ց հո-
սանօք. ո՛րով ցնծայ երկի՛րս 'ի բե՛րս
արմըտեա՛ց։ Ծնը՛նդեալք սուրբ կու-
սին յայրըն բե՛թղեհէմ յորդորեցան
դստերքն ե՛ւայի յի՛նի՛լ կուսու՛թեա՛մբ
'ի մա՛յր քրիստոսի. յորում ծագեցաւ
խորհուրդը՛ն պայծառ յերկնաւորմա՛ն
լերինն 'ի յա՛յրին մա՛նեա՛յ մաքրա՛կան
վարուք. ո՛րով սըրբիմըք մի՛շտ 'ի յաղ-
տոյ մեղա՛ց։ Խո՛րհուրդ խա՛չելոյն գե-
րահրաշ տեղւոյն գողգոթայ ծածկա-
պէս 'ի՛ սմի՛ն լերի՛ն տեսանի, զէնն ար-
քա՛յական սպանմանը՛ն գործի՛ կենաց
արքայի՛ն 'ի կե՛նա՛ց գործի՛ նուիրեալ.
ո՛րով փրկե՛ցէ ըզմե՛զ յաւիտենի՛ց
մահուանէ՛։ Զխո՛րհուրդ սե՛պուհոյ

սեպհական փառաց հոգւոյն սուրբով
մարգարէին ծանուցեալ. զոր և հար-
ցանէր զխորանն աստուծոյ եւ ըզ-
լեառն տեառն թէ ով բնակիցէ.
զոր և տեսաք առ սուրբքն գրիգոր
կատարեալ: Անբիծըն վարուք ար-
դարըն հոգւով բանիւ ճըշմարիտ եւ
սուրբըն սըրտիւ տէր գրիգորիոս.
որում ցանկացան զօրքըն սրովբէից
բերանք հրեղէնք յերկնից յերկիր խո-
նարհեալ 'ի տես մարմնով ճգնողին.
որ եւ պատիւ տեղւոյն անուամբըն
կոչի: Հովուին հըսկողի ճշմարիտ եւ
քաջ հովուին պատկերի հովիւքն ե-
ղեն հետեւողք. զոր ամփոփեցին
զմարմինըն մաքուր մերձ 'ի յայրըն
մանեայ մեզ դեղ ախտից մաքրու-
թեան. որով սրբիմք հոգւով 'ի թու-
նից վիշապին:

Քարոզ գ՟. « Վասն 'ի գիշերի »: Տեռ. յէլ 53:

### ԹԱԳԱՒՈՐ ՅԱՒԻՏԵԱՆ

Այսօր դասք հրեշտակաց ու-
րախանան ընդ ճգնու-
թիւն սրբոյն գրիգորի
լուսաւորչին մերոյ բազմաչարչար նա-
հատակին, որոյ այսօր գիւտի պատ-
ուական նշխարացն է յիշա-
տակ:

Քանզի գոչէ եկեղեցի
քո քրիստոս ընդ յաղթանակ
մարտ հեղման արեան սորա
՚ի վերայ մեծի անուան
քո տէր:

Բազում համարձակութիւն է սորա
առաջի աստուծոյ ՚ի ձեռըն հեղման
սուրբ արեան իւրոյ:

Քանզի յօժարութեամբ մատնեաց
զանձն իւր չարաչար եւ դառըն տան-

Ջանաց վարըն մեծի անըւանըն
տեառն։

Քանզի արհամարհեցեր ըզ սնարգ-
եաց զոնցաւոր ըղկեանս աշխար-
հի և փափաքեցար յաւիտենա-
կան կենացն, և միշտ և համապազ
ուրախանայ ընդ տեառն իւրոյ
յանըսպաձու յուրախութիւնն։
Փառօք ըք հօրն էակցին որդւոյն մի-
ածնի և ազատիչ սուրբ հոգւոյն
վայելէ։

Փառօք պատիւ եւ իշխանութիւն
այժմ և միշտ և յաւիտեանս յաւի-
տենից ամէն։

Եւ յորժամ շարժին երկինք եւ
երկիր ի յահէ փառաց բանին
տեառն աստուծոյ։

Ցայնժամ նըստու ցանէ ընդ
աջմէ իւրմէ ըզխրթելիս անուան իւ-

րոյ 'ի լուսեղէն խորանսն զուգաւո[illegible]րե[illegible]լով ։

Հրց. Բյ. Որ առաքեցեր ըզսիրելի և զհաւատարիմ քո պաշտօնեայն ըզսուրբ Գրիգոր · և 'ի ձեռն նորա լուսաւորեցեր ըզհայաստան աշխարհըս · ըզքեզ միշտ օրհնեմք աստըւած հարցըն մերոց ։ Որ ետուր համբերութիւն անտանելի չարչարանաց սրբոյն գրիգորի · և նորին ժուժկալութեամբըն լուսաւորեցեր ըզհայաստան աշխարհս, ըզքեզ միշտ օրհնեմք ։ Որ նորին սուրբ աղօթիւք բարձեր զխաւար [կռապաշտութեան 'ի հայաստան աշխարհէ · և արարեր երկրպագուս ամենասուրբ Երրորդութեանդ, ըզքեզ միշտ ։

Է · Օրհնեցէ՛ք ամենայն գործք տեառն ըզտէր օրհնեցէ՛ք և բարձր արարէ՛ք ըզնա յաւիտեան ։

Արդ եկայք հաւատացեալք եւ կո-
չեցեալք յորդեգրութիւն սրբոյն
գրիգորի, օրհնեցէք եւ բարձր ա-
րարէք զաստուածն ամենեցուն։
Ցնծութեամբ տօնեսցուք ըզյիշա-
տակ հայրապետին մերոյ. եւ ընդ նը-
մին գովեցէք եւ բարձր արարէք
զթագաւորըն մեր քրիստոս։ Քա-
հանայք եւ պաշտօնեայք հոգեւորա-
կան հրնչմամբ գովեցէք ընդ սրբոյ
հայրապետին, եւ բարձր արարէք
սուրբ զհոգին ճըշմարտութեան։

Ը. Ըզկուսութիւնըդ քո աստուա-
ծածին անարատ. զոր ոչ բացա-
կիզեաց հուր աստուածութեանըն
մեծացուցանեմք։ Որ յարգանդի
քում անապականաբար բնակեցաւ
քրիստոս աստուած, եւ փրկիչ ան-
ձանց մերոց, մեծաւ։ Անհասանելի
տերունական յայտնութիւն աշխար-

հի՛ ծագեցա՛ւ անմատո՛յց լո՛ւսոյն
երկը՛րպագեսցո՛ւք ։

·· Բարեխօսութեա՛մբ քահա՛նա-
յապետին քո և վը՛կայի՛ն, կեցո
զմե՛զ բա՛զո՛ւմողո՛րմ ։ Աղաչա՛նօք
սրբոյն գրի՛գորի լո՛ւր մե՛զ · որ մի-
ա՛յնդ ե՛ս բա՛զո՛ւմողո՛րմ ։ Նորին ա-
ղօթի՛ւք որով ուսաք ճա՛նապարհ
կե՛նա՛ց, քաւեա ՚տէ՛ր ըզյանցա՛նըս
մե՛ր ։

·· Ա՛ռաջնո՛րդ հաւա՛տո՛յ և լու-
սաւորի՛չ անձա՛նց մերոց տէ՛ր սո՛ւրբ
գրի՛գոր · եկա՛յք հաւատա՛ցեալք ՚ի
ձե՛ռըն նորա հա՛նցո՛ւք աստուծո՛յ գո-
հութի՛ւն ։ Մեծ խոստո՛վանողըն քը-
րի՛ստոսի՛ և ըզչարչարա՛նըս յանձն
ա՛ռո՛ւ վասըն մեր տէ՛ր սո՛ւրբ գրի՛-
գոր · եկա՛յք լուսա՛ւորեալք ՚ի ձե՛ռըն
նորա հան ։ Քահանա՛յապե՛տ աստու-
ծո՛յ, ե՛ւ պա՛տմող աստուա՛ծայի՛ն օ-

ըինաց տէր սուրբ գրիգոր, եկայք աշակերտեալք ընդ նմա երգեսցուք փառք 'ի բարձունս աստուծոյ ։

Փառք 'ի բարձունս. Տե՛ս յէջ 58.

ԱՌԱԻՕՏՈՒ ԵՐԳ

Քահանայք քո զգեցցին զարդարութիւն, և սուրբք քո ցնծալով ցնծասցեն։
Յիշեա Տէր զԴաւիթ, և զամենայն հեզութիւն նորա։

ՔԱՐՈԶ

Առաջնորդք եղեն մեզ ուղիղ գնացիւք 'ի չաւիղըս արքայութեան երկնից մեծապայծառ ջահիւ հաւատով և սիրով իւրեանց, ծագեցին ըզլոյս աստուածգիտութեան 'ի սիրտս մեր, աղաչեմք։
Լուր Տէր և ողորմեա։
Պահպանութեամբ խորհրդոց, բանից և գործոց մերոց, սրբութեամբ փառաւորել զամենասուրբ զԵրրորդութիւնն, զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին յաւիտեանս ամէն. աղա։
Աղաչանօք սրբոց արեամբ նահատակեալ վկայիցն Տէր, որք զանձինս իւրեանց տաճար մաքրեցին հոգւոյդ քում սրբոյ, պարգևեա յերկրի մերում զքաղցրախառն օդ և զզուարճալի զբոյս,

առ 'ի լցումն լինիլ ամենայն հարկաւոր պիտոյից
մերոց. աղաչեմք։

Բարեխօսութեամբ սրբուհւոյ Աստուածածնին և Յովհաննու կարապետին, սրբոյն Ստեփաննոսի նախավկային, և սրբոց Առաքելոց, Մարգարէից և Մարտիրոսաց և սրբոյն Գրիգորի մերոյ Լուսաւորչին։ Բարեխօսութեամբ և աղօթիւք (այսօրուան անուն) որոյ այսօր է յիշատակ, և ամենայն սրբոց քոց Տէր, որք միացան 'ի սէր աստուածութեանդ քոյ, յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց։ և այց արա 'ի քում գալստեանդ, աղաչեմք։

Յիշեա Տէր և ողորմեա։

Նշելու առաւել զյորդորումն սիրոյ և զգործս
բարեաց պարգևել մեզ խնդրեմք։

Տուր մեզ Տէր Աստուած։

Զանձինս. Ողորմեաց մեզ։

Սուրբ Աստուած, որ խաչեցար։

Մկ. Դյ. Հրաշափառ մատըւոծ և միշտ բարեխնամող, որ յուում չգի-տութեամբ ըզփըրկութիւն հայաս-տանեայց ըսկըզբնաւորեալ 'ի պար-թեւական մեղապարտ ազգէն լուսա-ւորիչ մեզ շնորհեցեր. վասն որոյ բա-րեխօսութեամբ սորա փրկիչ կեցո

զմեզ այժմ և ՚ի քո յանհաւոր գա-լստեանն : Հրաշալի զարմացմամբ երանելին սուրբ գրիգոր․ զանտանե-լի ըզչարչարանս ի յանձն էառ, եւ երիւք հնգօք ամօք ՚ի մէջ թու-նաւորացըն բնակէր անդնդային տանջանօքն ՚ի վիրապին․ վասն որոյ բարե : Հրաշագործ քո բանիւդ եւ մեծ զօրութեամբդ․ եւ ելեալ բժըշ-կէր ըզհարուածեալն ՚ի դիւաբաղխ սատանին, երկրպագուս առնելով զա-մենեսեան սուրբ երրորդութեանդ․

վասն որ :

Որ կոչեցար յորդեգրութիւն հօրն երկնաւորի․ ով երանելի տէր սուրբ գրիգոր․ եւ եղեր վը-կայ, ճըշմարիտ քրիստոսի աստու-ծոյ մերոյ․ վասըն ժողովըրդեան քո հայցեա ՚ի տեառնէ ըզքաւ-ութիւն : Որ համբերութեամբդ

քով ստացար քեզ ժողովուրդս
սեպհականս եւ ընտրեալս. եւ
նորափետուր զարդարեցեր ծնըն-
դեամբ սուրբ աւազանին. վասըն։
Որ մոլորելոցս 'ի խաւարի բացեր
զդուռըն լուսոյ, ճշմարիտ աստ-
ուածգիտութեան. և արժանաւորս
արարեր ըզմեզ ժառանգորդ լինել
կենացըն յաւիտենից. վասն ժո։

«Երգ. Տէրն յետ ստեղծման»։ Տե. ջէջ 69։

---

'ի Պատարագին Լեղեդէ

Ի հանդէս տօնի քո ցնծամք հայր և վարդապետ
սուրբ հայրապետդ Գրիգոր։

Ցայս յարկ նուիրանաց։ Տե. ջէջ 90։

ԺԱՄԱՄՈՒՏ

Ցնծայ այսօր ցնծայ և զուարճանայ եկեղեցի
սուրբ, տօնելով մեծաւ հանդիսիւ զհանրատենչ
յիշատակս քո՝ ո՛վ գերազանցեալդ 'ի հարս

*սուրբ հայրապետ և լուսաւորիչ տանս Թորգո-*
*մայ սուրբդ Գրիգորիոս։*
*Որ քոյով անտանելի չարչարանօքդ զաշխարհս*
*ամենայն հիացուցեր, անօրինակ ճգնութեամբդ*
*զհրեղէնսն զարմացուցեր, որք և դունդ դունդ*
*յերկնից 'ի յերկիր խոնարհեալ՝ 'ի տես հանդիսի*
*նահատակութեանդ փութային։*
*Եւ անհամեմատ համբերութեամբդ զգոռոզա-*
*ցեալ արքայն իւրական զօրօքն ընդ ոտիւքդ նը-*
*ւաճեցեր, և աստուածահաճոյ աղօթիւքդ զկու-*
*րացեալ միտս նոցին լուսաւորեցեր, և աւետա-*
*րանին Քրիստոսի պաշտօնեայս արարեր։*
*Ընդ նմին և զազգս Հայոց նորոգ հոգեւոր ծնըն-*
*դեամբ 'ի լոյս աստուածգիտութեան ածեր.*
*վասն որոյ և յատկապէս լուսափայլեցար 'ի մէջ*
*ամենայն սրբոց, և զառաքելականն ընկալար*
*զաթոռ և զպատիւ, և ընդ նոսին պսակեցար*
*'ի Քրիստոսէ Աստուծոյ։*
*Արդ՝ ո՜վ հայր մեր և լուսաւորիչ հոգւոց մերոց,*
*աղաչեմք զքեզ միաբան ուխտիւք եկեղեցւոյ քոյ,*
*զի յաւուրս հրաշալւոյ տօնի քոյ, յատկապէս*
*բարեխօսեսցես առ Քրիստոս Աստուածն մեր, զի*
*զեկեղեցիս և զմնացորդս ժողովրդեան քոյ պա-*
*հեսցէ 'ի խաղաղութեան, փրկելով 'ի հոգեւոր*
*և մարմնաւոր թշնամեաց։ Զի և մեք միշտ ըզ*
*յիշատակս քո կատարելով փառաւորեսցուք զՀայր*
*և զՈրդի և զՍուրբ Հոգին յաւիտեանս ամէն։*
*Գրիգոր սուրբ քահանայապետ՝ որ զհաւատս ու-*

սուցեր և զբանակս դիւացն հալածեցեր, մարդ-
կան ուսուցեր քարոզել զերրորդութիւնն, պսա-
կեցար յարքայութեանն, արդ բարեխօս լեր առ
Տէր վասն մեր։

ՃԱՇՈՒ

Մէք. Գկ. Հովիւ քաջ բանաւոր հօտի անր սուրբ գրիգոր, հաստատեցեր զհիմունս եկեղեցւոյ ՚ի հայաստան երկրի, ՚ի վերայ հիման սուրբ առաքելոցն։ Հովիւ բարի և առաջնորդ կենացն յաւիտենից անր սուրբ գրիգոր. հաստատեա զանձինըս մեր հաւատով ճշմարտութեան ՚ի վերայ հիման սուրբ եկեղեցւոյ։ Արդ աղաչեմք ըզքեզ հայր վարդապետ և տէր, բարեխօսեա քրիստոսի աստուծոյ մերոյ կեցուցանել զանձինս մեր։

Գիրք Ե— ող— Սաղմոս։

Դու ես քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի և Տէր ընդ աջմէ քումմէ։

«ՍՐԲԱՍԱՑՈՒԹԻՒՆ»

Ամենակալ ես Տէր զօրութեանց, որ թագաւորդ ես յաւիտենից։
Որ նստիս յերկնից 'ի յերկինս, և լոյս ծագես յարարածս քո։
Որ խոնարհութեամբ իջեր 'ի յերկիր, քեզ պատարագս մատուցանեմք։
Եւ սուրբ զանունդ քո փառաւորեմք, Տէր, որ պսակիչդ ես քոյ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, վասն զի սա է մեզ բարեխօս. Տէր ամենակալ 'ի քում յարքայութեանդ։

ՏԱՂ

'Ի յելս արեւու արեւ. (կրկնէ) ծագեցաւ մեզ յարեւմտից. զամայն արեգական ծածկոյթ, (կրկնէ) Պետրոսեան հօտէն հալածեաց։
Ձայն բարձեալ յերկինս առ քեզ. այսօր մեք յերկրէ գոչեմք, սուրբ հայրդ Գրիգորիոս, մեղօք տառապեալ որդիքս։

# ԿԱՆՈՆ

## ՆԱԽՈՐԴ ԵՐԵԿՈՑԻ ՎԱՐԴԱՎԱՌԻ

*Խոնարհեցո ։ Ապրեցո ։ Լոյս զուարթ ։*

*Մեսեդի « Աստ օրհնեցէք ։ Ո՛ կայք ։*

*Սուրբ Աստուած, որ խաչեցար ։*

Հոք . Այ. Որ ՚ի լերին այլակերպեալ ցուցեր զաստուածային քո զօրութիւնդ . զքեզ փառաւորեմք իմանալի լոյս ։ Որ ըղձառագայթ փառաց քոց ցուցեր արեգակնակերպ փայլմամբ զարարածըս լուսաւորեցեր . զքեզ փառա ։ Որ ահագին տեսլեամբ զարհուրեցուցեր զքո զաշակերտսն ՚ի թմրութիւն հրաշիցն ՚ի սէր աստուածային փառացդ քոց . զքեզ ։

Երեւի երբեմն աշակերտացըն հրաշալի տեսլեամբ . պայծառացեալ ՚ի

Թաբօր լերինն։ Եւ զերրեակ մի-
ութեան զանտանելի ըզլոյսն. տե-
սանելով կենդանւոյն մահացուն։
Հանդիպեալ նախահարցըն տեսու-
թեամբ հայցէին ՚ի տեսանէ, ասեն
բարւոք է մեզ աստ լինել։ Արաս-
ցուք երիս տաղաւարըս տեառն եւ
Մովսիսի եւ Եղիայի. և փառաւորես-
ցուք հանապազ զերրեակ միութիւնն։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։

# ԿԱՐԳ

## ՎԱՐԴԱՎԱՌԻ ԱՌԱՒՕՏԵԱՆ

Տէր զի բազում էր ողորմ. Տե. յէջ 1-50:

Հետեւակ Շար. « Ցնծայ այսօր փառօք » ։

Օրհնութիւն. Որ ՚ի լերինն. Տե. յէջ 351։

Քարոզ ըստ ձայնի աւուրն. Տե. յէջ 52։

Ալէլուիա, ալէլուիա, ալէլուիա։
Քո՛ են երկինք և քո է երկիր, զաշխարհ լրիւ
իւրով դու հաստա՞տեցե՛ր։ Զհիւսի՛ս և զհարաւ
դու արարեր, Թափոր և Հերմոն յանուն քո
ցը՞նծասցե՛ն։
Ալէ՛՛։ Բարձրութիւ՛նք լերանց նորա են. նորա
է ծով և նա արար զնա, և զցամաք ձեռք նորա
ըս՞տեղծի՛ն։ Եկա՛յք երկիրպագցուք նմա, անկ-
ցուք և լացցուք առաջի Տեառն արարչի՞ն մերո՛յ։
Փառք և երկր՛՛։ Այժմ և միշտ՛՛։

Հարց ակ. «Զանճառելի» ի—ր [illegible].

Երգ զկնի Իւղաբերից Աւետարանի։

Ցնծայ Թափոր Հերմոնիւ. և առաքեալքն 'ի հայ-
րական ձայնէն Թմրեալք. և կենդանեաց և մե-
ռելոց Տէր ծանուցին զքեզ Մովսէս և Հեղիաս։

ԱՌԱՒՕՏՈՒ ԵՐԳ

Քո են երկինք և քո է երկիր, զաշխարհ լրիւ
իւրով դու հաստատեցեր։
Զհիւսիս և զհարաւ դու արարեր, Թափոր եւ
Հերմոն յանուն քո ցնծասցեն։

Սբ. Ած։ որ յայտնեցար 'ի Թափոր լերին։

Շար. աձ. «Որ 'ի լերինն». Տե՛ս յէջ 351։

Գիրք և այլ Սաղմոս.

Ալէ. ալէ. Բարձրութիւնք լերանց նորա են նորա է ծով եւ նա արար զնա, և ցցամաք ձեռք նորա ստեղծին.

Աւետարան. Անդաստան. և այլ Շարական.

Ստեղ. Դկ. Լերինքն ցնծացեն ա-
ռաջի քո տէր. որ երեւեցար 'ի
փառս աստուածութեան հօր. միւսանգամ
գուշակելով զգալուստդ. վասն ո-
րոյ աստուածային լուսով զար-
դարեալ ըզքեզ, հրաշալի ձայնիւ
ընդ երկնայինսըն երկրածինքս
ըզքեզ բարեբանեմք ըզլթափօր լե-
րինն: Ջոր տեսեալ սոսկալի զանա-
պական լուսոյն ծնաւլունն. յայ-
լակերպիլըն քո քրիստոս որդի աս-
տուծոյ առաքելոց և մարգարէիցըն
պակուցեալ զարհուրեցան. վասն ո-
րոյ: Որ զանձառելի խորհուրդ սուրբ
երրորդութեանդ՝ սիմոնի միմի ծա-
նուցեր երրակի տաղաւարացըն յօ-

ընմամբ. և սիրելի 'ի հօրէ վկայ-եալ ճշմարիտ միածին որդի ն. վա-սըն որոյ աստուա։

Այլ «Նորատեղծեալ» Տե. յէջ 62։

Ի ձայն Ա. Պատարագին.

Մեղեդի։

Գոհար վարդըն վառ առեալ (կրկ.)
'Ի վեհից վարսից արփենից, (կրկ.)
'Ի վեր 'ի վերայ վարսիցն, պղպջեր ծաղիկ ծո-
վային, պըղ"։

ԺԱՄԱՄՈՒՏ

Երեւի Տէրդ այսօր աշակերտացն 'ի Թափորա-կան լերինն, և աշակերտացդ զարհուրեալ ա-ղաղակէին սաելով, արասցուք երիս տաղաւա-րըս, մի՝ Տեառնդ, և մի՝ Մովսիսի, եւ մի՝ Ե-ղիայի։ Արդ՝ եւ մեք բանաւոր հօտքս երգեմք ընդ քո ճշմարիտ վկայիցդ, առաքեա 'ի մեզ ըղ-լոյս քո շնորհացդ 'ի քո 'ի միւսանգամ գալըս-տեանդ եւ կեցո։

Ճաշու Շարական

Մեծացուցէ անձն իմ զՏէր եւ ցնծացէ հոգի.

Սեղ. Դկ. Ո՜ւրախացիր պըսակ

*Այլ. այլ. Բարձրութիւնք լերանց նորա են նորա է ծով եւ նա արար զնա, և զցամաք ձեռք նորա ստեղծին.*

*Աւետարան. Անդաստան. և այլ Շարական.*

*Սուրբ. Դկ.* Լերինքն ցնծացեն առաջի քո տէր. որ երեւեցար 'ի փառս աստուծոյ հօր. միւսանգամ գուշակելով զպայլուստ. վասն որոյ աստուածային լուսովն զարդարեալ ընդ քեզ, հրաշալի ձայնիւ ընդ երկնայինսն երկրածինքս ընդ քեզ բարեբանեմք ըզթափօր լերինն: Զոր տեսեալ սոսկալի զանապական լուսոյն ծագումն. յայլակերպիլն քո քրիստոս որդի աստուծոյ առաքելոց և մարգարէիցն պակուցեալ զարհուրեցան. վասն որոյ: Որ զանճառելի խորհուրդ սուրբ երրորդութեանդ՝ սիմօնի միմի ծանուցեր երրակի տաղաւարացն յօ-

րինմամբ. և սիրելի 'ի հօրէ վկայ-
եալ ճշմարիտ միածին որդին. փա-
ռըն որոյ աստուա:

Աղօ. «Նորաստեղծեալ» Տէ. յէջ 62:

Ի ձայն Ա. Պատարագէն.

Մեղեդի:

Գոհար վարդըն վառ առեալ (կրկ.)
'Ի վեհից վարսիցն արփենից, (կրկ.)
'Ի վեր 'ի վերայ վարսիցն, պղպջէր ծաղիկ ծո-
վային, պըղ":

ԺԱՄԱՄՈՒՏ

Երեւի Տէրդ այսօր աշակերտացն 'ի Թաբօրական լերինն, և աշակերտացդ զարհուրեալ աղաղակէին ասելով, արասցուք երիս տաղաւարըս, մի՝ Տեառնդ, և մի՝ Մովսիսի, եւ մի՝ Եղիայի: Արդ՝ եւ մեք բանաւոր հօտքս երգեմք ընդ քո ճշմարիտ վկայիցդ, առաքեա 'ի մեզ ըզլոյս քո շնորհացդ 'ի քո 'ի միւսանգամ գալըստեանդ եւ կեցո:

Ճաշու Շարական

Մեծացուսցէ անձն իմ զՏէր եւ ցնծասցէ հոգի.

Սունղ. Դկ. Ո՜ւրախացի՛ր պը՜սա՛կ

*կուսիձց տիրամայր. այսօր որդին քո գհայրենին փայլեաց ըզ փառս. Նըման յաւէժ յանձըն ա-րամ զանձինըս մեր: Նըման մով-սէս եւ հեղինաս սպասեն յանուն նորա, ցընծան թափօր և հեր-մոն. Նըման յա: Եսայիաս ըզքեզ լժելթեւ ամպ ետես, եւ հայր յամպոյն զքո զորդին իջուր դա-ւանեալ. Նըմա:*

Գիրք Ե. ող. Սաղմոս:

*Ամպ լուսաւոր հովանի լինէր նոցա, ձայն եղեւ յամպոյն որ ասէ. դա է որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ:*

Սրբասացութիւն «Բազմութիւնք» Տես յէջ 78

### ՏԱՂ

*Այսօր ցնծայ լեառն Թափօր եւ զուարճանայ մեծըն Հերմոն, քանզի լոյսն Աստուածային այ-սօր ծագեաց յայն սուրբ լերին, այ ցնծայ այ ցնծայ, ցնծայ լեառն Թափօր եւ զուարճանայ:*

# ԿԱՐԳ

## Բ. ԱԻՈԻՐ ՎԱՐԴԱՎԱՌԻ

Օրհնութիւն Բկ. « Ճառագայթ փառաց». Խոր սուրբն ։

Քարոզ ըստ ձայնի աւուրն. Տես յէջ 52 ։

Ալէլուիա, Ալէլուիա, Ալէլուիա.
Բարձրութի՛ւնք լերանց նորա են, նորա է ծով, եւ նա արար զնա, եւ զցամաք ձեռք նորա ըստեղծի՛ն ։ Մովսէ՛ս եւ Ահարոն երիցունք նորա, Սամուէլ ընդ այնոսիկ որք կարդան զանո՞ւն նորա՜ ։
Ալէ. Լերի՛նք ցնծասցեն առաջի Տեառն, զի գայ, եւ հասեալ է Տէր 'ի դատե՞լ զերկի՛ր. Դատէ զաշխարհս արդարութեամբ. եւ զժողովուրդս իւր ո՞ւղղութեա՛մբ ։
Փառք եւ երկրպա։ Այժմ եւ միշտ ։

Մնկ. Բկ. Օ՞րհնեցէ՜ք մա՛նկունք ընդ ե՛րկնայնո՛ցն ը՞ զհա՛յրն երկնաւոր, ո՛ր մա՞րմնա՛ցեալ բանին վըկայեա՛ց յերկ-նի՛ց այսօ՞ր 'ի՞ Թա՛փօր լերի՛նն ։ Գո՞-

վեցէք ընդ սերովբէսն զորդին մի-
ածին, որ փայլեաց մարմնով զլոյս
աստուածութեանն այսօր։ Բարե-
բանեցէք ընդ քերովբէսն զհոգին
ճշմարիտ. որ լուսափայլ ամպով է-
ակցին հովանացեալ այսօր։ .

Քարոզ։ «Վասն խաղ.» Աղօթք «Սուրբ ես Տէր։

Գիրք Ն. ող. Սաղմոս. «Բարձրութիւնք». Տե. յէջ 354։

Աւետարան. ող. Երգ «Արարչական». Տե. յէջ 63։

Ճաշու Շարական

Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ։

Բկ. Ճառագայթ փառաց հօր որ-
դիդ միածին. որ ըզլոյսդ անվայրա-
'փակ մարմնով պարագրեալ. այսօր
ի Թափօր փառօք փայլեցեր։ Որ ան-
տես սրովբէից անհաս 'ի վեր քան
ըզբան, ծառայի կերպիւ պարածած-
կեալ ըզլոյսդ աներստուեր. այսօր 'ի։

*Որ հրեղինա՛ցն անմերձենալի՛ հո՛ւր աստուածութեանդ, 'ի հողե՛ղէնս խո-նարհեցա՛ւ լոյսդ արփիական. ա՛յսօր է։*

*Ճաշու Սաղմ. « Բարձրութիւնք. » Տե՛ս յէջ 354.*

*Սրբասացութիւն. « Հրեշտակային », Տե՛ս յէջ 182.*

## ՏՕՆ ՇՈՂԱԿԱԹԻ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ

*Ժամամուտ*

*Տէր մեր եւ փրկիչ Յիսուս Քրիստոս, որ ա-ղօթիւք եւ միջնորդութեամբ բազմաչարչար վը-կային քո եւ հօրն մերոյ Սրբոյն Գրիգորի Լու-սաւորչին, մեծաւ փառօք եւ բազմութեամբ զօ-րացդ լուսեղինաց իջեր յերկնից 'ի դաշտն Արա-րատեան, 'ի յայցելութիւն փոքու հօտին քո ազգիս Հայոց՝ եւ 'ի ցուցումն յատկականի սի-րոյդ եւ մեծի ողորմութեանդ. եւ ոսկէուռամբ բաղխեցեր զխորս անդնդոց, եւ հալածեցեր ըզ-գունդս սանդարամետականաց. ուր եւ լուսաձեւ յօրինմամբ հրաշակերտեցեր զմայր աթոռն մեր զսուրբ Էջմիածին, եւ արարեր զնա շտեմարան*

անսպառելի շնորհացդ աստուածայնոց՝ 'ի լինել ծնող, դաստիարակ եւ կատարելագործիչ ամենայն եկեղեցեաց Հայաստանեայց։ Արդ՝ պահեա՛ զսա անարատ, հաստատուն եւ անաղօտ, 'ի պայծառազարդութիւն եկեղեցեացս մերոց եւ մանկանցս սոցին մինչեւ 'ի կատարած աշխարհի։ Յորոց միշտ փառաւորի ամենասուրբ անուն քո յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ճաշու Շարական

Տէր Թագաւորեաց վայելչութիւն։

Դշ. Որ հաստատեցեր բանիւ զեկեղեցի քո քրիստոս 'ի վերայ առաքելական վիմի, եւ երգել 'ի սմա զերգըս հոգեւորս։ Կանգնեալ 'ի սմա սեղան սրբութեան բաշխէ զմարմին իւր և զարիւն, եւ տայ 'ի սմանէ մեզ նորոգութիւն, 'ի թողութիւն մեղաց մերոց։ Իջեալ հոգւոյն սրբոյ աղաւնակերպ երեւմամբ 'ի վերայ մարմնոյ և արեանըն տեա-

ուըն, 'ի բըժըշկութի՛ւն հո՛գւոց մե-
րո՛ց։

Ծաղու Սաղմոս

Հիմունք նորա 'ի լեառն սուրբ նորա, սիրէ Տէր զդրունս Սիոնի առաւել քան զամենայն յարկսն Յակոբայ։

Սրբասացութիւն, Հրեշտակային։ Տե. յէջ 182։

# ԿԱՆՈՆ

## ՆԱԽՈՐԴ ԵՐԵԿՈՅԻ ՎԵՐԱՓՈԽՄԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

*Խոնարհեցո։ Այրեցո։ Լոյս զուարթ Տե․ յէջ 130։*

*Մեսեդի « Ասա օրհնեցէք » Բրզ․ Ասացուք ։*

*Սուրբ Աստուած որ խաչեցար վասն մեր․*

Հմբ․ Դյ․ Այսօր ժողովեալ սրբոցն ՚ի միասին երանելի առաքելքն և սուրբ կուսանքն, ջահազգեստուք պայծառացեալք լուսանէին ըղլապ-տերս իւրեանց․ և միաձայնեալ ա-սէին օրհնեալ ես ամենօրհնեալդ ՚ի կանայս։ Այսօր դնելով ըզսուրբ կոյսն առ դրանըն գերեզմանին, սպասէին և ակն ունէին տեսման, իսկ ինքնին գոլով գեր ՚ի վերոյ

տեսեալ զարարիչն եկեալ բազում
հրեշտակօք. և նոցա միաձայնեալ
ասէին օրհնեալ ես ամէն: Այս-
օր տեսեալ ըզսուրբ կոյսն թռուց-
եալ յօդս. եւ ամպեղէն կառօքն
'ի վեր ամբարձեալ յերկինս, մըտ-
տանելով յերկնային խորանն ընդ-
իմաստունսն կուսանսն. և նոցա: Այս-
օր ընդ բազմաչեայ քրովբէսն և ընդ
վեցթեւեան սրովբէսն, մըտանե-
լով յեօթնասնեղեան խորանսն.
տեսանելով զանազան աթոռսն,
զոր պատրաստեալ է քեզ տէրուն-
ւոյդ. երգեմք և մեք ասելով. օրհ:
Այսօր զազատիչըն յանցանաց
նախամօրն ըզկուսութեանց մայրն
փոխադրեալց բանն աստուած.
յերկնայինսըն դասելով յաստուա-
ծակերտ խորանն և յանպատում
'ի կեանս. վասն որոյ հըրճուղա-

կան ձայնիւ քեզ երգէ եկեղեցի
սուրբ ըզնոր զօրհնաբանութիւն։
Այսօր տիրամայր սրբուհի կոյսն,
աւանդեաց ըզսրբասնեալ հոգին 'ի
ձեռըն հրեշտակական դասուցն.
որպէս գերարփի փայլեալ, անհե-
ղեցըն նըմանեալ հրեղինաց դասուցն.
վասն։ Այսօր վերհամբարձեալ ըզմաք-
րական մարմինն աստուածամօր կու-
սին, անմարմին զըւարթնոցն. ամ-
փոփեալ 'ի տեղի գերակայիցն. յերե-
ւելի ըզգայութեանցս անձառից
առնել հանգոյգս. վասն։ Այսօր
յուսապատար խնդութեամբ և յա-
ւէժաբար հընչմամբ նուագեմք քեզ
հողեղէնքս ընդ հրաբոսն սերոբիցն.
տօնախմբելով զյիշատակ կուսի
աղախնոյ եւ մօր քոյ. վասն։

Ձկնի « Հայր գթածին »

ՆԱԽԱՏՕՆԱԿ

Հրջ. Որ ընդ նախամօրն ընդ յանցանս երկնայն եբարձ և զորդիդ քո միածին մարմնով ծընար. այսօր առ 'ի մէնջ 'ի վերին զօրսն փոխեցեր զնախաստեղծին ծընողըն, զոր միշտ ունիմք բարեխօս առ քեզ տէր աստուած հարցըն մերոց։ Որ էակից ես հօր և սուրբ հոգւոյն, մարմնանալ 'ի յանձն առեր 'ի սրբոյ կուսէն, այսօր փոխադրեալ դասեցեր յերկնային խորանն ընդ քոյին ծընողըն, զոր միշտ։ Որ յամենայնի ես լցուցիչ բարեխնամ սուրբ հոգի, այսօր պարգեւօք հանգուցեր յանպատում 'ի կեանս ընդ կուսութեան ընդ մայրըն. զոր։

Փ. Ընդ տէր օրհնեցէք բարձր արարչէք ընդ ծնող անտանելի բանին ընդ միշտ կոյս։

Որ 'ի կուսական դասակցութեանց և 'ի սրբոց ճգնաւորաց փառաբանիս սրբուհի. ուստի և մեք հաւատացեալքս վերապատուեմք ըզփոխումըն քո 'ի յերկինս. որ առաւել բարձրացեալդ ես յաւիտեան:
Զբարեբանեալդ անդադար միշտ 'ի վերին զօրաց. և ըզվերափոխեալդ ի դասս առաքելոց և մարգարէից. ընդ որս և մեք հաւատացեալքս վերապատուեմք ըզքոյին աստուածամայր ըզհանգստեան տօնս. որ ա:

Մեծ. Խորանայարկ կամարանըման յօրինեցար սուրբ կոյս աստուածածին. զանհասանելի զբանն աստըւած. բնաւորապէս անսերմնաբար կրեցեր 'ի քում յորովայնի. անդադար երգով ըզքեզ միշտ մեծացուցանեմք: Դուռն երկնից ըզծագումն անճառելի անապական որ 'ի

հօրէ առաքեցար. 'ի գիրկս քո բարձեալ կրեցեր զի եցուցանելով մարմնացելոյն 'ի քէն զկուսական քո սուրբ ըզկաթն. անդադար եր: Տեղափոխեալ զքեզ 'ի վերնական 'ի կառըս քերովբէական աստուածամայր. սպասաւորեալդ 'ի սերովբէից, և երկրպագեալդ յանմարմնական զօրաց. անդադար եր:

Ողբ. Որ ունիս իշխանութիւն մահու և կենաց քրիստոս թագաւոր փառաց ողորմեա մեզ աստուած: Տօնելով ըզյիշատակ կուսի աստուածորդւոյ մօր. հրճուին հրեշտակք 'ի յերկինս, եւ ցնծան դասք առաքելոց և մարգարէից ընդ կուսական տօնս. որ: Քեզ միայնոյ մօր և կուսի մաղթեմք հայցելով 'ի քէն, բարեխօսեա անդադար առ որդին քո և աստուած մեր, փրկել ըզմեզ 'ի փոր-

ձուլթենէ և յամենայն վըտանգից
մերոց ։

Տէր․ Անըսկիզբն աստուած անհասանելի բընութիւն և հանգուցեալ ՚ի հրեղէն կառս, վասն որոյ գովելով ասեմք․ օրհնեալ ես հայր անըսկիզբն աստուած ։ Մարգարտատեսիլ և ծիրանազգեաց հրաշափառագոյն լոյս, զոր առեալ որդւոյ վերափոխեալ դասեցոյց յանպատում ՚ի կեանս, վասն որոյ գովելով ասեմք․ օրհնեալ ես որդիդ միածին աստուած ։ Անհասանելի հոգւոյն զօրութիւն․ որով փառաւորեալ համատարած լոյսն ըզկուսան կան անձամբն, վերափոխելով յանպատմելի և յանհասանելի և յանանց լոյսն վասն որոյ բարեբանելով ասեմք․ օրհնեալ ես հոգիդ ճշմարիտ աստուած ։

Քարոզ․ Ս. զԱստուածածինն ։ Կեցո ։

# ԿԱՐԳ

## ԱՌԱՒՕՏԵԱՆ ՎԵՐԱՓՈԽՄԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

*Տէր զի բազում. ձ՟ր առաջին: Տե՛ս յէջ 1—50:*

*Կանոնագլուխ ըստ ձայնի: Տե՛ս յէջ 16:*

*Հետեւեալ Շար. դկ: «Արեւելք գերարփին».*

*Օրհնութիւն. գձ. «Այսօր ժողով.»: Տե՛ս յէջ 362:*

*Քարոզ. ըստ ձայնի առաջին: Տե՛ս յէջ 52:*

*Աւետումք Ծննդեան. ըստ ձայնի: Տե՛ս յէջ 86.*

*Հարց. «Որ զնախամօրն». ձ՟ր առաջին: Տե՛ս յէջ 365:*

### ԱՌԱՒՕՏՈՒ ԵՐԳ

**Արի Տէր 'ի հանգիստ քո, դու և տապանակ կտակի սրբութեան քո:**

**Ցիշեա Տէր զԴաւիթ և զամենայն հեզութիւն նորա:**

*Քարոզ. «Մայր սուրբ սքան.»: Տե՛ս յէջ 94:*

*Սբ. Ած. որ եկիր 'ի փոխումն մօր քոյ և կուսի:*

*Շար. դձ. Այսօր ժողովեալ: Տե՛ս յէջ 362.*

*Գիրք Ե առ. Սաղմոս:*

**Աւէ. Աւէ: Հոգին սուրբ եկեսցէ 'ի քեզ և զօրութիւն բարձրելոյն հովանի լիցի 'ի վերայ քոյ:**

*Աւետարան, Անդաստան և այլն*

Շար. դկ. «Յիսուս միածինն». Չոր ոտրօրն։ Տե՛ս յէջ 177։

Սաղմոս. «՚Ի խորոց կարդացի»։ Տե՛ս յէջ 179։

Աւետ. Հոգւոյ։ Ե. տաղ Նորաստեղծեալ։ Տե՛ս յէջ 62։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո։

Ի ժամ Ս. Պատարագին

## ՄԵՂԵԴԻ

Անճառելին խորան, բանին բնակարան, գովեալ
Մարիամ սրբուհի, դու վարդ անթառամ։
Ընտիր բարեխօս, ղամպար պայծառ լոյս, ճըշ-
մարիտ սուրբ կոյս, դու վասն մեր մաղթեա
առ Յիսուս։

Աչքըն ծով 'ի ծով ծիծաղախիտ ծաւալանայր
յառաւօտուն երկու փայլակնաձեւ արեգական
նման։

Բանին հօր ծոցոյ մարմնարան, ափիահրաշ կոյս
Մարիամ։

«Ջանապական կոյսն Մարիամ»։ Տե՛ս յէջ 100։

Ժամամուտ. Աստուածածին անհարսնացեալ։ Տե՛ս յէջ 75։

Ճաշու Շար. Բյ. «Անթառամ ծաղիկ»։ Տե՛ս յէջ 125։

Գիրք ե տաղ Սաղմոս. «Այսօր ծնաւ»։ Տե՛ս յէջ 101։

Սրբասացութիւն. «Բազմութիւնք»։ Տե՛ս յէջ 78։

## ՏԱՂ

Համեմատ քեզ ոչ գոյ նըման գովելի ես գովելի.
Աներղին մայր եղեր դու կոյս նազելի ես նազելի.
Մեղաւորաց հաստատուն յոյս անձկալի ես անձկալի

Մեր փրկութեան դու ես պատճառ խնկելի ես խնկելի.
Սերովբէք և Քերովբէք զքեզ օրհնեն սուրբ Կոյս.
Տէրութիւնք և պետութիւնք զքեզ գովեն Ս. Կոյս.
Քեզ նըման երանեալ ո՛չ յերկնի և ո՛չ յերկրի.
Քրիստոս Բանն Աստուած 'ի քէն ծնաւ Ս. Կոյս.
Կոյս անարատ, լոյս գերազանց, Մայր գովելի ես գովելի.
Կոյս, հիանալի Կոյս, զարմանալի Կոյս,
Համասփիւռ Կոյս, վարդ նազելի Կոյս,
Ամենօրհնեալ Կոյս, դու երջանիկ լոյս,
Մեղաւորաց յոյս, լեր բարեխօս Կոյս:

---

# ԿԱՐԳ

## Բ. ԱԻՈԻՐ ՎԵՐԱՓՈԽՄԱՆ

### ԱՒԱԻՕՏՈԻ ԵՐԳ

Իջցէ որպէս զանձրև 'ի վերայ գեղման, որպէս ցօղ զի ցօղէ յերկիր:
Աստուած զիրաւունս քո արքայի տուր, և զարդարութիւնս քո որդւոյ Թագաւորի:

Քարոզ. Մայր սուրբ սքանչելի: Տե՛ս յէջ 94:

Սաղմոս կց. Իջցէ որպէս: Փխ. Ած. զիրաւունս: Տես յէջ 60

Երգ. Արարչական ։ Տէ՛ս յէջ 63 ։

Քարոզ. Խնդրեսցուք. Կեցո եւն ։

Ժամամուտ. Աստուածածին զքեզ խոստ։ Տէ՛ս յէջ 100։

Ճաշու Շար. գլ. Մեծացուսցէ անձն իմ ։

Աստուածածին ամպ լուսաւոր որ ըզգօղըն կենաց հեղեր յերկիր բանն, և զնախամօրըն շիջուցեր պարտեացն ըղհուր. անդադար ձայ-նիւ զքեզ բարեբանեմք և հոգևոր երգով մեծացուցանեմք ։ Տեղի ան-տանելի բանին և երկիր վայրա-փայլ յորում լոյսն ագանիցի, և ա-րեւելք արեգականն արդարութեան. անդա ։ Զքեզ կատարումըն մարգա-րէից, կուսական քո ծնընդեամբ ո-րով բնութեանըս քակտեցան օրէնք հրաշքուն սեռիցըն փոխադրեալ ի-լուսաձեմ խորանսն. անդադար ։

Ճաշու Սաղ. Ուրախ լեր բերկ ։ Տես յէջ 129 ։

# ԿԱՆՈՆ

## ՆԱԽՈՐԴ ԵՐԵԿՈՅԻ ՎԵՐԱՑՄԱՆ Ս. ԽԱՉԻ

*Մեսեդի « Աստ օրհնեցէք ։ Ո՛ կայք ։*
*Սուրբ Աստուած, որ խաչեցար ։*

Հյք. Այ. Որ զանարատ բազուկըս քո 'ի խաչին տարածեցեր քրիստոս աստուած, և նշան յաղթութեան ետուր մեզ. սովաւ ըզկենաւնըս մեր պահեա։ Որ զաշխարհակեցոյց բազկատարածութիւն խաչին քո քրիստոս աստուած. զաւազան զօրութեան ետուր մեզ. սովաւ։ Որ ըզմեռեալըն ի ճաշակմանէ փայտին յանցանաց կենաց փայտիւըն կենագործեցեր. սովաւ։

Սուրբ խաչըն օգնական հաւատացելոց, կանգնեցաւ 'ի յերկրի յաղթող թշնամւոյն. եկայք ժողո-

վուրդք երկրպագեցուք ։ Արարիչն
աստուած բարձրացաւ ՚ի խաչին. և
զմեռեալս մեղօք փայտին ճաշակ-
մամբն. ՚ի սմա նորոգեալ կենդա-
նացոյց ։ Ի միւսանգամ գալստեանն
աստուածորդւոյն սուրբ խաչն ե-
րեւի և լուսաւորէ. զի նա է յոյս
հաւատացելոց ։

Քարոզ. Սուրբ խաչիւ. Կեցո. Ալ. Պահպանեա ։

## ԿԱՐԳ

## ԱՌԱՒՕՏԵԱՆ ՎԵՐԱՑՄԱՆ Ս. ԽԱՉԻ

Տէր զի թագուոր. խոր. առաւօտն ։ Տե՛ս յէջ 1-50։

Կանոնագլուխ. ըստ յայնմ աւուրն ։ Տես յէջ 16 ։

Հանգ. Շար. ի տեղ. Այսօր անճառ ։ Տես յէջ 22 ։

Հետեւակ Շար. «Զօրութիւն սուրբ խաչի» ։

Օրհնութիւն. «Որ զանարատ» ։ Տե՛ս յէջ 373 ։

Քարոզ. ըստ յայնմ աւուրն ։ Տես յէջ 52 ։

## ԱԼԷԼՈՒՔ ԽԱՉԻ

Ալէլուիա, ալէլուիա. ալէլուիա։

Այ. Ցո՛ւպ քո և գաւազան, նոքա մխիթարե՞սցեն զի՛ս։ Պատրա՛ստ արարեր առաջի իմ՝ զսեղան, ակն յանդիման նեղչա՞ց իմո՛ց։

Ալէ։ Ետո՛ւր երկիւղածաց քոց նշան, զի ապրեսցին յերեսաց ա՞ղեղա՛ն։ Որպէ՛ս փրկեցան սիրելիք քո, կեցո աջով քով և՞ լուր մե՛զ։
Փառք և եր. Այժմ և միշտ։ Ալէլու։

Ակ. Նե՛տք քո սրեալ են հզօր. և ժողովուրդք ի ներքոյ քո անկցին 'ի սիրտս թշնամեաց թագա՞ւորի՛։ Աթո՛ռ քո Աստուած յաւիտեանս յաւիտենից, գաւազան ուղղութեան, գաւազան արքայո՞ւթեան քո՛յ։

Ալէ։ Տո՛ւր զօրութիւն ծառայի քո, կեցո զորդի աղախնոյ քո, և արա առ իս նշան բա՞րութեա՛ն։ Տեսցե՛ն ատելիք իմ և ամաչեսցեն. զի դու Տէր օգնեցեր ինձ և մխիթարե՞ցեր զի՛ս։
Փառք և եր։ Այժմ եւ.

Բյ. Ետո՛ւր երկիւղածաց քոց նշան, զի ապրեսցին յերեսաց ա՞ղեղա՛ն։ Որպէ՛ս փրկեցան սիրելիք քո. կեցո՛ աջով քով և՞ լուր մե՛զ։

Ալէ։ Դո՛ւ պատրաստեցեր զուղղութիւն և զիրաւունս, և զարդարութիւն Յակոբայ դու ա՞րարե՛ր։ Բա՛րձր արարէք զՏէր Աստուած մեր, երկրպագէք պատուանդանի ոտից նորա զի՞ սուրբ է։
Փառք և եր։ Այժմ և միշտ։

Բկ. Տո՛ւր զօրութիւն ծառայի քո, կեցո՛ զորդի աղախնոյ քո, և արա առ իս նշան բարութեա՛ն։ Տեսցե՛ն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ՝ և մխիթարեցեր զի՛ս։

Այլ։ Ասա՛ց Տէր ցՏէր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ. մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քո՛ց։ Գաւազա՛ն զօրութեան առաքեսցէ քեզ Տէր 'ի Սիօնէ, և տիրեսցես դու 'ի մէջ թշնամեաց քո՛ց։

Փառք և երկիր։ Այժմ և միշտ։

Գյ. Դո՛ւ պատրաստեցեր զուղղութիւն և զիրաւունս, և զարդարութիւն Յակոբայ դու արարե՛ր։ Բա՛րձր արարէք զՏէր Աստուած մեր. երկրպագեցէք պատուանդանի ոտից նորա, զի սուրբ է՛։

Այլ։ Յայտնեսցե՛ն երկինք զվայելչութիւն փառաց նորա, և օրհնութեամբ նորա լցան տիեզե՛րք։ Ճառագա՛յթք որպէս 'ի լուսոյ հաստան 'ի նմանէ, և եղջիւրք 'ի ձեռին նորա գտան, և անդ հաստատեցաւ զօրութիւն փառա՛ց նորա՛։

Փառք և երկիր։ Այժմ և միշտ։

Գկ. Ասա՛ց Տէր ցՏէր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ, մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քո՛ց։ Գաւազա՛ն զօրութեան առաքեսցէ քեզ Տէր 'ի Սիօնէ, և տիրեսցես դու 'ի մէջ թշնամեաց քո՛ց։

Ալէ՛։ Նշանեցա՛ւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտի՛ց մերո՛ց։
'Ի պտղո՜յ ցորենոյ գինւոյ և ձիթոյ իւրեանց լը-ցուցեր ը՛զնոսա՛։

Փառք և երկր։ Այժմ և միշտ։

Գյ. Ցայտնեսցե՛ն երկինք զվայելչութիւն փա-ռաց Նորա, և օրհնութեամբ Նորա լցան ա՛նե-զե՛րք։ Ծառագա՛յթք որպէս 'ի լուսոյ հաստատան 'ի Նմանէ, և եղջիւրք 'ի ձեռին Նորա գտան, և անդ հաստատեցաւ զօրութիւն փառա՛ց Նորա՛։

Ալէ։ Ցո՛ւպ քոյն գաւազան, նոքա մխիթարե՛սցեն զի՛ս։ Պատրա՛ստ արարեր առաջի իմ զսեղան, ակն յանդիման նեղչա՛ց իմո՛ց։

Փառք և երկր։ Այժմ և միշտ։

Դկ. Նշանեցա՛ւ առ մեզ լոյս երեսաց քոց և ետուր ուրախութիւն սրտի՛ց մերո՛ց։ 'Ի պտղո՜յ ցորենոյ գինւոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր ը՛զ-նոսա՛։

Ալէ. Նե՜տք քո սրեալ են հզօր, և ժողովուրդք 'ի ներքոյ քոյ անկցին 'ի սիրտս թշնամեաց թա-գա՛ւորի։ Աթո՜ռ քո Աստուած յաւիտեանս յա-ւիտենից. գաւազան ուղղութեան գաւազան ար-քայո՛ւթեան քո՛յ։

Փառք եւ երկր։ Այժմ եւ միշտ։

Հարց. « Այսօր պատուական խաչիւ » խոր տօթն։

Երգ զկնի Իւղաբերից Աւետարանի․

Այսօր եկեալ կամաւ Տէրն 'ի խաչ․ և տարածեաց զբազուկս իւր 'ի Նմա։

ԱՌԱՒՕՏՈՒ ԵՐԳ

Եստուր երկիւղածաց քոց Նշան, զի ապրեսցին յերեսաց աղեղան։ Որպէս փրկեցան սիրելիք քո կեցո աջով քով եւ լուր մեզ․

Սուրբ Աստուած, որ խաչեցար։

Ի Բաժոքէն Տօր․ « Որ զանարատ » Տես յէջ 373։

Դիրք Ե-րդ Սաղմոս։

Ալէ․ ալէ․ Նշանեցաւ առ մեզ 'լոյս երեսաց քոց և եստուր ուրախութիւն սրտից մերոց․

Աւետարան, Անդաստան։ Այլ « Նորաստեղծեալ »։

Կեցո Ե. ... Շարական Բկ.

Խաչի քո Քրիստոս երկիրպագանեմք և զսուրբ թաղումն քո մեծացուցանեմք․ և զսուրբ զյարութիւնդ քո փառաւորեմք։

Փառք սուրբ խաչիդ, ալէլուիա․ խաչեցելոյդ ալէլուիա․ սուրբ յարութեանդ ալէ։

Եւ զայլսն Տես յէջ 239։

Ի ձայն Ս. Գարարոքէն․

Մեղէդի։

Այսօր 'ի ձեռն խաչին և պատուական նշանին․ տացուք պատիւ Յիսուսի ազատողին համայնից ։

## ԺԱՄԱՄՈՒՏ

Առաջի պատուական ամենայաղթ խաչի քո անկանիմք երկրպագելով և խնդրեմք զթողութիւն յանցանաց մերոց. քանզի սովաւ բարձեր զդատապարտութիւն ազգի մարդկան, և այժմ վասն սրբոյ աստուածային քո նշանի շնորհեա զերկնային զխաղաղութիւնդ ամենայն աշխարհի ։

Ճաշու Տաղական Գկ.

Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ ։

Ցա՛ղթո՛ղ և զնոր օրհնո՛ւթիւն միշտ 'ի՛ բարձունս ե՛րգեսցուք. Թագա՛ւորին քրիստոսի հաւա՛տացեալ ժո՛ղովո՛ւրդք ։ Ո՛ր ե՛կն 'ի լուսաւո՛րել զընտրեա՛լ սուրբ զեկե՛ղեցի. և պը՛սակեաց սուրբ խա՛չիւն նըմա՛ ըզփառս ե՛րգեսցո՛ւք ։ Ա՛յսօ՛ր եւ մեք տօնե՛սցուք զնաւա՛կատիս սո՛ւրբ խաչին եւ փըր՛կողին մատո՛ւսցուք փառք ե՛ւ պատիւ յա՛ւիտեա՛ն ։

Գիրք Ն տող Սաղմոս .

Ալէ. ալէ. Տուր զօրութիւն ծառայի քոյ, կեցո զորդի աղախնոյ քոյ և արա առ իս նշան բարութեան ։

**«ՍՐԲԱՍԱՑՈՒԹԻՒՆ»**

*Ով է որպէս Տէր Աստուած մեր. Տն. ձէ 261։*

**ՏԱՂ**

*Խաչն 'ի նախնումն երեւեցաւ, ծաղկեալ 'ի դը-րախտն աստուածատունկ, մխիթարիչ եղեւ Սե-թայ նախագուշակ հօրն Ադամայ, մեք 'ի նոյն փայտն եմք յուսացեալ, յոր Տէր Յիսուս բեւե-ռեցաւ, և խոնարհեալ երկրպագեմք աստուած-ընկալ սուրբ նշանին։*

## ԿԱՐԳ

### ՎԵՐԱՑՄԱՆ Ս. ԽԱՉԻ ԵՐԵԿՈՑԵԱՆ

*Մեսեդ. «Ետուր երկիւղածաց։ Որպէս փրկեցան»։*

Հմբ. Դյ. Զօրութիւն սուրբ խաչի քո Քրիստոս, որ կանգնեցեր 'ի փըր-կութիւն աշխարհի. սա պահեսցէ զմեզ յամենայն փորձութենէ։ Քանզի 'ի սմա բարձրացար աստը-ւած. եւ 'ի սմա հեղեր ըզպատ-ուական սուրբ զարիւնդ. սա։ Եւ զզ

քո՛ միւսանգամ՚ ընդդալուստ նըշանա՛ւ
խաչի քո՛, ցուցե՛ր աշխարհի՛. սա։
Ի ստունգանե՛լն ադա՛մայ 'ի կենա-
գո՛րծ 'ի դրախտի՛ն. խա՛բմամբ պատ-
րանօք փայտի՛ն ծառո՛յն գիտութեա՛ն.
օձաջա՛մբ պատրանո՛քըն ճաշակեա՛լ 'ի
պտղոյն. և եղե՛ւ վայրա՛քնակիլ մայ-
րա՛քաղաքն ե՛րուսաղէ՛մ։ Ա՛րեւե՛լք
ի դրախտին ընծա՛յեցին ը՛զփայտ խա-
չի՛ն. և եկեա՛լ կատարի՛ւր 'ի տեղ-
ւոջ կա՛ռափըմա՛ն, բարձրանա՛յր 'ի
դիտի՛ն տա՛րրեղէ՛ն փայտակերտըն
սո՛ւրբ քառաթեւըն պա՛հապանն ան-
ձանց մերո՛ց։ Բանն անե՛ղ համագո՛յ
որ ընդ հօր և՛ սուրբ հոգւո՛յն, ե՛րև-
եա՛լ 'ի յերկրի պայծա՛ռացա՛ն որա-
րածք. հըղօրին կարողո՛ւթեա՛մբ եւ
ըզմե՛զ վերա՛գրեաց յորդեգրութեա՛ն
շը՛նո՛րհս։

Քարոզ. Սբ. Խաչիւս. Կեցո. Աղօթք «Պահպանեա»։

Ի Թափօրին Շարական

Գծ. Որ ծագեցեր մեզ լոյս մեծ
ըզնըշան յաղթութեան խաչի քո,
թագաւոր յաւիտենից. և ետուր
պարգևս ամրութեան հաւատացե-
լոց քոց, աշտարակ հըզօր յերե-
սաց թշնամւոյն. աղաչեմք ըզքեզ
տէր պահպանեա ըզմեզ ընդ հո-
հովանեաւ խաչի քոյ սուրբ։ Սա
պըսակ կ զարդարեալ 'ի շնորհաց իմա-
նալի լուսոյն. և եդեալ 'ի գլուխ մե-
զուցելոյն. փայլելով երանգօք ներ-
կեալ արեամբ և ջրով. 'ի տիգա-
խոց կողէդ՝ զոր 'ի զինուորէն ըն-
կալար. աղաչեմք։ Որ զանդունդըս
մեղաց ծովուն սովաւ բաժանե-
ցեր. և ըզբռնաւորըն ծածկեցեր խո-
րօքըն յաւիտենական հրոյն. հա-
ներ ըզժողովուրդըս քո 'ի բնակու-
թիւնս երկնից անկեալ զօրացն. ա։

Առաջի խորանին Աղօթք. Գիրք Ե. ձայն Սաղմոս.

Ալէ. ալէ. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց և ետուր ուրախութիւն սրտից մերոց.

Աւետարան. Ե ձայն

Սուրբ Աստուած (երեքս) Սուրբ և հզօր (երեքս) Սուրբ եւ անմահ (երեքս) որ խաչեցար վասն մեր ողորմեա մեզ.

Շար. Գդ. Այսօր երևումն մեծի Ճառագայթի Նշանի տեառըն աստուծոյ մերոյ փառաւորեալ. ի նաւակատիսն որ յերուսաղէմ ժողովուրդք բարեբանելով ըզ Քրիստոս տօնեցէք ուրախութեամբ. Քանզի նշոյլք կենսատու սուրբ խաչին արեգակնակերպ փայլմամբըն թափանցիկ լուսով ի յարեւելից յայտնեցաւ. ժողովուրդք բա. Ի յերկնից ցոլացեալ ահեղ և նորաքանչ հրաշիւք ցուցաւ սա սուրբ գող-

գոլթայ, նըշանըն տէրունական.

Ժողո:

Որթի: Աւետարան:

Ապա Քարոզ. Տեառնագրութիւն եւ այլ

Ամէն ալէլուիա, ալէլուիա, ալէլուիա:

« Սուրբ Աստուած » ըստ վերնոյն:

Շար. « Որ զանարատ բազուկս: » յէջ 373:

Որթի. Աւետարան.

Ապա Քարոզ. Տեառնագրութիւն եւ այլ

Ամէն ալէլուիա, ըստ վերնոյն.

Սուրբ Աստուած. ըստ վերնոյն:

Շար. Գյ. Փայտ կենաց որ փոխանակ մահացու պտղոյն ըզքրիստոս պտղաբերեցեր, պարապեալ պանծեա զուխտս հաւաստացելոց: Քեւ բացաւ մեզ ճանապարհ ծառոյն կենաց ՚ի սրովբէափակ պահպանութենէն պարապեալ: Քեւ ազատեցաւ նախահայրն ՚ի ճաշակմանէ պտղոյն, եւ քեզ երկրպագեն ամենայն հաւատացեալք. պարապեալ:

Որթի. Աւետարան.

Այս Փառք. Տեառնագրութիւն եւ այլն

Ամէն ալէլուիա, ըստ վերնոյն.

Սուրբ Աստուած. ըստ վերնոյն։

Շար. Բէ. Խաչըն կենսաբեր որ եղեւ մեզ փրկութիւն. սոփա. ամենեքեան ըզգեզ բարեբանեմք։ Որ ՚ի հօրէ լուսոյ լոյս ճառագայթեալ ՚ի յերկրի, եւ գաւազան զօրութեան հաւատացելոց. սոփա։ Որ լուսափայլ ծագմամբ հրաշափառապէս մեզ ցուցաւ ՚ի յօգնութիւն ընդդէմ թշնամւոյն. սոփա։

Որթի։ Աւետարան։

Այս Փառք. Տեառնագրութիւն եւ այլն

Ամէն։

Այս «Խաչի քո Քրիստոս.» Տե՛ս յէջ 362։

Փառք. Սուրբ խաչիւս. Աղ. Պահպանիչ։

## Թ. ՕՐ ՎԵՐԱՑՄԱՆ Ս. ԽԱՉԻ

*Ճաշու Շարական Դժ. Տէր Թագաւորեաց վայելչ։*

Ի յերկնից երեւեալ նշանն յաղ-թութեան այսօր հեթանոսաց ծա-գեաց լոյսն ողորմութեան։ Եւ բազ-մութեան ժողովոյն տեսանէին այսօր սուրբ ըզխաչըն լուսոյ ճառագայթիւք զարդարեալ։ Ընդ երեւումըն սրբոյ խաչի քո Քրիստոս այսօր Երուսա-ղէմ մեծապէս պանծացաւ յոյժ։ Եւ ըզծագումըն լուսոյ աստուածային նշանի քո ճառագայթիւք տեսա-նիւր բազմութեան ժողովոյն։ Ա-մենայաղթ զօրութիւն խաչի քո Քը-րիստոս. որ ցուցաւ 'ի յօգնութիւն ընդդէմ թշնամւոյն պատերազմեալ զօրութեամբ քով։

# ԿԱՆՈՆ

## ՎԱՐԱԳԱՅ Ս․ ԽԱՉԻ

Օրհ. Ակ. Նշանաւ ամենայաղթ խաչիւրդ քո Քրիստոս պահպանեա զմեզ մարդասէր յաներեւոյթ թշնամւոյն․ զի դու միայն ես թագաւոր փառաց օրհնեալ յաւիտեան։ Որ ՚ի վերայ սուրբ տարածեցեր զանարատ բազուկըս քո, և հեղեր զարիւնդ ՚ի փրկութիւն տիեզերաց․ զի դու։ Ի միւսանգամ քո գալստեանըն յերեւիլ սուրբ նշանիս, արժանի արա ըղձառաւյս քո վերստին նորոգման․ զի դու միայն ես։

Խաչ քո եղիցի մեզ ապաւէն, բոցանիշ փայլմամբն իւրով, խորտակեաց ըզթշնամին եւ երոյծ ըզ դատակնիք անուանեալ փայտըն կենաց ՚ի փրկութիւն տիեզերաց։

Վերստեալ ցընծան երկինք եւ երկիրս ուրախանայ, ընդ յայտնիլ սրբոյ խաչին սեռակնաձեւ քառաթեւին, որ զաշխարհըս լուսաւորեաց արեգականերբ ճառագայթիւք։ Ցընծայաւ երուսաղէմ բերկրեցան հաւատացեալք, նորահրաշ զարդարեցան, քանզի տեսին զյաղթող նըշանն, արարածք ամենայն ՚ի լուսոյն պայծառացան։

Ժամամուտ « Առաջի պատ ». Տես յէջ 379։

Ճաշու Տաղական

Գյ. Քեզ քրիստոսի կաթուղիկէ եկեղեցւոյ շնորհողի զյաղթական ըզ պատուական զաստուածընկալ սուրբ նըշանս, մատուցանեմք զօրհներգութիւն միշտ ՚ի բարձունս։ Սա կամաւ քո քրիստոս և թեւօք ամենազօր սուրբ հոգւոյն. և դասուք հրեշտակաց թռուցեալ եկաւորի. ՚ի լեա-

ուրն վարագա՛յ բընակիլ 'ի նմա՛ : Ե-
կա՛յք ժողովո՛ւրդք երկրպագեսցուք
աստուածա՛յին սուրբ նըշանիս. Համ-
բարձէ՛ք միաբան ըզձեռըս ձեր 'ի
սըրբութիւն. և ըզբնակեա՛լն 'ի սմա
մի՞շտ փառաւո՛րեսցո՛ւք :

Ճաշու Սաղմ. « Նշանեցաւ. » Տե. յեր 383.

Սրբասացութիւն. « Ով է որպէս », Տե. յեր 261.

# ԿԱՆՈՆ

## ԳԻՒՏԻ ՍՐԲՈՅ ԽԱՉԻ

Օրհ. Այ. Հրաշակե՛րտ և զօրե՛ղ փա՛յտ
խաչի՛ քո քրիստո՛ս գաւազա՛ն զօրու-
թե՛ան 'ի յերկրի՛ երևեալ. եկա՛յք
ժողովո՛ւրդք երկը՛րպա՛գեսցո՛ւք : Զոր
հրէի՛ցըն ծածկեալ զանթաքչելի՛ ըզ
գանձըն փափաքմա՛մբ Թագուհո՛յն

փայտ կենաց յայտնեցաւ. ես: Սա է
զէն յաղթութեան հաւատացելոց,
ախոյեան եւ կնիք յաղթող ընդդէմ
թշնամւոյն. եկ:

Անճառելի երեւումն երեւեալ
դշխոյին. նըստելով յաթենի յե-
րուսաղէմ խնդրէր զպատուական
փայտ խաչին, յոր զմեսիայն բե-
ւեռեցին: Մեծասաստ հրամանաւն
ժողովեալ հրէիցն ցուցանելով նը-
մա զպատուական փայտ խաչին. յոր
ելեալ բարձրացաւ արարիչն արա-
րածոց: Ընդ յայտնիլ սրբոյ խա-
չին ’ի տեղւոջըն սրբութեան բուր-
մամբ անուշահոտ խընկոց և լցան
տիեզերըք մեծապէս պարգեւօք:

Որ ըզնախնոյն առիթ մահու փայտ
կենաց շնորհեցեր. և ետուր յաղ-
թութիւն մահացու բնութեանս.
’ի սմա բանիդ հօր երկրպագեսցուք:

Որ զանճառ լուսոյդ բարձողըն ծած-
կելո՛վ հըրեղի՛ցն. 'ի յերկրէ՛ ծագե-
ցե՜ր զերկնայի՜ն ճառագայթ. 'ի սմա՜:
Որ աչաւոր հրաշիւք ցուցե՛ր ըզնշա՛ն
խաչի քո՛, յայտնելո՛վ աշխարհի՜ յա-
րութեամբ պատանւոյն. 'ի սմա՜:

Հւց. Բյ. Ո՛ր փափա՜գելի տենչմամբ
ե՛կեա՜լ 'ի քաղա՛քն երուսաղէ՜մ աստ-
ուա՛ծամէ՜ր դը՜շխոյն. խընդրէ՛ր ըզ
փայտ խաչին. ո՛ր բարձեա՜լ մարմնով
յի՛նքեա՜ն զաստը՛ւած հայրըն մե-
րո՜ց: Յո՛րմէ զա՛րհուրեալ դողային
դա՛սք բազմութեա՜ն հըրէի՜ց 'ի յա՛-
հէ՜ թագուհւոյն, ա՛զդմամբ սուրբ
հո՛գւոյն ցուցա՜ւ պատուակա՜ն փա՛յտ
խաչին. ո՛ր բարձ. Ո՛ւստի բո՛ւրելով
խընկո՛ց անուշահոտո՛ւթի՜ւն, 'ի տեղ-
ւոջը՛ն սըրբութեա՛ն, ցընծացո՛ւ ե-
րո՛ւսաղէ՜մ ընդ յայտնի՛լ սրբոյ խա՛-
չի՜ն 'ի տեղւոջը՛ն գողգոթա. զո՛ր:

գ. Ըղտէր օրհընեցէք և բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Այսօր նըշմամբ սուրբ խաչին ի յերկրի երևեցաւ, օրհ։ Այսօր ընդդէմ թըշնամեացն զէն անպարտելի ցուցաւ մեզ. օրհ։

Մեծ. Այ. Երանելի աստուածասէր սուրբ զըշխոյն եկեալ ի քաղաքն երուսաղէմ խնդրէր ըզփրկական ծաղումըն մեծի փայտին. և քարոզէր նոցա զմորենին վառեալ որ ոչ այրէր. մեծացուցանելով զծընեալն ի կուսէն։ Եւ խոստանեալ ըզդասըս հըրեշտակաց. խոստովանէր յուդա, եկեալ ի տեղին գողգոթա հասուցանող. և քարոզէր նոցա զդուռն ընդ որ եմուտ բանն մարդեալ. մեծս։ Եւ համբարձեալ ըզձայնն յուդա ի խնդրելով ի տեառնէ ըզտենչալին ամենեցուն սուրբ

ըզխաչն. և հաւատով գոչէր եկայք երկրպագեցուք աստուածային սուրբ նշանիս. մեծ.ս։

Ողջ. Բյ. Այսօր խնդրի պատուական փայտ խաչին աւանդեալն ՚ի գողգոթա, ՚ի ձեռն աստուածասէր դշխոյին. եկայք հաւատացեալք երկրպագեսցուք աստուածային սուրբ նշանիս։ Այսօր ընծայէ գողգոթա ըզծածկեալն ՚ի յերկրի վերաբերեալ անուշահոտ խնկովք ՚ի ձեռն երանելւոյն յուդայի. եկայք։ Այսօր ՚ի ձեռըն փրկական սուրբ խաչին կենագործի պատանին մեռեալ, և ողբայ սատանայ ըզկործանումն իւր. Իսկ մեք քրիստոսի հաւատացեալք երկիր։

Տր. Ապաւինեցաք ՚ի խաչ քո արարիչ յաւիտենից, որ ետուր մեզ պահապան յաղթող ընդդէմ թշնամւոյն. աղաչեմք սովաւ փրկիչ պահպան-

եա՛ զանձինս մե՛ր ։ Բա՛րձրեա՛լ Թա-
գա՛ւոր ո՛ր վասն մե՛ր ելեր 'ի խա՛չ ,
և՛ բարձեր սովաւ զյա՛նցանս նախա-
ստե՛ղծի՛ն ա՛դամայ · ա՛ղ։ Գլո՛ւխ սուրբ
Հաւատոյ և փո՛յտ կենա՛ց մարդկան
յայտնեա՛լ զոր տեսեա՛լ այսոյն պղ՛ծոյ
կործանեցաւ ա՛նկանգնելի · ա՛ղաչե՛մք
սովաւ ։ Դո՛ղացա՛ւ Թշնա՛մի՛ն ընդ
յայտնի՛լ սրբոյ խաչին , և՛ 'ի յաՀէ՛ փա-
ռաց նո՛րա կործանեցաւ յա՛նդունդս
երկրի · ա՛ղաչե՛մք սովաւ ։ Երկինք ցըն-
ծա՛յի՛ն և երկի՛րս ուրախանայր · քան-
զի փրկի՛չ յուցաւ սուրբ խաչն և լու-
սատու տի՛եզերաց · աղաչե՛մք սովաւ ։

Ժամամուտ « Առաջի պատուական » · Տէ․ յէՂ 379 ։

Ճաշու «Այսօր խնդրի պատ. » Տէ'․ յէՂ 393 ։

Ճաշու Սաղմոս ։

Տուր զօրութիւն ծառայի քո , կեցո զորդի
աղախնոյ քո և արա առ իս նշան բարութեան ։

Սրբասացութիւն ։ Ով է որպէս ․ Տէ․ յէՂ 261 ։

# ԿԱՆՈՆ

## ԾՆՆԴԵԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ

Օրհ. Ա՛ձ. Որ նախիմաց իմաստու-
թեա՛մբ անօրինեցե՛ր զխորհուրդ սուրբ
եկե՛ղե՛ցւոյ. խորագո՛յն արկեա՛լ հի-
մունս հաստատութեա՛ն ըզդասս ա՛ր-
դա՛րոց աղաչանօք սոցա՛ խնայեա՛ 'ի
մե՛զ: Որ զօրհնութիւն նախաստեղ-
ծիցն աստուածազո՛յգ արուաց և՛ իգաց.
պայծառացեալ վայելչապէ՛ս ծա՛ղկե-
ցո՛ւցեր այսօր 'ի յովակի՛մ և՛ 'ի յա՛ն-
նա. այս: Որ ըզխոստումն աբրահա
մու նահապետի՛ն մե՛ր ը՛ստ հո՛գւոյ.
քահանայական եւ թագաւորակա՛ն
գա՛ւա՛զա՛նացըն միացեալ ցուցեր այս-
օր՛ 'ի՛ յա՛ննա՛յէ. աղաչանօք սոցա՛:

Անըսկիզբն աստուած անճառելի՛
ընքաւ զօ՛րո՛ւթիւն, որ յինկըզբանց

յաւիտենից խնամարկեցեր զորդիս
մարդկան, գերագոյն այսօր շնորհիւ
փայլեալ ցուցեր ծննդեամբ զմայր
միածնիդ քոյ ընտրելոյ. աղա: Որ
յանէից բանիւ գոյացուցեր զաշխար.
հըս ամենայն. այսօր մարդասիրեալ
անօրինաբար 'ի յաննայէ արկեր
հիմունս նորոյ աշխարհի աղ: Ի յամու
երկրէ այսօր բուսաւ մեզ բարեբեր
բոյսըն բարի, շուշան հովտաց ծա.
ղիկըն դաշտաց, միամայրըն մարիամ
արմատ տընկոյն անմահութեան. ա.
ղաչանօք [illegible]ոցա խընդայեալ 'ի մեզ:

Հրց. Դյ. Որ 'ի վերայ քերովբէից
նըստեալ հանգչիս բանդ աստուած
այսօր հրաշափառ պարգեւօք ցու
ցեր ծննդեամբ 'ի յաննայէ աթո
փառաց յերկիր զսուրբըն մարիամ
օրհնեալ տէր աստուած հարցըն
մերոց: Որ 'ի լերինըն քորեբայ փայ

լատակեալ, հուրդ աստուածային հողմով և շարժմամբ յայտնեալ 'ի պակուցումըն սուրբ մարգարէին. այսօր գթութեամբ և ողորմու-թեամբ յարմարեցեր տեղի իջման անճառելի խոնարհութեամբ 'ի յօդ-հանդիսիս զօրինակեալըն մարմնամ. օրհնեալ : Որ 'ի կանուխ ժամանակաց ստորագրեցեր զանօրէնութեան քո ըզտէղի, տաճար և քաղաք շի-նեալ բարձող անուանըդ քում բարձ-րելոյ. այսօր աստուածապէս յայտ-նեալ ցուցար բնակարան աստուա-ծութեան քո սուրբ կոյսըն մարի:

Գ. Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզծըննեալն այսօր ըզմայր մաքուր բանին զմիշտ կոյսն: Որ 'ի զօրաց հոգեղինաց երգաբանեալ սրբուհին, ըզծըն-եալն այսօր օրինօք բնութեան ըզ-մայրն աստուծոյ բանին 'ի վեր քան

ըզբնութիւնս․ բարձր ա։ Որ ՚ի դա-
սուց մարգարէից և յերջանիկ առա-
քելոցն օրհնաբանեալ և տիրուհին․
ըզլուծիչ երկանցն եւային զմայ-
րըն կենաց ծընեալն այսօր ՚ի յան-
նայէ․ բար։

Մեծ․ Առաւօտ խաղաղ․ Տե․ յէջ 118։

Ող․ Անճառելիդ աստուած ան-
զըննական ՚ի հրեղինաց, այսօր
հաճեցար ՚ի հողեղինաց յայտնել
թարգման աստուածութեանդ քո
զմիշտ կոյսըն մարիամ․ աղօթիւք
սորա ողորմեա մեզ աստըւած
Անժամանակ ծոցոյ ծընունդ հօր է
ական․ այսօր սըրբեցեր յորովայ
նէ ժամանակաւ մայր ՚ի մօրէ անճա
մարդեղութեամբ․ աղօ։ Յառա
քան զարուսեակ անմայր ծընուն
հօր ՚ի յերկինս․ այսօր ընտրեցե
իմաստութեամբ զմայր անարատ ա

հայր ծնընդեան քո 'ի յերկրի. աղ:

Տէր. Թագաւոր փառաց աստուած հոգիդ կենդանարար, 'ի շնորհաբաշխ աւուր մեծի ծնընդեան մարիամու դըստեր դաւթի թագաւորի, նորոգեա զկենդանութիւն մերոյ թագաւորի. զի օրհնեսցուք ըզքեզ տէր այժըմ և յաւիտեան: Աղբիւր կենաց և փըրկութեան մերոյ հոգի հօր և որդւոյ, 'ի յարմատոյն յեսսեայ բըղխման գաւազանի հասեալ ժամու, շնորհազարդ պայծառացո զգաւազան իշխանութեան մերոյ հայրապետին. զի օրհնես: Լրումն աշխարհի և ճառագայթ լ.մանայի հոգիդ սուրբ աստուծոյ, 'ի ցընծութեան աւուր լըրման ուրախութեան յովակիմայ եւ աննայի, աղօթիւք սոցա լըցո զպէտըս կարեաց հայաստանեայց եկեղեցւոյ. զի օրհ:

ծ. Որ 'ի բարձրութիւնս երկնից բարձրր բանիւք բարբառանիս սրբուհի, 'ի լիբանանէ դիմեալ հարսն ըզգեցեալ այսօր, զարեգական արկեալ ըզքեւ, եւ ընդ ոտիւք զլուսինն ըստուերատեսակ. օրհնութեամբ երգով եկեղեցիք տիեզերաց այսօր տօնեն ըզ յիշատակ ծննդեան քո 'ի մօրէ: Վեհագոյն սերովբէից և բազմաչեայ քերովբէից տիրամայր աստուածածին, տապանակ կըտակի, սափոր ոսկի, խորհրդաւոր խորան բանին հօր բարձրելոյ. օրհնութ: Մարգարէից հանգիստ և գրաւական կենաց մարդկան մարմ աստուածածնմայր, ընդունարան եօթնարփին շնորհաց, խարիսխ յուսոյ հաստատութեան, զուգաթիւ աւուրց դարուցս անցաւորաց. օրհն

# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑՆ ԳԱԲՐԻԷԼԻ ԵՒ ՄԻՔԱՅԵԼԻ

Օրհ. Բկ. Ո՞ր յանէից ստեղծեր ըզ պաշտօնեայս քո ՚ի հուր կիզելոյ հուրդ աննդական. ընդ նոսին օրհնեմք ըզքեզ և մեք հողեղէնքս։ Ո՞ր բանիւ գոյացուցեր զիննեակ դասըս հրեղինաց բանդ ի սկըզբանէ. ընդ նոսին գովեմք ըզ։ Ո՞ր արարեր յոգիս իմանալի ըզ հրեշտակըս քո հոգի աստուծոյ, ընդ նոսին բարեբանեմք ըզքեզ։

Անդադար յերկինս օրհնաբանողք հօրն երկնաւորի զօրք լուսեղինաց. բարեխօս լերուք ընդ մեղաւորացս։ Քաղցրաձայն երգով գոհաբանողք որդւոյն միածնի դասք

Հրեշտակաց. քա։ Անլըռելի հընչ-
մամբ բարեբանողք հոգւոյն ճըշ-
մարտի հոյլք հոգեղինաց. քարե։ Ե-
րեքսրբեան ձայնիւ փառաբանողք
սուրբ երրորդութեանն գունդք սե-
րովբէից. քարե։

Հրց. Գկ. Անըսկիզբըն Հայր առա-
ջին լոյս անճառելի. որ ՚ի լուսոյ
լոյս ներգործեալ զիմանալեաց գո-
յակսն. ընդ քեզ օրհնեմք աստը
ւած հայրըն մերոց։ Էակիցըդ հօ
՚ի լուսոյ լոյս ծագումն որդի, որ ա
րարեր ՚ի պաշտօն փառաց քոց զհը
րեղինացըն զօրս. ընդ քեզ։ Ի հօրէ
բըղխումն փառակից որդւոյ հոգի
անեղ, որ ըստեղծեր ՚ի յոգիս կ
տարեալ զհոգեղինացըն դասս. ը

է. Ըզտէր օրհնեցէք բարձր
րաբերեք ըզնա յաւիտեան։ Ծ
նային զըւարթունք հրեշտակք

հրեշտակապետք, վերին պետու-
թիւնք բարձր արարէք ըզՀայրն
երկնաւոր: Անմարմնոց բազմու-
թիւնք, իշխանութիւնք, զօրութիւնք.
անմահ տէրութիւնք, բարձր արա-
րէք զքրիստոս թագաւորն: Վեց-
թեւեան սերովբէք, քառակերպեան
քերովբէք, աթոռք անեղին բարձր
արարէք զՀոգին Ճշմարիտ:

Մնծ. Մայր և կոյս աղախին քրիս-
տոսի որ բարեխօսդ ես միշտ աշ-
խարհի. քեզ երանեն ամենայն ազ-
գք: Մաքուր աղաւնի և հարսն երկ-
նից մարիամ, տաճար և աթոռ աս-
տուծոյ բանին. քեզ երա: Քեւ հա-
ւեցան իմանալիքն ընդ հողեղէնքս,
քեւ մերձեցաք 'ի փայտըն կենաց.
քեզ երա:

Ողր. Դյ. Որ 'ի հրեղէն զօրաց երկ-
նից փառաբանիս մատըւած, որով

զերկնային անապական. աստուա-
ծային ըզշնորհս հեղեր յորդիս ա-
դամայ. աղաչանօք սոցա ողորմեա
մեզ աստուած : Երեւելով հոգեղի-
նացս անհիւթականքն ի ձեւ մարմ-
նոյ, որք եւ ծանուցին մարգարէ-
ից ըզխորհուրդ քո գալըստեանդ
բազմապատիկ տեսլեամբ օրհնա-
կելով. ազա : Անճառելի տնօրէնու-
թեանդ քոյ աւետաբերք առաքե-
ցան գաբրիէլ եւ միքայէլ. անմար-
մնական դասուքն խրեանց յերկրի
սպասաւորելով. ազա :

Տէր. Անմահ արքային անար-
ուեստ աթոռք. բազմաչեայ քե-
րովբէք, սրբասաց ձայնիւ սրովբէք
առաջին յերկինս քահանայա-
պետք. բարեխօս լերուք առ տէր
վասն եկեղեցւոյ : Բարձրելոյն փա-
ռաց բարձող տէրութիւնք, ան-

յաղթելի զօրութիւնք. վեհագոյն իշխանութիւնք, երկրորդին դասու քահանայապետք. բարձր: Գերագոյն էին պետութիւնք վերին, հրեշտակապետք երկնաւորք. հրեշտակաց զինուորութիւնք երրորդի յերկնից քահանայապետք. ձեզ համաձայնեալ երգեմք ըզփառս 'ի բարձունս:

Մկ. Մ. Երկնաւոր հօտ ընտրեալ. զոր հովիւըն բաց թողեալ յերկինս, և եկեալ 'ի խնդիր մեզ մոլորելոցս, որով լըցեալ զթիւ հարիւրոցդ, արար ուրախութիւն 'ի յերկինս երկնաւորացդ, աղաչեմք ըզ ձեզ բարեխօս լերուք առ տէր վասըն քաւութեան մեղաց մերոց: Տեսանող դք անտեսին, խորհրդածուք խորոցն աստուծոյ, որք իջեալ ընդ միածնին սպասաւորել տնօրէ-

նութեանն. 'ի ծննդեանն աւետա-
ւորք հովուացն, և կանանցն իւղա-
բերից կենաց քարոզք ըզկենդան-
ւոյն. ադո: Պահապանք աշխարհի.
բանակըք տեառն շուրջ զերկիւղա-
ծովք. բարեկամք ազգի մարդկան
միջնորդք մահու և յարութեան,
միքայէլ և գաբրիէլ մեծք որք կայք
միշտ առաջի ամենասուրբ երրոր-
դութեանն. աղաչեմք ըզձեզ:

### ԱԼԷԼՈՒՔ 'Ի ՏՕՆԻ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԱՑ

Ալէլուիա, Ալէլուիա, Ալէլուիա.

Ո՛ արար զհրեշտակս իւր յոգիս, և զպաշտօնեայս իւր 'ի հուր կիզելոյ: Հաստատեաց զերկիր 'ի վերայ հաստատութեան իւրոյ. զի մի սասանեսցի յաւիտեան.

Ալէ". Օրհնեցէք զտէր յերկինս. օրհնեցէք զնա 'ի բարձանց: Օրհնեցէք զնա ամենայն հրեշտակք նորա, օրհնեցէք զնա ամենայն զօրութիւնք նորա:

Փառք և երկր. Այժմ և միշտ. Ալէ":

Դասք հրեշտակաց օրհնեն զքեզ Քրիստոս ալէլուիա, մարդկան ազգ սաղմոսեն քեզ. Ալէ":

Երկինք և երկիր գոհանան ըզքէն Տէր, արարածք ամենայն քեզ երկիրպագանեն, և հրեշտակք 'ի բարձունս աղաղակեն և ասեն. ողորմեա դու ստեղծեր, մի կորուսաներ: Երկինք երկնից Ջուրք որ 'ի վերոյ քան զերկինս. օրհնեցէք զանունըն Տեառն: Զի նա ասաց, և եղեն, հրամայեաց և հաստատեցան. և հրեշտակք 'ի բար": Երկինք և երկիր հանապազ զքեզ գովեն. Թագաւոր փառաց. սերովբէք և քերովբէք 'ի խոնարհ ունելով ըզդէմս իւրեանց. և միաձայն բարբառոյն աղաղակեն և ասեն. սուրբ, սուրբ, սուրբ տէր զօրութեանց:

ԺԱՄԱՄՈՒՏ

Զոր օրհնեն անլռելի ձայնիւ իմանալի զօրութիւնք՝ երկնաւոր նահապետութիւնք, հրեշտակք և հրեշտակապետք, աթոռք և տէրութիւնք, իշխանութիւնք և պետութիւնք. սերովբէք և քերովբէք, և մեք օրհնեսցուք զնոյն ամենասուրբ Երրորդութիւնն և զմի Աստուածութիւնն:

Այսօր երկրաւորս եկեղեցւոյ քահանայապետութիւն ցնծայ հրաշափառապէս՝ զերկնաւոր քահանայապետութեանցդ կատարելով զտօնախմբութեան տօնս: Եւ ընդ անմարմնականաց և հոգեղինաց դասուցդ՝ և մեք մարմնականքս և հողեղէնքս համաձայնեալ փառաւորեմք զփառաւորեցեալն 'ի ձէնջ: Արդ՝ ո՞վ սուրբ Գաբրիէլ և Միքայէլ մեծ հրեշտակապետք բարձրելոյն, և ամե-

նայն զինուորութիւնք երկնից, որք կայք միշտ ա-
ռաջի աթոռոյ Աստուածութեանն, անդադար
բարեխօս լերուք վասն մեր առ Տէր, վերաբերել
զմեզ զամենեսեան ընդ ձեզ յերկնից արքայու-
թիւնն, և միաձայն բարբառով երգել զփառս։

ՃԱՇՈՒ

Դկ. Ա՛յսօր ուրախացեա՛լ սուրբ ե-
կեղեցի՞ քրիստոսի՛. տօնէ խընդո՛ւ-
թեամբ զտօն մերինն երո՞ւսաղէմի՛.
սրբասաց ձայնի՜ւ փառաւորելո՞վ ըզ
քրիստոս։ Ա՛յսօր համաձայնեա՛լ որ-
դիք սիօնի՞ երկրայնո՛յ, տօնիւ զը-
ւարճանա՛ն որդւոց անդրանկաց վե-
րի՞ն սիօնի՜. սրբասաց ձայ։ Ա՛յսօր
դասք անմարմնո՛ցն երգս առեալ պա-
րե՞ն ընդ մարդկա՜ն զերգըս հոգե-
ւո՛րս յանմահ փեսայի՞ն առագաստ
սրբասաց ձայ։

# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՅՆ ՅԱԿՈԲԱՅ ՄԾԲՆԱՅ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ

Օրհ. Գկ. Յաղթող և սուրբ հայրապետ նմին մեծին մովսիսի. բարձող խաչին պարծանաց ընդդէմ մամարտ հանդիսիւ. ըզքեզ ունիմք բարեխօս առ հայր յերկինս վասն մեր։

Առաքմամբ սուրբ հոգւոյն յանապատէ կոչեցար, առեր պատիւ մեծութեան նմին մեծին յովհաննու, երգակցելով ընդ վերնոցն. ըզքեզ։

Կարող եղեր զօրութեամբ զարմանագործ նշանիւք, նմին մեծին պետրոսի, հովիւ շնորհեալ յաստուծոյ ընտրեալ հօտին քրիստոսի. ըզքեզ։

Ուրախացան զօրք երկնից ընդ քո մեծի ճգնութեան, որ ’ի մարմնի կառուցար նմին վերին զուարթնոցն. ըզքեզ ունիմք։ Բղխմամբ քո

սուրբ արտասուաց կենագործէիր ըզ մեռեալս. նըմա՛ն փրկչին յիսուսի կենագործողին ղազարու. ըզքե՛զ: Այլ մեք ձայնիւ ցնծութեամբ տօ-նեմք զքո սուրբ զյիշատակս. պատ-ուեալ վըկայ քրիստոսի սուրբ հայ-րապետըդ յակոբ. ըզքե՛զ: Յա՛նձն առեր զչարչարանս վասըն նոյեան տապանին, 'ի հրեշտակէն ընկալար զփայտ փրկութեան աշխարհի. ըզ քե՛զ ունիմք:

Հրց. Գյ. Սուրբ ես տէ՛ր և 'ի սուր-բըս հանգուցեալ, բարեբանեալ 'ի վերին զօրաց և 'ի սրբո՛ց քոց. տէր աստըւած հա՛րցըն մերոց: Զարժա-նահաս մահտարաժամ 'ի ցասմանէ քում հրամանի բարձ 'ի մէնջ բա-րեխօսութեամբ և աղօթիւք սրբոյն յակոբայ. տէր աստ: Ի քէն հայ-ցեմք զօգնութիւն ամենասուրբ եր-

րորդութիւն. ծագնեա մեզ 'ի նեղու-
թեան մերում բարեխօսութեամբ
և աղօթիւք սրբոյն յակոբայ. տէր։

է. Ըզատէր օրհնեցէք. գքրիստոս
թագաւորն յիշատակի սորա բարձր
արարէք յաւիտեան։ Որ ընտրեաց
զերանելի զհայրապետն 'ի լուսաւո-
րել զմանկունս սուրբ եկեղեցւոյ.
գքրիստոս թա։ Որ բազկատարած
հայցմամբ խնդրելով 'ի տեառնէ
զողորմութիւն. եւ աղբիւր բժըշ-
կութեան բղխեալ 'ի հայաստան աշ-
խարհի. գքրիս։ Որ 'ի հրանիւթիցն
սպասաւորելով զարհուրեցոյց զթա-
գաւորն, հոմիւն քաջ բանաւոր հօ-
տի, և բըժիշկ ախտացելոց անձանց.
գքրիստոս թա։

Մեծ. Սուրբ զատուած. Տե. յեղ 101։

Ողբ. Երկըրպագեմք առաջի տեառ-
ղական նշխարաց ծընգնաւորին քրիս-

տօսի և պատուական վկային. որ է
պարծանք աշխարհի եւ բարեխօս
վասըն մեր ։ Ըզձըրգնութիւնըս սորա
առ քեզ ունիմք բարեխօս. և ա-
ղաչեմըք սովաւ հրաշագործեալ յերկրի
ըղբժըշկութիւն հիւանդաց. որ է
պար ։ Ցընծութեամբ տօնեսցուք ըզ
յիշատակըս սորա հաւատացեալ ժո-
ղովուրդք 'ի փառս ամենազօր տէ-
րութեանն. որ է պար ։

Տr. Ամոլըք հաւատոյ և պարծանք
սուրբ եկեղեցւոյ. եւ հովիւ քաջըն-
թաց երկնաւոր հօտապետին. յա-
ռաքելական աթոռ նստար երանելի
սուրբ հայրապետ ։ Մարգարիտ լու-
սափայլ և լուսաւորիչ տիեզերաց.
սիւն լուսոյ ուղղութեան կանգնեալ
'ի մէջ հայաստանեայց. յառաքելա-
կան ։ Հողանիւթ բարունակ և բարե-
խօս առ տէր վասըն մեր, բարեբա-

նող բանի՛ն կենա՛ց, և պարծանք ե-
կեղեցւոյ. յառաքելական աթոռ ։
Մկ. Հայրապետ սուրբ և՛ անբիծ և
ընտրեա՛լ յորովայնէ. սքա՛նչելագո՛րծ
վը՛կա՛յ և պարծանք ազգի՛ մարդկան.
առ քրիստոս բարե՛խօսեա՛ վասըն մեր
քո տօ՛նողա՛ցս ։ Հովի՛ւ հոգեւո՛ր բա-
նա՛ւոր հօտի. լուսաւորի՛չ տիեզերա՛ց
սիւն լուսո՛յ կանգնեալ ՚ի մէջ եկե՛-
ղեցւոյ. առ քրիս ։ Հաստատո՛ւթի՛ւն
հաւատոյ պըսա՛կ ՚ի գլուխ եկե՛ղեց-
ւոյ, պայծառ քարոզ տիե՛զերա՛ց և
պարծանք ազգի՛ մարդկան. առ քրիս։
Ի տաճա՛րի քում սը՛րբութեան եր-
կը՛րպագեմք քո նշխարաց. փառաւո-
րե՛մք զօր յիշատակի՛ կատարման քոյ
հանգստեան. առ քրիստոս բա ։

Ժամամուտ

Զհայրապետականն զարդարեցեր աթոռ ՚ի
յերկրի, առաքելական առեր զպատիւ յերկնուստ՝
ծառայ Քրիստոսի, ո՛վ երանելիդ ՚ի հարս սուրբ

Հայրապետ։ Քանզի քո վարդապետութեամբ սեր-մունք բարեպաշտութեան բուսուցին հասկս, ու-րախութեան պտուղ հատուցանելով և հաւատա-ցելոցս փրկութիւն շնորհելով. վասն որոյ բա-րեխօսեա առ Տէր վասն անձանց մերոց։

Ծող. Գկ. Որ յանապատէ կոչեցար յառաքելական աթոռ բանիւ սուրբ յակոբ. բարձրացուցեր զեղջիւր սի-ոնի ճշմարտութեամբ մասամբ նոյեան տապանին։ Որ արդարու-թեամբ և լուսով քո փայլման նոր արեգական. պայծառ քան զարփին վառեալ զօրութեամբ յառնել ՚ի հրաշ պատանւոյն։ Որ միացար սըր-բութեամբ ՚ի լոյսն մաքուր որպէս զանմարմին. զարմացուցեր ըզզօրըս վերինս հիացուցեր զարարածս։ Արդ աղաչեմք ըզքեզ հայրըդ դը-թած և հովիւ բարի. մաղթանօք հայցեա առ տէր վասն եկեղեցւոյ, մինչ անշարժ պահել յաւիտեան։

# ԿԱՐԳ

## ԱՒԱԳ ՏՕՆԻՑ ՔԱՌԻՑ (*)

### ԿԱՆՈՆ

#### ՍՐԲՈՑՆ ԴԱՒԹԻ ՄԱՐԳԱՐԷԻՆ ԵՒ ՅԱԿՈԲԱՑ ԱՌԱՔԵԼՈՑՆ

Օղհ. Դյ. Յաղթող գըտաւ յորհնաբանան երանելին դաւիթ. որ զօրացաւ 'ի վերայ այլազգւոյն, և հաւատով պարտեաց զանօրէնն ըզգողիաթ. զմարգարէն արասցուք բարեխօս առ տէր վասն անձանց մերոց։ Ուսարուք զարդարութիւն բընակիչք երկրի. Նայեցարուք ընդ արդարըն յակոբ. որ հաճոյ եղեւ աստուծոյ վարուքն իւրովք. ըզնա արաս։ Սա եղեւ գլուխ առաքելոց սրբոց. և կոչեցաւ եղբայր տեառն 'ի տանէ դաւթի. ըզնա արաս։

(*) Սոյն Աւագ տօներու նախընթաց երեկոյները նախատօնակ կը լինի անխափան։

Որ երջանիկ լուսովն զուարճանայր մարգարէն դաւիթ. և հոգւովն վերանայր ՚ի կամարըս լուսեղէնս. ըզ: Որ հողանիւթ բնութեամբըն զուգակցեալ ընդ սուրբ հոգւոյն և ազատէր ըզթագաւորն ՚ի դիւական ախտէն. ըզնա: Որ հրաշազարդեալ գըտաւ ՚ի կարգս թագաւորաց. և մասնակից եղև սուրբ առաքելոցն. ըզ:

Հրց. Դյ. Մեղաք յամենայնի և ըզ պատուիրանըս քո ոչ պահեցաք, այլ խոստովանիմք առ քեզ, մի՜ անտես առներ, այլ գըթա ՚ի մեզ աստուած հարցըն մերոց: Վասըն դաւթի սիրելոյ քոյ և յակոբայ արդարոյ աղաչեմք զքեզ, մի՜ անտես առ: Որ նըստիս ՚ի քրովբէս եւ հայիս յանդունդս, յիշեա ողորմութեամբ քով զդաւիթ, և աղօթիւք սրբոյն յակոբայ խընայեա ՚ի մեզ ա:

Է. Օրհնեցէ՛ք ամենայն գործք տեառն զտէր օրհնեցէ՛ք բարձր արարէք զնա յաւիտեան։ Որ ընտրեաց զերանելին ըզդաւիթ յառաջնորդութիւն խորանին, օրհն։ Որ կացոյց զսքանչելին ըզյակոբ պարիսպ շրջապատ եկեղեցւոյ իւրոյ, օրհնեցէ՛ք։

Մեծ. Առաւօտ խաղաղութ. Տե. յէջ 118։

Ող. Անսկիզբն աստուած լոյս ի լուսոյ, որ ծագեցար մեզ եղջիւր փրկութեան ի տանէ դաւթի. աղօթիւք սորա աստուած ողորմեա մեզ։ Անմարմնոց վերնոց թագաւոր յաւիտենից, որ մարմնով երեւեցար յերկրի ի զաւակէ դաւթի. աղօթ։ Յառաջնումն աստուածահայր անուանեցաւ մարգարէն դաւիթ և ի վերջինս եղբայր տեառըն կոչեցաւ ըսքանչելին յակոբ. աղօթիւք սո։

Տէր. Երդուաւ տէր դաւթի ճշմարտութեամբ և ոչ ստեաց նմա, ՚ի պտղոյ որովայնէ նորա նստուցանել ՚ի յաթոռ նորա, օրհնեցէք ըզտէրութիւն նորա ամենայն երկիր: Ծագեաց մեզ տէր զեղջիւր ՚ի դաւիթ. պատրաստեաց ըզճրագ օծելոյ իւրոյ. գովեցէք ըզտէրն: Զյակոբ ընտրեաց իւր տէր ժառանգել նովաւ ըզնոր ժողովուրդ ըզհոգեւորն իսրայէլ. բարեբանեցէք զաստուածութիւն նորա ամե:

Մկ. Օրհնեցէք ըզտէր յօրհնութիւն ՚ի նոր. քանզի ծագեաց մեզ եղջիւր փրկութեան, ՚ի տանէ դաւթի կեցուցանել ըզմեզ կամեցաւ. օրհնեցէք ըզտէր յօրհնութիւն ՚ի նոր: Գաւազան ծաղկեալ յարմատոյն յեսեայ դաւիթ մարգարէն և ՚ի նորին շառաւիղէ ա-

առաքելըն յակոբոս ականատես եւ
սպասաւորք բանին աստուծոյ. օրհ։
Ցեկեղեցիս ծրհնեցէք ըզտէր. որ
երկոքումբք ընտրելովք առաքե-
լաւըն յակոբաւ եւ մարգարէիւըն
դաւթիւ հաստատեաց զհիմունս
սուրբ եկեղեցւոյ. օրհ։

ԺԱՄԱՄՈՒՏ

Տէր որ հիմնեցուցեր զեկեղեցի քո ի վերայ վիմի հաւատոյ եւ կարգեցեր ի սմա առաքեալս և մարգարէս, հովիւս եւ վարդապետս առ ի հաստատութիւն սրբոց, եւ ճշմարտութեամբ վկայից զթշնամին սորա վանեցեր, ի խաղաղութեան զսա պահեա Աստուած որպէս մարդասէր։

Ճաշու. Անսկիզբն Աստուած. Տես յէջ 417։

# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՅՆ ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ՆԱԽԱՎԿԱՅԻՆ

Օրհ. Գկ. Նահատակ բարի քրիստո-
սի եղեր այսօր ի միջի մերում. եւ

մըտեր ՚ի վերնատունըն խորհըրդոյ յաւիտենականին։ Որ ըն՛տրեցար ՚ի դասս երկնաւոր զօրացն պըսակեցար ՚ի թագաւորէն զանթառամ ըզպըսակն, և մկըրտեցար արեամբըդ քով սրբով առաջին վըկայ, քրիստոսի սուրբ ստեփաննոս. նախասարկաւագըդ մեծ։ Մարտեար ընդդէմ թըշնամւոյն. այսօր և գնեցեր արեամբըդ քով զարքայութիւն, ՚ի պարծանս ազգի մարդկան ճգնաւոր քրիստոսի, գոհութիւն երեքսըրբենին, որ ընկալաւ ըզվկայդ իւր զսուրբ ստեփաննոս ՚ի վերին երուսաղէմ։

Որ ըն՛տրեցար ՚ի կոչումն առաքելական քարոզութեանցն արժանաւոր լինելով սուրբ ստեփաննոս. բարեխօսեա առ քրիստոս վասն անձանց մերոց։ Որ խնդրեցեր զթողութիւն

'ի վերայ քո քարաձիգ ժողովոյն
սուրբ ստեփաննոս. և այժըմ վա-
սըն քո ախտամոլորացս աղաչեմ զընդ
աջմէ Հօր նըստեալըն : Որ արժանի
եղեր զմարտիրոսականն առնուլ պը-
սակ նախդ 'ի վըկայս. առ պըսակի-
չըն սըրբոց և վասըն մեր բարեխօս-
եալ :

Դկ. Առաքեալ և նախավըկայ քը-
րիստոսի սուրբ ստեփաննոս. որ ըզ
քարկոծումըն յանձն առեր. և յանմա-
հից բնակարանըն վերափոխեցար.
աղաչեա զաստըւած շնորհել մեզ ըզ
կեանս անվախճան : Տունկ անմահ
իմանալի դրախտին շնորհեցար 'ի
հօրէ, եւ լուսաւորեցար անձա-
ռապէս. այսօր ցընծան դասք հը-
րեշտակացն ընդ քո մեծապայծառ
ճգնութիւնդ. աղաչեա զաստըւած:
Աստուածաստեղծ մարդոյն պըտուղ

ընծայեցար մերձ յանմերձենալի լոյսն.
և հայրենի աւանդութեանն եղեր
ժառանգորդ. աղա: Ճանապարհ
վըկայից յետ քրիստոսի գըտար. եւ
աստուածային փառացն արժանաւոր
եղեր. բանսարկուին գինու.քո վի-
րաւորեցաւ եւ նախաստեղծըն պայ-
ծառացեալ բերկրեցաւ. աղ: Դու-
սակարգեալք և մեք ընդ անմարմնա-
կան բազմութիւնսն. վերահայցեմք
ընդ հրեղէն լեզուացն աղօթանուէր
մաղթանօք հայցեմք 'ի քէն մար-
դասէր վըրկիչ. խնայեա 'ի մեզ
ստեղծոյ մեր և կեանք աշխարհի:

Հրց. Գյ. Ընդ երկնայինն հոգեղի-
նաց դասսն. այսօր տօնեմք ըզյի-
շատակ սրբոյն ստեփաննոսի. բարե-
բանելով ըզքեզ տէր աստուած
հարցըն մերոց: Որ հրեշտակակերպ
տեսլեամբ արփիաբար պատերազմեալ

ըղ քարկո՛ծումըն յանձնէառ. խոստո-
վա՛նելով ըղ քեզ Քրիստոս աստը:
Որ անպարագրելի աստուածութեա-
նըդ տեսող և բարեխօս իւր ուխտա-
ւորացս. այսօր յիշատա՛կաւ սրբո՛յն
ստեփա՛ննոսի. գովեմք ըղ քեզ Քրիս-
տոս աստը:

է. Ըզտէր օրհնեցէք. եւ
բա՛րձր արարէք ըղնա յաւիտեա՛ն: Որ
յերկնա՛յին զօրացըն միշտ օրհնիք Քրիս-
տոս աստը՛ւած. այսօ՛ր յիշատա՛կաւ
սրբո՛յն ստե՛փա՛ննոսի, զտէր օրհն:
Հրաշա՛լի աստուա՛ծաբանութեա՛մբ
սըրբոյն ստեփա՛ննոսի, քահանա՛յք
ընդ վերի՛ն զօրա՛ցն երկնից զՔրի՛ս-
տոս գովե՛ցէ՛ք և բա՛րձր արա:

Մեծ. Աստուածածին երկ. Տե. ջէլ 253:

Ողջ. Գկ. Առա՛քեա 'ի մե՛զ տէ՛ր ըզ
բազո՛ւմ գըթո՛ւթեան քո զողո՛րմո՛ւ-
թիւն. բարեխօսո՛ւթեամբ սրբո՛յ նա-

խաւղըկային քոյ եւ ողորմեա։ Որում
զերկնայինըն բացեր ըզդուռն ցուցա-
նելով զանճառելի զխորհուրդ. սուրբն
աղաչանօք խընայեա 'ի մեզ տէր եւ
ողորմեա։ Որ աղօթանուէր հայցմամբ
զթողութիւն խնդրելով ի քէն անօրէն
սպանողաց իւրոց. սուրբն աղաչանօք։

Տէր ։ Ով երջանիկ ճառագայթ ա-
ռաքելական քարոզութեանցն արժա-
նաւոր լինելով սուրբ ստեփաննոս,
հաստատութիւն 'ի քրիստոսէ հայ-
ցեա սուրբ եկեղեցւոյ։ Որ քոյին
յօժարական համբերութեամբդ ըզ
քարկոծումըն յանձն առեր. շնորհեալ
քեզ յաստուծոյ լինել չարչարակից
քրիստոսի. զի եւ մեզ ուսուցես փա-
ռաւորել սուրբ զերրորդութիւնն։
Աղօթեիր որ քարանձիգըն լինէին 'ի
քեզ նախդ 'ի վըկայս. զի առցես
ըզհատուցումըն բարի յարարչէն ա-

մենե՛ցուն. և ա՛յժմ աղաչե՛մք ըզքեզ
եւ վասըն մե՛ր բա՛րեխօ՛սեա՛ :

Մնկ. Դկ. Նա՛խասարկաւա՛գ և առաջի՛ն մարտիրո՛ս, որ 'ի ք՛րիստոսէ պսակե՛ցար, և յե՛րկնաձե՛մ առագաստին պայծա՛ռացեալ բերկրե՛ցար. աղաչեա՛ զաստո՛ւած շնորհե՛լ մեզ ըզկեա՛նս ա՛նվախճա՛ն]: Որ քո՛յին համբե՛րութեամբդ ըզդրո՛ւնս երկնի՛ց բացեալ տեսե՛ր եւ զո՛րդի ընդ աջմէ՛ հօր. ա՛ղօթէի՛ր 'ի վե՛րայ քո քարանձգո՛ղացն. աղա : Եկե՛ղեցի՛ք արդա՛րոց և ժողո՛վք ուղղափառաց. այսօ՛ր ըզյիշատա՛կըս քո տօնե՛մք և արտասուօ՛ք հա՛յցեմք 'ի քէն ճը՛շմարիտ վըկայ քրիստո՛սի. աղա :

ԺԱՄԱՄՈՒՏ

Ցնծա՛ այսօր ցնծա՛ և զուարճացիր կաթուղիկէ եկեղեցի սուրբ, յիշատակաւ սրբոյն Ստեփաննոսի Նախավկային Քրիստոսի վկայեցելոյ

հօր։ Որ աղօթիւք բանայր զերկինս զոր փակեաց Ադամ, և հրեշտակակերպ տեսլեամբ տեսանէր զկերպարանն հօր ի կերպի Ադամայ նստեալ ի յաթոռ փառաց։ Որ զբազմութիւն քարանցն որպէս զծաղիկս հաւաքելով՝ բոլորէր պսակս փոխանակ փշոցն եւ եղեգանն։ Եւ զմարտիրոսական արիւնն իւր խառնէր ընդ փրկական արեանն Քրիստոսի հոսեցելոյն ի կողէն։ Վասն որոյ՝ գերազանցեալ ի փառս առաւել քան զամենայն սուրբս. հայցէ և վասն մեր ի վերնատուողէն զպարգեւս կենաց անվախճանից եւ զմեծ ողորմութիւն։

Յորովայնէ ընտրեալ սուրբն Ստեփաննոս. յորովայնէ ընտրեալ սուրբն Ստեփաննոս. վկայ ճշմարիտ առաքելական քարոզութեանցն. որ ի վերայ անօրէն քարաձգողացն աղօթէր առ Քրիստոս Աստուածդ ասելով. մի համարիր սոցա զայս մեղս։ Արդ՝ ի ձեռն սորին բարեխօսութեանն շնորհեա մեզ Տէր ըզ մեծ քո ողորմութիւն։

Ծաղ. Դկ. Յընծայ այսօր եկեղեցի աստուծոյ, զքո մայրելչմպէս տօնէ զյիշատակս ո՛վ սուրբ ստեփաննոս, մեծ եւ պատուական անուանիդ ի վերկայս, աղաչեաւ զաստուածշը-

նորհել մեզ ըզկեանս անվախճան։ Նախաշաւիղ բարեաց ամենայն աշխարհի և լուսազարդ ճանապարհացն եղեր ժառանգորդ ով սուրբ ստեփաննոս • մեծ։ Աստուածային զինու վառեցար սուրբ հոգւոյն • տեսանելով յերկինս հայրենի փառօք զորդին աստուծոյ ով սուրբ ստեփ։

## ԿԱՆՈՆ

### ՍՐԲՈՑ ԱՌԱՔԵԼՈՑՆ ՊԵՏՐՈՍԻ ԵՒ ՊՕՂՈՍԻ

Օրհ. Դշ. Ցընծայ այսօր եկեղեցի աստուծոյ յիշատակաւ սուրբ առաքելոցն, հաստատեալ 'ի վերայ վիմի հաւատոյ զարդարեալ 'ի փառս մարմնացելոյ բանին։ Որ զէութիւն անճառելոյ միածնին յայտնութեամբ հօր 'ի վերուստ դաւանեալ • և ե-

րանակին արժանացեալ շնորհի,
վէմ անուանելի ՚ի դրանց դըժոխոց։
Որ անմարմնոց դասուց հրեղինաց
հողեղէն բնութեամբ գերազանց-
եալ. եւ բարձրացեալ ՚ի յերկնային
խորանն, անճառ բանին զարժա-
նաւորեալ։

Որ գերագոյն ընտրելոց առաքե-
լոցըն դասու. անուանեցեր լինել
զերանելին ըզպետրոս, զորս սուրբ
հաւատոյ հիմն եկեղեցւոյ։ Որ յա-
ռաջագոյն կոչմամբ առաքեցեր զա-
նօթն ընտրութեան. յայտնելով
աշխարհի զանճառ տնօրէնութեան
քո զխորհուրդ յօրհնաբանութիւն
կոչել զհեթանոսս։ Որ երկոքումբք
ընտրելովք լուսաւորչօքն աշխար-
հի հաստատեցեր զեկեղեցի քո
քրիստոս. մաղթանօք սոցա խը-
նայեա ՚ի մեզ։

Հրց. Դյ. Որ խոստացար տալ ըզփա-

կանս արքայութեան երկնից երանե՛լ-
ւոյն պետրոսի, որ հրաւիրեաց ըզմեզ
՚ի յոյս կենացըն յաւիտենից. աղա-
չանօք սորա կեցո զմե՛զ տէ՛ր աստը-
ւած հայրցըն մերոց։ Որ ընտրեցեր
՚ի մարդկանէ հաւատարիմ սուրբ զա-
ռաքեալըն պօղոս. որոշելով յաւե-
տարանըն լինել քեզ խոստովա-
նող. աղաչանօք սորա կե։ Փակողըն
արքայութեան երկնից սուրբ առա-
քեալըն պետրոս, արութեամբ
ժուժկալեալ քեզ խաչակցեցաւ. ա։

է. Ըզտէր օրհնեցէք բարձր արա-
րէք յաղթողական ձայնիւ ըզբնակ-
եալն ՚ի մէջ սրբոց։ Որ ընտրեաց
զերանելի առաքեալսն ամոլըք հա-
ւատոյ սիւնք եկեղեցւոյ. ՚ի տիեզե-
րական ՚ի հրապարակին զդատողական
աթոռսըն շնորհելով. բարձր արա-
րէք։ Նըմանեալ աղաւնւոյ արծաթա-

պատ Թեւօքն 'ի գոյն ոսկւոյ ճշմա-
րիտ սուրբ հոգին. Եւ լուսագործ
փայլմամբ փարէր ըզնորքօք. բարձ:

Մեծ. Աստուածածին գերագոյն
երկնից ցուցար խորան և առագաստ
քանզի ծագեալ, լոյսն 'ի Հօրէ ընու-
Թեանց էից անտանելին պարագրե-
ցաւ 'ի քում յորովայնի. Հոգեւոր
երգով ըզքեզ միշտ մեծացուցա-
նեմք: Դուռըն փակեալ զքեզ եզե-
կիէլ յառաջագոյն ծանոյց կոյս ա-
նարատ. ընդ որ եմուտ անտես
յէից բանն անմարմին որ 'ի Հօրէ
և ել մարմնով անխախտելի մնալով
կուսուԹեանդ. Հոգեւոր եր: Վե-
րափոխեալ զքեզ 'ի յերկնային խո-
րանսն այսօր որդին քո միածին.
ուստի և դասք առաքելոցն եւ ի-
մաստուն սուրբ կուսանացըն միաձայ-
նելով գովէին ըզքեզ մայր անհարս-

նացեալ. հոգեւոր երգով ըզքեզ:

Ու. Ամոլըք հաւատոյ այսօր փայլին հայր սուրբ ՚ի քո սուրբ եկեղեցւոջ. մարդասէր փրկիչ տօնողացս ողորմեա: Բարեխօսութեամբ պետրոսի և պօղոսի քո սուրբ առաքելոցն. մարդասէր փրկիչ տօ: Լուսաւորեալք ՚ի սոցա դպրութենէս փառաւորեմք սուրբ զերրորդութիւնն. երկաքանչիւրոցս աղօթիւք տօնողացս ողորմեա:

Տր. Երանելի սուրբ առաքեալքն որպէս զարեգակն ծագեցան ՚ի յերկրի, արձակելով ըզճառագայթս ընդ տիեզերս, լուսաւորեցին զաշխարհս ամենայն: Ի մերմէ ՚ի հողեղէն բնութենէս չարչարեցան վասըն քրիստոսի. եղեն լուսատուք տիեզերաց. և հրաւիրեցին զերկիրս ՚ի յերկինս: Զարչարեցան վասըն քր-

րիստոսի զնա արարին իւրեանց յոյս, հեղին զարիւնս իւրեանց 'ի յերկրի, եւ պսակեցան յանմահ արքայէն ։

Մկ. Սփ. Որ արփիահրաշ լուսոյ ծագմամբ պայծառացոյց ըզտիեզերս անճառապէս. յոյսն որ 'ի հօրէ առաքեցաւ, առաքելական քարոզութեամբ սըրբոյն պետրոսի. հրաւիրելով 'ի լոյսն անըստուեր ։ Որ 'ի հեղձական մեղաց ծովէս վերաբերեաց ըզհոգեղէն բնութիւնս 'ի կեանս. բանն որ 'ի յերկրի երեւեցաւ. ուռկանաւ աւետարանի սըրբոյն պետրոսի. հրա ։ Որ յառաջ գուշակելով մահուն իւրոյ լինել կըցորդ արեամբ խաչին. գառն որ եբարձ ըզմեղս մեր. ըմպել զբաժակ չարչարան-

նաց սրբոյն պետրոսի. ժառան-
լով ընդկեանս անվախճան։

ԺԱՄԱՄՈՒՏ

Առաքեալք եւ վկայք Քրիստոսի Աստուծոյ ա-
մենակալ հոգւոյն զօրութեամբն զամենեսեան
յընդհանուր որդեգրութիւն կենաց կոչելով. մի-
անական սուրբ Երրորդութեանն յորդորեցին
երգել զփառս 'ի յաւիտեանս. ամէն։

«Ճաշոց». Ամոլքք հաւատոյ այ'. Տե՛ս յէջ 431։

# ԿԱՆՈՆ

## ՍՐԲՈՑՆ ՈՐԴԻՈՑՆ ՈՐՈՏՄԱՆ

Օրհ. Դկ. Որ էն յէութեան որդի
միշտ յէէն անեզանելի ծընունդ
հայրական. զոր 'ի վերուստ հըն-
չեցին որդիք որոտման. և յայտ-
նեցին որդւոց մարդկան զծածկա-
պէս խորհուրդ։ Բանն անըսկիզբն
'ի կուսէն սկըզբնաւորեալ 'ի յերկիր
մարմնով երեւեցաւ. զոր տեսին

քարոզք բանին ճշմարտութեան. և
ծանուցին տիեզերաց աստուած և
մարդ: Իսկապէս բանն աստուած մի֊
ացաւ 'ի մարմնի անփոփոխ գոլով
յէութեան. որում եղեն ակա֊
նատես որդիքն որոտման. և ընդ հա֊
նուր քարոզեցին զբանն մարմին
եղեալ:

Որ անմարմին 'ի հօրէ մարմնա֊
ցար 'ի կուսէն թանձրացեալ բանդ
անըմբռնելի. զոր 'ի մարմնի շօ֊
շափեցին որդիքն որոտման. և հնչե֊
ցին ընդ տիեզերս զաւետիս կե֊
նաց: Որ զանտեսդ յէից զոյսդ
անտանելի պարագրեալ մարմնով
ծածկեցեր. զոր 'ի լերինն ար֊
տափայլեալ տեսին որդիքն որոտման
եւ մաքրեցան անճառ տեսլեամբ
գերապանծ լուսոյն: Որ կենարար
բանիւ քո անմահացեալք և մահու

եղեն գերազանց. յանձն առին ըմպել զբաժակ չարչարանաց ընդ քեզ. զի ընկալցին 'ի քէն ըզփառս
անվախճան կենացն ։

Հրց. Ո՛ր զամենայնն յօրինչէ ա-րարեր եւ ըստեղծեր ըզմարդն 'ի յանմահութեան 'ի պատկեր աստ-ուածութեանըդ քո. ըզքեզ օրհնեմք աստըուած հարցըն մերոց ։ Ո՛ր զանկեալն 'ի մահ պատրանօք բան-սարկուին. կանգներ 'ի փառս առաջին գալըստեամբըդ քո յաշ-խարհս. ըզքեզ օրհ ։ Ո՛ր կոչեցեր ըզ տիեզերս 'ի հաւատըս ճշմարիտս ընտ-րելովք քո առաքելովք. և ցուցեր աւետարանիչ զօրդիսն որոտման. ըզ
քեզ օրհ ։

Գ. Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան ։ Ո՛ր ըստ կամաւոր յօժարութեան իւրեանց

զօրացոյց սուրբ զառաքեալսն. եւ
հրաւիրեաց յերկնից արքայութեան
օրհնեն ։ Ո՞ր ընկալաւ ՚ի կեանս անա-
պականըս զերջանիկ սուրբ զառաք-
եալսն. եւ դասեցոյց ՚ի խորանըս լու-
սեղէնս. օրհնեն ։

Մեծ. Աստուածածին ամպ. Տե՛ս յէջ 372.

Ողջ. Որդիքն որոտման որք ՚ի վե-
րուստ հնչեցին ըղբանըդ կենաց
ծագեալ ՚ի հօրէ. եւ ըզտիեզերս հը-
րաւիրեցին յօրհնաբանութիւն սուրբ
երրորդութեանդ. բարեխօսութեամբ
սոցա ողորմեա մեզ որդի աստուա-
ծոյ ։ Բանըդ մարմնացար ՚ի կուսէն
քարոզքըն տեսին. աւետարանեցին
յաշխարհի զգալուստ միածնիդ.
բարեխօսու ։ Զչարչարանս և ըզմահ
ընդ քեզ յանձն առին. հաղորդիլ
փառացդ քոց տէր ՚ի քում գալըստ-
եանդ. բարեխօս ։

Տր. Հոգի իմ կանխէ առ քեզ աս-
տուած. որ ծագեցեր ըզլոյս հրամանի
քո յաշխարհս ընտրելովք քո առա-
քելովք. փառըն սոցա կեցո ըզմեզ:
Արցեալ շնորհօք հոգւոյդ սրբոյ եւ
բարձրացեալ 'ի վերայ խորանաց երկ-
նից. տեղեկացեալ եղեն անճառ է-
ութեան միածնի քո. աւետարանե-
ցին յաշխարհի. փառըն սոցա կե:
Կարողք եղեն ամենայն զօրութեամբ
ընդունել ըզբաժակ չարչարանաց մի-
ածնի քո որդիքն որոտման. և ընդ-
մէջ դասիլ, փառըն սոցա կե:

Մղկ. Ատ. Որ յանըստուեր 'ի լուսոյն
ընկալեալ ըզծագումն շնորհաց. ով
Երանելիք տէր յովհաննէս, և հրա-
շագործ գրիգոր յերջանիկ դասս ա-
ռաքելոցն. հայցեա 'ի տեառնէ ըզ
թողութիւն յանցանաց: Որ փարե-
ցար ըզսարսափելի պարանոցաւն զան-

մատոյց զլուսոյն և մաքրեցար որ-
պէս զոսկի ՚ի հուր․ լուսազարդ-
եալ երևեցար ՚ի մէջ սրբոց որ-
պէս յաստեղս արեգակն․ հայցեա։
Որ ՚ի կենդանի աղբերէն արբեր
ըզբըղխումըն շնորհաց, եւ ՚ի թևս
հոգւոյն հասեր յանիմանալին․ ա-
ւետարանեցեր մըշտընջենաւորակից
հօր զէակից որդին․ հայցեա ի։

Ձկնի Սաղմ. ստողոգի ձայնիւ

Դարձ անձն իմ ՚ի հանգիստ քո
զի տէր օգնեաց քեզ։
Սիրեցի զի լուիցէ տէր ըզձայն աղօ-
թից իմոց․ զի խոնարհեցոյց զունկն
իւր առ իս․ և ես յաւուրս իմ կար-
դացի առ նա։
Շրջեցան զինեւ երկունք մահու եւ
վիշտք դժոխոց գըտին զիս։
Զնեղութիւն և զանձկութիւն գըտի․
և զանուն տեառըն կարդացի։

Ո՜ տէր փրկեա զանձն իմ ողորմած
աստուած մեր․ ողորմի՛ եւ պահէ ըզ
տը՛ղայս տէր։
Ե՛ս խոնարհ եղէ՝ և տէր կեցո՛յց զիս։
Դա՛րձ անձն իմ ՚ի հանգիստ քո՛, զի
տէր կոչեա՛ց զքեզ։

ԺԱՄԱՄՈՒՏ

Այսօր ահաւոր ձայնք որոտման հնչեցին յերկնից ՚ի յերկիր, կոչելով յորդեգրութիւն զմեզ վերնոյն Սիօնի, հաստատութիւնքն հաւատոյ եւ պարծանքն Եկեղեցւոյ, որք ցօղով արեան իւրանց մաքրեցին զտիեզերս յանօրէն կռապաշտութեանց․ և միշտ հայցեն ՚ի Քրիստոսէ զքաւութիւն տօնողացս անուանց իւրեանց։ Արդ՝ մաղթանօք սոցա Տէր՝ խնայեա ՚ի փրկեալ քո ժողովուրդս, որ միայնդ ես մարդասէր։

Ծաշու «Որդիքն որոտման»․ Տես յէջ 436։

Շարականք հանգստեան ըստ ութն ձայնից

Այ․ Զհոգիս ծառայից քոց։ Տես յէջ 266։
Մեծ․ Յարուցելոյն ի մեռե։ Տես յէջ 267։
Խչ․ Սուրբ խաչն օգնական։ Տես յէջ 373։
Այժմ և միշտ՝։

Որք հազորդեցան մարմնոյ եւ արեան քո տէր, հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո քրիստոս աստուած. քանզի գինք սուրբ արեան քո են:

Ալէլու". ալէլու": Տէր ո՞վ կացցէ 'ի խորանի քում, կամ ո՞վ բնակեսցի 'ի լերան սուրբ քո:
Որ գնայ ամբիծ, գործէ զարդարութիւն. խօսի զճշմարտութիւն 'ի սրտի իւրում,

Աւետ. ալղ. երգ Ռահ գործ. Տե. յէջ 41:

---

Ակ. Արարիչ աստուած: Ի-ր ատր. յէջ 304:

Ալէլու". ալէ: Բարձր առնեմ զքեզ Տէր զի ընկալար զիս և ո՛չ ուրախ արարեր զթշնամիս իմ յիս:

Տէր Աստուած իմ կարդացի առ քեզ և բժշկեցեր զիս. Տէր հաներ 'ի դժոխոց զանձն իմ և փրկեցեր զիս յայնցանէ որք իջանեն 'ի գուբ:

Աւետ. ալղ. երգ

Ճանապարհ մոլորելոց: Տե. յէջ 39:

---

Բյ. Ո՛ր կոչեցեր առ քեզ տէր ըզտիեզերս ամենայն, ընկալ ըզմեր ըզննջեցեալսն, 'ի գոգ հայրապետին աբրահամու, ողորմած տէր փրկիչ եւ

բարերա՛ր ։ Ո՛ր թողո՛ւթեանց ես տը-
ւող աստը՛ւա՛ծ, թո՛ղ ըզմեղըս մեր
ննջեցելոցըն կա՛րող ամենայնի և հը-
զօր․ ո՛ղորմա՛ծ ։ Ո՛ր լուսատու ես տի-
ե՛զերաց քրի՛ստոս աստըւած լուսա-
ւորեա՛ եւ ըզմեր ը՛զննջեցեալըն լո՛ւ-
սով երա՛նաւէտ զըւարթնոցն․ ո՛ղոր ։

Մեծ․ Զքեզ հայր յառաջ ։ Տե․ յէջ 162 ։

Խչ․ Այսօր խնդրի պատ ։ Տե․ յէջ 393 ։

Այժմ և միշտ

Յո՛րժամ առնե՛ս հատուցո՛ւմըն
տէր և սուրբըք քո՛ պա՛րծե՛ցին 'ի
քեզ և մե՛զ շնորհեսցե՛ս փրկի՛չ կա՛լ
'ի յա՛ջմէ՛ քումմէ՛ ։

Ալէլու" . ալէ" ։ Աստուած յանուան քում կեցո
զիս և 'ի զօրութեան քում իրաւ արա ինձ ։
Աստուած լուր աղօթից իմոց, ունկնդիր բա-
նից բերանոյ իմոյ ։

Աւետ․ տղ․ երգ․

Ժողովեա՛լքս 'ի հրաժա՛ ։ Տե․ յէջ 37 ։

Բկ. Քե՛զ վայելէ մատուցած օրհնո՛ւ-
թիւն, որ յանմատոյց ա՛թոռ անմա՛-
հից փառա՛բանիս 'ի բարձունս, զնըն-
ջեցեա՛լըն յանո՛ւն քո ը՛նկալ յերկ-
նա՛յին քո սուրբ առա՛գաստ. որ մի-
ա՛յնդ ե՛ս մարդասէ՛ր: Ո՛ր ունի՛ս
իշխանութի՛ւն մահու և կե՛նաց. յիշ-
եա՛ զհոգիս ննջեցելոց մերո՛ց, և
հանգո՛ ընդ սուրբըս քո՛ 'ի խորան
քում սիրո՛ղաց. որ մի: Ո՛ր յամենայ-
նի՛ ես օրհնեա՛լ տէր, ա՛րժա՛նի՛
արա զծառա՛յս քո՛ վերըստի՛ն նորոգ-
ման. 'ի լսե՛լ ըզձայն աստուածային
փո՛ղոյն ընդ առա՛ջ ելանել քոց փա՛-
ռացդ. որ մի:

Մեծ. Սիւն լուսոյ և ամպ. Տե. յէջ 127.

Խղ. Եկա՛յք ժողո՛վուրդք 'ի տաճարի
փառաց քրի՛ստո՛սի՛, տուք ամենեք-
եա՛ն օրհնութի՛ւն 'ի բարձո՛ւնս:

Քանզի թագաւո՛րըն քրիստո՜ս պըսա՛կ-
եաց ըզսա՛ ըսքանչե՛լի փառօ՛ք ի՛ւ-
րո՛վք, տուք ամենե։

Փառք Հօր և՛։

Ի՛ սմա և զօ՛րըք հրե՛շտակաց դասա՛-
ւո՛րեա՛լ տօ՛նե՛ն տեա՛ռն, տուք ա-
մենեքեա՛ն օրհ։

Այժմ և միշտ՛։

Ո՛ր մարմնացա՛ր վա՛սն մեր աղաչա-
նօ՛ք աստուածածնին, քրի՛ստոս՝ յիշ-
եա՛ զնընջեցեալսն 'ի սուրբ ա՛նունըդ
քո՛, և հանգո՛ զհոգի՛ս նոցա՛ ընդ սո՛ւր-
բըս քո՛։

Ալէլու՛. այէ՛։ Աստուած ողորմեա մեզ եւ օրհնեա զմեզ, երեւեցո՛ զերեսս քո 'ի մեզ և ողորմեա մեզ։

Ծանաչել յերկրի զճանապարհս քո, յազինս ամենայն զփրկութիւնս քո։

Աւետ. տղա երգ

Ա՛ստուած անեղ անժա. Տէ. ժԷ 34.

---

Գյ. Հա՛յր բա՛րեգութ որ գըթա՛ցար
'ի յազգս ո՛րդւոց մարդկան. առաքե-

ցե՛ր ըզմիածի՛նդ ՚ի՞ փրկութիւն, յիշ-
եա՛՞ զհոգիս ննջեցե՛լոց մերո՞ց և հան-
գո ընդ սուրբս քո՛ ։ Ո՛րդի՛դ միածի՛ն
որ յա՛րեարդ ՚ի մե՛ռելոց. ՚ի միւսան-
գա՛մ գալստեանըն քո՞ յա՛րութիւն
մեզ խոստացար. յիշ ։ Հոգի՛դ ճշմա-
րիտ մըխի՛թարիչ սրգա՛ւորաց. աղա-
չանօ՛ք սուրբ աստուածածնին և ամե-
նա՞յն քո՛ց սրբոց յիշ ։

Մնծ. Աստուածածին երկն. Տն. յէջ 253 ։

Խչ. Փայտ կենաց որ փոխ. Տն. յէջ 384 ։

Այժմ և միշտ ։

Ի խորան քում սի՛րողա՛ց հա՞նգուս-
ցես ըզծա՛ռա՛յս քո՛, և զհոգի՛ս նո՛ցա՞
դա՛սեսցես ընդ սուրբըս քո. զի՛ մի
դարձցի՛ տնանկն՝ ա՛մաչեցեալ յա՛-
ւո՛ւրն ահեղ ա՛տենի՛ն ։

Ալէլու՛. ալէ՛ ։ Հանեցար Տէր ընդ երկիր քո
և դարձուցեր զգերութիւն Յակոբայ ։
Թողեր զանիրաւութիւն ժողովրդեան քոյ եւ

ծածկեցեր զամենայն մեղս նոցա։

Աւետ. տղա երգ.

Սաւրսափին տարերքը. Տե. յէջ 42։

---

Գկ. Լոյս ՚ի լուսոյ զմեզ լուսաւոր-եա. որ փառօք հօր հանդերձեալ ես գալ ՚ի դատել զերկիր, արժանաւոր-եա և ըզմեր ըզնընջեցեալսն անձառ խոստմանց քոց ընդ սուրբըս քո։ Հօր և հոգւոյ համագոյակից ՚ի տի-եզերական ահեղ ատենին. արժա։ Երկնի և երկրի արդար դատաւոր. յորժամ հատուցանես ըստ գործոց իւրաքանչիւրոց. արժանաւո։

Մեծ. Ամենազովելի և բան. Տե. յէջ 122։

Խւ. Յաղթող և զնոր օրհն. Տե. յէջ 379։

Այժմ և միշտ"։

Ըզգինս արեան քո յիշեա կենագոր-ծող աշխարհի, և հանգստեան արժա-նաւորեա յերուսաղէմըն վերին։

Ալէլու". ալէ"։ Տէր լուր աղօթից իմոց, աղա-

ղակ իմ առ քեզ եկեսցէ, և մի դարձուցաներ
զերեսս քո յինէն։

Յաւուր նեղութեան իմոյ խոնարհեցո առ իս
զունկն քո, յորում աւուր կարդամ առ քեզ.
վաղվաղակի լուր ինձ։

Աւետ. տղս երգ

## Մե՛րով բնութեամբ. Տե. յեղ 39։

Դյ. Գրլթա տէ՛ր 'ի հոգի՛ս մեր
ննջեցելոց և յիշեա՛ ողորմու-
թեամբ, քանզի գի՛նք սուրբ ար-
եան քո են, 'ի յորժամ հրաշալի՛
ձայնի՛ւ փողոյն յառնեն մեռեալքն
և կա՛ն առաջի՛ ահաւոր բեմի՛ն։
Զընկղմեալքս յահագի՛ն մեղաց
ծովուս մարեցո 'ի գեհենոյն, ըզ
դաւանողըս սուրբ երրորդութեանդ.
'ի յորժամ։ Զլուսաւորեալքս ծնըն-
դեամբ սուրբ աւազանին միւ բար-
կութեամբ խրատեր, և մի սրտմը-
տութեամբըդ քո վճանդիմաներ.
'ի յորժամ։

Մեծ. Աստուածածին գերա. Տե. յեջ 430։

Խչ. Գաւազան զօրութեան ըզ խաչ քո ետուր մեզ քրիստոս. և սովաւ յաղթեսցուք անօրէն թշնամւոյն։ Սա է աթոռ տէրութեան և ՚ի սմա է բազմեալ քրիստոս որդին աստուծոյ. և սո։ Սա է զէն յաղթութեան սրեալ արեամբ որդւոյն աստուծոյ, և սո։ Սա է սեղան սըրբութեան և ՚ի սմա է պատարագեալ քրիստոս գառն աստուծոյ, եւ սովաւ յաղթեսցուք։

Փառք Հօր եւ Որդւոյ։

Սա է կարապետ յաւուր գալստեան փրկչին. և պսակ պարծանաց հաւատացելոց. և սովաւ։

Այժմ եւ միշտ։

Ընդ հոգւոցն արդարոց կատարելոց, և զհոգիս ծառայից քոց հանգո ընդ սուրբս քո մարդասէր։

Ալէ՛. ալէլու՛ւ։ Մերձեցին խնդրուածք իմ առաջի քո Տէր, ըստ բանի քում իմաստուն արա զիս։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր, եւ բանիւ քով փրկեա զիս։

Աւետ. ող. երգ

Խաւար մեղաց հալածեա. Տն. յել 38։

---

Դկ. Հայր անսկիզբն բարեխնամ մարդասէր որ ստեղծիչդ ես հոգւոց և մարմնոց, յիշեա զննջեցեալսն մեր և հանգո ընդ սուրբս քո։ Որդիդ միածին՝ որ գթածդ ես առ ամենեսեան և խաչիւ և արեամբ գնեցեր ըզքո ժողովուրդս, յիշեա ըզգինս արեան քո տէր և հանգո ընդ սուրբս քո. Հոգիդ ճշմարիտ, որ աղբիւրդ ես անսպառելի. և լցուցիչ ամենայն բարութեանց. յիշեա զննջեցեալսն մեր և հան։

Մնձ. Ըզքեզ աստուածած. Տն. յել 82։

Խչ. Սուրբ զխաչ քո շնորհ. Տն. յել 178։

Փառք Հօր. Այժմ և՛՛։ Տե. յեղ 179։

Ալէլու՛՛. Ալէ՛՛։ Ի խորոց կարդացի առ քեզ Տէր, Տէր, լուր ձայնի իմում։
Եղիցին ականջք քո 'ի լսել զձայն աղօթից իմոց։

Աւետ. ողո. երգ

Դաւանիմք ընդ ոլորմբէից. Տե.. յեղ 35

---

# ԿԱՐԳ

## ՑՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՆՆՋԵՑԵԼՈՑ

Դատեա տէր զայնոսիկ, ոյք։ Տե. յեղ 16։

Ես ասացի, 'ի մերանա՛լ յինէն աւուրց իմոց տէ՛՛՛ր օ՛գնեա՛ ինձ միա՛յն մա՛րդասէ՛ր։ Զչարչարա՛նս խաչի՛ և մահուանձըն ա՛ռեր տէ՛՛ր, օգ։ Բարեխօսութեա՛մբ սուրբ աստուածածնի և մի՛շտ կուսի. տէ՛՛ր, օ՛գ։

Ամե՛նասուրբ երրորդութեանդ երկրպագե՛ն զօրք ե՛րկնայինք, եւ

ստեղծուածք անմրատ ձեռամբդ փա-
ռաւորեալ զտէրութիւնդ քո հա-
նապազ։ Ամենազօր խաչի քո տէր
երկրպագեսցուք, որով բարձեր ըզ
դատակնիք մահու քո արարածոցս փա։
Ամենօրհնեալ աստուածամայր մարի-
ամ. քերովբէական աթոռ արարչին
մերոյ, տընօրէնութեան, զոր երա-
նեն ամենայն ազինք հանապազ։

Բանն որ ընդ հօր էութ. Տե․ յէջ 150։

Ցիսուս միածինն անմահու. Տե․ յէջ 177։

Տէր որ 'ի մէջ յերինն աղբերա-
ցուցեր զջուրն 'ի վիմէն։ Տէր 'ի
սըրտէ իմմէ հան ինձ արտասուս ա-
պաշխարութեան։ Զի կեցից և ա-
պաշխարութեամբ ապրեցայց 'ի հան-
դերձեալ քոց դատաստանաց։

Է անուն տեառն օրհնեալ յայ-
սըմհետէ մինչեւ յաւիտեան։ Եւ

եղիցի անուն տեառն օրհնեալ յայ-
սըմհետէ մին ։ փառաւորեալ անուն
տեառն օրհնեալ, յայսմհետէ մին ։

Ո՞վ կոչեցե՜ր ըզհեռացեալսն 'ի
հարսանիս քո միածնին ըմպել զբա-
ժակն իմաստութեան 'ի ձեռն սրբոյն
գրիգորի . բարեխօսութեամբ սորա
ողորմեա մեզ աստուած ։ Ո՞վ գե-
րագո՜յն քան ըզբնութիւն չարչարա-
նօք քո ընտրելոյն , դարձուցեր զմո-
լորեալսն 'ի գիտութիւն ճըշմարտու-
թեան , բարե ։ Ո՞վ 'ի վիրա՜պն ան-
դընդային ջաղխեր նովաւ զգլուխ
վիշապին , 'ի գբի ներքնումն իջմամբ
նորին բարձրացուցեր զմեզ 'ի յեր-
կինս . բարե ։

Յարեար երևեցար առաքելոցն և
մեզ փրկիչ ողորմեա ։ Քեզ քրիս-
տոսի թագաւորիդ անմահի . երկիր-
պագանեմք և զյարութիւնդ քո փա-

ռաւորե՛մք։ Փա՛ռըք փրկչի՛դ և մի-
ածնի՛դ անմահի, փը՛րկեա՛ զժողո-
վուրդս քո՛. զոր ըստացա՛ր պատուա-
կա՛ն արեա՛մբըն՛դ քո՛վ սրբո՛վ։

Ա՛ղբիւր կենա՛ց բաշխող շնորհա՛ց
հո՛գի՛դ իջեա՛լ ՚ի բարձանց. զանապա-
կա՛ն պարգեւը՛ս քո՛ բա՛ժա՛նեցե՛ր
յառաքելո՛ն։ Ո՛ր ՚ի վերա՛յ ջուրցըն
գոլո՛վ ստե՛ղծա՛նէի՛ր զարարածս. իջ-
եա՛լ ՚ի ջո՛ւրս աւազանի՛ն ծնա՛նի՛ս
որդի՛ս աստուծո՛յ։ Ո՛ր զարգարեա՛լ
նորոգես մի՛շտ ըղնո՛ր քո զե՛կեղեցի.
պէս պէս շնորհա՛ց քոց պա՛րգեւօ՛ք
փայլի՛ն մանկո՛ւնըք սորա։

Իքեզ եմք ապաւինեալ. Տե. յէջ 178։
Էջ միածինն ՚ի հօրէ և. Տե. յէջ 318.

Այժմ եւ միշտ։

Ը՛նդ սուրբըս քո դասե՛ա՛, և ընդ
ա՛րդա՛րոց պըսակեա. ՚ի տեղի՛ անկե-
լո՛ց հրե՛շտակաց ըղնը՛ նջեցեալսըն

մեր կարգաւորեա. որ ողորմածդ ես յամենայնի:

Քարոզ «Վասն 'ի վերուստ» տե. յէջ 52.
Աղօթք. Գիրք և այլ.

## ՍԱՂՄՈՍ

Ալէ. ալէ. Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի, ձայնիւ իմով առ Աստուած և նայեցաւ առ իս:

Աւետարան: Աղ. Քարոզ. «Վասն ուղղելոյ. Տե. յէջ 53:

Աղօթք և այլ. Երգ.

Նըստեալ կանանցն իւղա. Տե. յէջ 40:

Արարիչ և մարդասէր. Տե. յէջ 44.

---

## ԵԿԵՂԵՑԻՈՅ ԿԱՐԳ ՆՆՋԵՑԵԼՈՑ

Գկ. Բանդ աստուած որ 'ի ծոց հօր վասն մերոյ փրկութեան 'իյերկնից խոնարհեցար, զի զմեզ նորոգեսցես 'ի կեանս. աստըւած հարցըն մերոց: Որ հանդերձեալ ես գալ փառօք հօր զարթուցանել ըզննջեցեալսըն 'ի սուրբ անունըդ քո. նորոգեա

և ըզմեր նընջեցեալսն. սատ: Անմա-
հութեանց տըւող քրիստոս և պար-
գեւիչ կենդանութեան, 'ի միւսան-
գամ գալստեանն և յաշխարհական
ատենին թողութիւն շնորհեա մեր
նընջեցելոցն. սատուած: Որ նստի
ընդ աջմէ հօր ծընողի իւրոյ և մար-
դասիրապէս խընամէ զարարածս,
բարձր արարէք ըզնա յաւիտեան:
Որ զհողացեալ բնութիւն մարդկան
նորոգէ իւր աստուածութեամբն,
և կենագործէ 'ի կեանս անմահ. բարձ:

Լեառըն վիմածին, աղբիւր յորդա-
ռատ, բարունակ ծաղկեալ. այգի վա-
յելուչ, սրովբէ հողեղէն. բաբուն-
ոյ բանին, տուն տնօրէնութեան,
տաղաւար հոգւոյն, առ ծնեալն ի
քէն միշտ բարեխօսեա անդադար
հայցմամբ շնորհել զթողութիւն մեր
նըննջեցելոցն: Փափկութեան դրախ-

տի՛ն բացո՛ղ բանալի, քրի՛ստոսի բար-
ձո՛ղ նմանող երկնից, սափո՛ր ոսկե-
ղէ՛ն լի մանանայի՛ւ, գաւազան ծաղ-
կեա՛լ յարմատոյն յեսսեա՛յ, տաճա՛ր
լուսոյ մայր, առ ծնեալն 'ի քէ՛ն։
Ցօղ քաղցրածաւա՛լ, ցանկալի զուարթ-
նոցն, նիւթեղէն սրովբէ՛. գեղ մար-
գարտափա՛յլ, հիմն եկեղեցւոյ. մա-
քուր աղաւնի՛. ամպ հովանաւո՛ր սուրբ
կոյս մարիամ. առ ծնեալն։

Ո՛վ պահապան որ ծա՛գեցար յե-
դեմայ, նշան յաղթութեա՛ն ընդ-
դէմ աներևոյթ թշնամւո՛յն։ Դու
փակելոյ դրախտի՛ն բացող եւ ա-
ռաջնորդ ա՛ւազակին. որ զբոցեղէ՛ն
սուրըն կապտեա՛ց ա՛նեղին հրամա-
նա՛ւ։

Փառք Հօր և Որդւոյ։

Քեւ ցնծա՛ն ըստորայինքս ամենայն
'ի մի՛ւսանգամ քո գալստեանն. և յա-

ւէժ զուարճանան դասք անմարմ-
նոցն առ էիցս։

Այժմ և միշտ և։

Ըզգինս սրեան քո յիշեա կենագոր-
ծող աշխարհի, և հանգստեան արժա-
նաւորեա յերուսաղէմըն վերին։

Գիրք Ն. ալղ. Սաղմոս

Ալէ. ալէ։ Բարձր առնեմ զքեզ Տէր, զի ըն-
կալար զիս և ոչ ուրախ արարեր զթշնամին իմ
յիս։

Աւետարան Ն. ալղ. Քարոզ

Վասն հրաժարելոյ անձանց ննջեցելոց՝ զՏէր ա-
ղաչեսցուք։
Վասն քաւութեան մեղաց և թողութեան յան-
ցանաց սորա և մեր. զՏէր աղ։
Վասն առաջնորդելոյ սմա յանստուեր օթևանս
զոր պատրաստեաց որդին միածին 'ի տան հօր
իւրոյ, զՏէր աղ։
Վասն լսելոյ սմա զձայն կենարար փողոյն, եւ
վերանալ ընդ առաջ Փրկչին, զՏեր ա։
Վասն արժանի լինելոյ սմա դասիլ յաջակողմեան
դասուն. զՏէր ա։
Եւ ևս միա։ Զանձինս մեր։ Ողորմեաց։

---

ՃԱՆԱՊԱՐՀԻ ԿԱՐԳ



Այ. Որ անճառ տնօրինութեամբ 'ի փրկութիւն ազգի մարդկան խոնարհեցար բանդ աստուած, այսօր հանգո և ըզմեր ըզննջեցեալսն ընդ սուրբս քո, որ միայնդ ես մարդասէր։ Որ անչարչարելիդ մարմնով եկիր կամաւ 'ի չարչարանս, և 'ի խաչին բեւեռեցար հեղեր զարիւնդ 'ի փրկութիւն, այս։ Որ

Թաղմամբ եռեքօրեայ ըզքռնու-թիւն մահու լուծեր, և կոխեցեր զիշխանն մահու եւ վերածեր ըզ-նընջեցեալսն. այսօր։ Որ հրաւիրե-ցեր յանմահութիւն զազգըս մարդ-կան, անմահութեանց բաշխող քր-իստոս աղաչանօք աստուածած-նին, այսօր հան։

Դյ. Տեսեալ ըզքեզ մահու լուծաւ. և դըժոխոց սարսեալ դո-ղային որ ըզմահ մահու ծանու-ցեր մեզ։ Որ հոգւովըդ քով սըր-բով ծանուցար քո արարածոցս, որ էնդ և եղեալդ, եւ էդ աստը-ուած։ Հովանացեալ սուրբ հոգւոյն 'ի վերայ քո սուրբ կոյս մարիամ. որ ծընար մարմնովդ ըզբանն աս-տուած։

Դկ. Որ յանէից ստեղծող դո-յից արարչական հօր բանդ աստը-

ւած, Թողութիւն շնորհեա՛ ննջեցե-
լոց քոց ծառայից. յորժամ գաս
դատել զոր անմարմին ձեռօք ստեղ-
ծեր։ Որ ՚ի հօրէ առաքեցար
և մարմնացար ՚ի սուրբ կուսէն.
Թողութիւն շնորհ. Որ ՚ի խաչին ան-
շընչացար զմահու լուծեր զիշխա-
նութիւն. Թո։ Որ պըսակիչդ ես
քոց սրբոց, և անվախճան բար-
եաց բաշխող. Թողութիւն շնորհեա։

Դյ. Ահագին է օրըն դատաստա-
նին, և դողումն առաջի բեմին,
սարսափին հրեշտակք սասանին եր-
կիր. զննջեցեալսըն մեր մի անտես
առներ յահագին աւուրըն դատաս-
տանին բարեխօսութեամբ. սուրբ
աստուածածնին։ Բանին դրունք
երկնից բարբառին հրեշտակք. բա-
նին գերեզմանք բորբոքի գեհեան.
ընդընջեց։ Գալարին երկինք որպես

մա՛ գա՜ղաթ. զերագոյն գոչէ՛ փո՛ղ
գաբրի՜է՜լեան. զերամպանծ լուսո՜վ
զարդարի՛ն ա՜րդարքն. ըզնըն։

Դ.Յ. Անըսկիզբն աստուա՜ծ սկիզբն
արարչութեա՛ն, 'ի հողո՛յ ստեղծէ՛ր
ըզմարդն առաջի՛ն, գործել և պահե՜լ
յանպատում 'ի կեա՜նս. իսկ 'ի ստուն-
գանե՜լ հրամանի քո տէ՛ր. ըզվըճի՛ռ
մահո՛ւ 'ի վերայ եդեա՛լ, հող էիր
անդրէ՜ն եւ 'ի հող դարձցիս. եւ
այժմ աղաչե՜մք զստեղծողդ ամենի՛ց.
ընկալ և հանգո՛ զհրաժարեալ հոգիս
յեօթնաստեղեա՛ն լուսեղէն խորանս,
ուր ժողովքն են սրբո՛ցն 'ի խաղա-
ղութեա՛ն, հոգւով հեզո՛ւթեա՜մբ
յե՜րկնի՛ց բարութի՛ւնսն։ Ոսկի եղ-
եա՛լս անպիտանացա՛յ, գեղեցկայար-
մա՛ր շինուածոյս քակտումն. իմաս-
տո՜ւնըս յիմարեցա՛յ, 'ի յալեաց մե-
ղա՜ց յոր ընկըղմեցայ. և այժմ։ Կո-

չոգն եհաս վերին կոչողին, կոչնա-
տէրն ահեղ կոչողն ահաւոր. դա-
տաւորն անաչառ դատաստանն ար-
դար. հրեշտակք անդորրմք դասին
զմեղաւորս. եւ այժմ։

# ԿԱՐԳ

## ՀԱՐՍԱՆԵԱՑ

### ՆՇԱՆԻ ՕՐՀՆՈՒԹԻՒՆ

Բյ. Այսօր նշան սուրբ խաչին ի
յերկրի երեւեալ օրհնե-
ցէք եւ բարձր արարէք զնա յա-
ւիտեան։

Նշանաւ ամենայաղթ. Տե՛ս յէջ 387.

Ի յամուլ երկրէ այսօր բուսաւ մեզ
բարեբեր բոյսն բարի. շուշան հով-

տա՛ց ծաղիկը՛ն դա՛շտա՜ց միամայրըն
մարիամ արմատ տնկո՛յն ա՛նմա՛հո՛ւ-
թեան. աղաչանօք սոցա՜ խնայեա՛
՚ի՜ մե՛զ։

Քարոզ. Ս. Խաչիւս։ Աղօթք. Պահպանիչ. եւայլն։

---

## ՀԱԼԱՒԻ ՕՐՀՆՈՒԹԻՒՆ

Զքրիստոս թագաւորն. Տե՛ս յէջ 176։

Այսօր երկնայինքն ու. Տե՛ս յէջ 309։

Որ զմիաբանեալն յաշտարակին
բաժանմամբ լեզուացըն քակեաց. այ-
սօր ըզբաժանեալ լեզուս ազգաց մի-
աբանեաց դարձեա՛լ ՚ի սուրբ վերնա-
տունն. ամենայն հոգիք օրհնեցէ՜ք
զհոգին աստուծո՛յ։ Ո՛ր էջ հոգին
տեառն ե՛ւ առաջնորդեաց երկոտա-
սան ցեղիցն ի՛սրայէլի՛ ՚ի յա՛նապա-
տին. այսօր երկոտա՛սան առաքելոցն
առա՛ջնորդէ՛ ՚ի յաւետարանն. ամե-

նայն հոգիք օրհ։ Որ ելից հոգին
տեառն զընծսելինւ ճարտարապետ
խորանին. այսօր շինէ զմարդիկ խո-
րան սուրբ երրորդութեան. ամէն։

Ուրախ լեր մայր լուսոյ մարիամ.
երկիր բանաւոր արեգական օթա-
րան. լեր բարեխօս վասն անձանց
մերոց։ Խընդա տաճար բանին աս-
տուծոյ. բարձող տըրտմութեան
նախամօրն եւայի, լեր բարեխօս։
Ցընծա իմանալի արեւելք. քանզի
քեւ ծագեաց մեզ լոյս երեսաց քը-
րիստոս. լեր բարեխօս։

Ի վերայ վիմի հաւատոյ շինե-
ցեր ըզքո սուրբ զեկեղեցի. ըզսա
պահեա ՚ի խաղաղութեան։ Որ շնոր-
հեցեր ողորմութիւն ՚ի բնակարանըս
հրեշտակաց եւ մարդկան քաւարան.
տուր սըմա զանշարժ քո զխաղա-
ղութիւն։ Ի տաճարի փառաց սըր-

թո՛ւլթեա՛ն քո՛ քեզ ե՛րգեն մանկունք. տուր սոցա զաւա՛ս քո զո՛ղորմութիւն։

Կամ — «Օրհնեցէք մանկունք»։ Տե՛ս յէջ 357։

Փառք Հօր և։ Այժմ և միշտ։

Սիրո՛յ անմահ փեսայի՛ն եղե՛ր դո՛ւ մայր մա՛րիամ. բարե՛խօսեա վասն մեր ՚ի յա՛յնմ աւուր ահեղի՛ն։

Աղօթք. Սուրբ խաչիւս։ Պահպանիչ. եւայլն։

---

## ՊՍԱԿԻ ՕՐՀՆՈՒԹԻՒՆ

Գկ. Նա՛յեա՛ ՚ի՛ մեզ և՛ ո՛ղորմեա մեզ քրիստոս, ո՛ր ո՛ւնիս բա՛զում գը՛թութի՛ւն։ Ո՛ր հա՛յրդ ես որբոց և՛ դա՛տաւոր այրեա՛ց քրիստոս. ո՛ր ո՛ւ։ Ո՛ր պըսակի՛չդ ես սրբոց. լո՛ւր եւ մե՛զ աղօթիւք սոցա՛ քրիստոս. ո՛ր։

Մայր և կոյս ա՛ղախին քրիստո՛սի ո՛ր բարեխօսդ ես մի՛շտ աշխարհի՛.

քե՛զ երանե՜ն ամե՞նայն ա՛զի նք։ Մաքո՜ւր աղաւնի՛ և հա՜րսն երկնի՜ց մարիա՜մ. տաճա՛ր և աթո՛ռ աստո՜ւծոյ բանի՜ն. քե՛զ երանեն։ Քե՛հաճե՜ցան իմանալի՜քն ընդ հողե՛ղէնքս, և՜ քե՛ւ մերձեցա՜ք ՚ի փա՛յտըն կե՜նա՜ց. քե՛զ երանե՜ն։

Յաղթող և գնոր օրհն. Տե. յէջ 379։

Ժամամուտ. Զխաղաղութիւն։ Տե. յէջ 322։

Ճաշու. Ուրախ լեր սուրբ. Տե. յէջ 315։

Փառք Հօր եւ Որդւոյ։ Այժմ և միշտ։

Ուրախ լեր բերկրեալդ. Տե. յէջ 316։

Սուրբ Աստուած, սուրբ և հզօր, սուրբ եւ անմահ՝ որ մարմնացար վասն մեր ողորմեա մեզ։

ՔԱՐՈԶ

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի՜ եւ հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ զՏէր աղաչեսցուք։

Վասն ամենայն սուրբ եւ ուղղափառ եպիսկոպոսաց զՏէր աղա"։

Վասն հայրապետին մերոյ Տեառն (այս անուն) կենաց եւ փրկութեան հոգւոյ նորին զՏէր ա՛՛ ։

Վասն վարդապետաց՝ քահանայից՝ սարկաւագաց՝ դպրաց եւ ամենայն ուխտի մանկանց եկեղեցւոյ զՏէր աղա՛՛ ։

Վասն բարեպաշտ թագաւորաց եւ աստուածասէր իշխանաց՝ զօրավարաց եւ զօրաց նոցին զՏէր աղաչեմ՛՛ ․

Եւ ևս միա՛՛ ։ Զանձինս մեր ․ Ողորմեաց ։

Գիրք Ւ տող

Ալէ՛՛ ․ ալէ՛՛ ։ Կացցէ դշխոյ ընդ աջմէ քումմէ ի հանդերձս ոսկեհուռս զարդարեալ և պսակեալ ։

Ս․ Աւետարան ․ Հաւատամք ։ Տե․ յէջ 76 ։

Քըղ․ Վասն ուղղելոյ զգնացս մեր ։ Տե․ յէջ 53

Աղօթք Ե տող Շար․

Բկ․ Ո՛վ երանելիդ ամենեցուն տիեզերական իշխանութեամբ ընկալար ՚ի քրիստոսէ ըզգլխագ պարծանաց․ ո՛վ սըմբատ մեծ թագաւոր վասըն մեր բարեխօսեա առ թագաւորն երկնաւոր ։ Որ քոյին սուրբ աղօթիւքըդ վանեցեր ըզթըշ-

*նամի՜ն, կոխելով ըզսատանայ ընդ*
*երկնայինսըն դասեցար. ո՜վ աք-*
*գար մեծ Թագաւոր վա։ Ուստի եւ*
*մեք հաւատացեալքս տօնեմք զձեր*
*յիշատակս, օրհնութիւն առաքելով*
*ըզձեզ պսակողին. ո՜վ տըրդատ մեծ*
*Թագաւոր և աշխէն մեծ Թագուհի,*
*վասն մեր բարեխօսեցէք առ Թագա-*
*ւորն Երկնաւոր։*

Ի կցանողն առէ նաև «Արեգականն արդար»։ Տե՛ս յէջ 108։

---

## ԿԱՐԳ ԹԱԳՎԵՐԱՑԻ

*Գկ. Այսօր մարտիրոսաց դասքըն*
*ցնծացեալ բերկրին ընդ առաջ տեա-*
*ռըն քրիստոսի որդւոյն աստուծոյ։*
*Ձայն ՚ի յերկնից վըկայեալ ասէ. ե-*
*կայք օրհնեալըք հօր իմոյ, ժառան-*
*գորդք երկնից խորանացն։ Լըցէք*
*ըզտեղի անկելոցն ապստամբողական*

Թշնամւո՞յն, որ 'ի՛ յերկնից վա՛յր անկեա՛լ։

Մայր և կոյս աղախին. Տե. յէջ 403։

Յաղթող և զնոր օրհն. Տե. յէջ 379,

Փառք Հօր և Որդւոյ. Այժմ և միշտ.

Անթառամ պսակըն ձե՛զ աւա՛նդ-եալ մընայ քա՛ն զականըս պատուա՛-կանս գերա՛գոյն հրաշիւք. ո՛րք վա՞ն-եալ ըզթ՛շնամի՛ն խո՞րտակեցի՛ք։

Գիրք. Աւետարան ե. աղ. Քարոզ։

Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց. ընկալ-ցի զխնդրուածս սրտից մերոց, Թողցէ զյանցանս մեր՝ ողորմեսցի 'ի վերայ մեր։

Աղօթք մեր եւ խնդրուածք յամենայն ժամ մտցեն առաջի մեծի տէրութեան Նորա։

Եւ Նա տացէ մեզ միաբան միով հաւատով եւ արդարութեամբ վաստակիլ 'ի գործս բարեաց։

Զի զողորմութեան զշնորհն իւր արասցէ 'ի վե-րայ՝ մեր Տէրն ամենակալ, կեցուսցէ և ողորմեսցի։

Աղօթք. Ս. Խաչիւս. Պահպանիչ։

ՎԵՐՋ

# ՑՈՒՑԱԿ ԳԼԽՈՑ

# ՎՐԻՊԱԿՔ

| Էջ | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 10 | 6 | Աստըծոյ | Աստուծոյ |
| 16 | 14 | 'ի խաւարի | 'ի խաւար |
| 28 | 20 | յին | յիս |
| 49 | 13 | զգին | զգինս |
| 60 | 11 | պակաս | բարութեանց, աղբիւր ես |
| 96 | 10 | 80 | 74 |
| 110 | 18 | աձուկ | անձուկ |
| 245 | 4 | 238 | 239 |
| 248 | 4 | 238 | 239 |
| 272 | 22 | պակաս | 262 |
| 287 | 19 | աուն | տուն |
| 295 | 22 | իչխանք | իշխանք |
| 296 | 3 | համբարցձին | համբարձցին |
| 321 | 12 | Աւետարան. պղ. | Աւետ. պղ. Հոգւոց |
| 347 | 14 | 90 | 99 |
| 874 | 14 | 22 | 221 |
| 385 | 17 | 362 | 239 |
| 427 | 18 | 'ի վերուոտ | 'ի վերուստ |
| 438 | 1 | զլուսոյն | ը լուսոյն |
| 439 | 12 | իւրանց | իւրեանց |
| 441 | 8 | 162 | 126 |

# ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՔ ՆՇԱՆ Կ. ՊԷՐՊԷՐԵԱՆԻ

| | Ղրշ. |
|---|---|
| Աղօթագիրք ըստ ժամակարգութեան Հայաստանեայց Սուրբ Եկեղեցւոյ [Լաթակազմ 704 երես] | 10 |
| Աղջկան մը Յիշատակարանը [Յ. Փաշայեան] | 5 |
| Առաջին Ընթերցարան [Մ. Մամուրեան] | 2,20 |
| Առեւտրական Թուաբանութիւն | 8 |
| Առողջապահութիւն Աղջկանց [Մ. Մամուրեան] | 5 |
| Առտնին Տնտեսութիւն » | 6 |
| Բանալի Տարադրութեան [Մ. Մամուրեան] | 3 |
| Գիտելիք ու Պարտիք [Մ. Մամուրեան] | 5,20 |
| Ժողովրդական Տարեցոյց 1894 տարւոյ | 10 |
| » » 1895 » | 10 |
| » » 1896 » | 10 |
| » » 1897 » | 10 |
| Երկրորդ Ընթերցարան [Մ. Մամուրեան] | 3 |
| Իրագիտութիւն [ » ] | 5 |
| Յուզման Ժամեր [Յ. Սէթեան] | 8 |
| ՍՈՒՐԲ ԵՐԿԻՐ կամ ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ Ս. ԵՐՈՒՍԱՂԷՄԻ. Ա. ՀԱՏՈՐ [պատկերազարդ] | 12 |
| Սրբազան Պատմութիւն Հին Ուխտի [Սահակեանց] | 4 |
| » » Նոր » » | 4 |
| Օսմանեան Պատմութիւն [Ա. եւ Բ. հատոր] | 8 |
| Ուսումն Քրիստոնէական հաւատոյ [Ս. Խանճեան] | 1,20 |
| Պատկերազարդ Քերական | 30 |
| Վերթէր [Մ. Մամուրեան] | 8 |
| Տօնակարգ Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ | 12 |

*Վերոյիշեալ գրքերը կը գտնուին Նշան Կ. Պէրպէրեանի տպարանը, Կ. Պոլիս Էսկի Զապթիէ ճատտէսի, Թիւ 61:*

*Գինն է 12 ղրշ.*